ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ 1962

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1962 Թ.



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ







# ՄԵԾԱՆՈՒՄ Է ՍՈՎԵՏՆԵՐԻ ԴԵՐԸ

ՍՄԿՊ Ծրագրում հստակորեն ձևակերպված և գիտականորեն հիմնավորված են պարտիայի խնդիրները մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման ամբողջ ժամանակաշրջանի համար: ՍՄԿՊ Ծրագիրը մեծ ուշադրություն է նվիրում կոմունիզմի շինարարության ժամանակաշրջանում հասարակության քաղաքական կազմակերպության հարցերին: Ծրագիրը մի շարք տեսական նոր դրույթներ է բովանդակում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ուղիների, սովետական պետական ապարատում դեմոկրատական սկզբունքների կատարելագործման և սովետական քաղաքացիների իրավունքների ըստ ամենայնի ընդլայնման վերաբերյալ:

Պարտիայի Ծրագրում հստակորեն դրված և լուծված են բանվոր դասակարգի դիկտատուրայի պետությունը համաժողովրդական պետության վերաճելու, այդ պետության բնույթի ու խնդիրների, կոմունիստական ինքնավարության անցնելու հարցերը: Դրա հետ միասին պարտիայի Ծրագրում ընդգծվում է, որ բանվոր դասակարգը ղեկավար դեր է կատարում երկրի ամբողջ քաղաքական կյանքում, որովհետև այն եղել է և մնում է սովետական հասարակության ամենաառաջավոր և կազմակերպված ուժը:

«*Համաժողովրդական պետությունը*,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— *սոցիալիստական պետության զարգացման նոր էտապն է, կարևորագույն մի ուղենիշ սոցիալիստական պետականությունը կոմունիստական հասարակական ինքնավարության վերաճելու ճանապարհին*»:

ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության փորձը հաստատեց մարքս-լենինյան այն դրույթը, որ ժողովուրդները սոցիալիզմին անցնել կարող են միայն սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի իրականացման ջնորհիվ: Այդ դիկտատուրան բանվոր դասակարգին անհրաժեշտ է ոչ միայն շահագործողական դասակարգերի դիմադրությունը ճնշելու, այլ գլխավորապես նրա համար, որ կազմակերպի սոցիալիզմի կառուցումը և ապահովի նրա լիակատար ու վերջնական հաղթանակը, ժողովուրդների միջև խաղաղություն ու բարեկամություն հաստատի և անհրաժեշտ բոլոր պայմանները նախապատրաստի, որպեսզի երկիրը թևակոխի կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը: Մեր երկրի բանվոր դասակարգը հենց այդպես էլ վարվեց:

Սոցիալիզմի հաղթանակով արմատական փոփոխություններ տեղի ունեցան մեր երկրի էկոնոմիկայում, հասարակության դասակարգային կառուցվածքում և Սովետական Միության ժողովուրդների ազգային հարաբերություններում: Այդ ամենը չէին կարող էական փոփոխություններ չառաջացնել պրոլետարիատի դիկտատուրայի բուն էության մեջ և, հետևապես՝ նրա հիմնական խնդիրների մեջ: Քանի որ մեր երկրում չկան շահագործողական դասակարգեր, ընդմիշտ վերջ է տրված մարդու կող-

այժմ մենք նկատում ենք, թե որքան արագ են վարգանում պետության կառավարման գործում աշխատավորների մասնակցության թե՛ հին և թե՛ նոր ձևերը: Դրանք Սովետների մշտական հանձնաժողովներն են, գործկոմների արտահաստիքային բաժինները, արտահաստիքային հրահանգիչների խմբերը: Իսկ որքա՜ն էնտուզիաստներ են աշխատում կանայան հասարակական հանձնաժողովներում, տեսչություններում, կուլտուր-լուսավորական, ժողովրդական կրթության, առողջապահության և այլ աշխատանքների բնագավառում: Սովետների շուրջը բանվորներից, կոլտնտեսականներից, ինտելիգենցիայից բազմամարդ ակտիվ համախմբելը Սովետներին հնարավորություն կտա էլ ավելի հաջողությամբ և բեղմնավոր կերպով վճռելու տնտեսական ու կուլտուրական շինարարության հետագա զարգացման բազմաթիվ հարցերը:

Սովետների աշխատանքին լայն ակտիվի մասնակցությունն անհրաժեշտ է նաև այն պատճառով, որ ինչպես նշված է ՍՄԿՊ Ծրագրում, հնարավորին չափ ավելի մեծ թվով աշխատավորներ ձեռք բերեն պետությունը կառավարելու հմտություն, աստիճանաբար մշակվի պետական ու հասարակական գործչի նոր տիպ, որի համար պետության ու հասարակության գործերը վարելը դադարի պրոֆեսիա լինելուց:

ՍՄԿՊ Ծրագիրը սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզբունքների առավել ընդլայնման հիման վրա փոփոխություններ է նախատեսում Սովետների ձևավորման բնույթում: Այսուհետև Սովետների յուրաքանչյուր ընտրության ժամանակ պետք է սիստեմատիկորեն նորացվի դեպուտատների կազմը՝ առնվազն մեկ երրորդի չափով, ինչպես նաև պետք է սիստեմատիկորեն նորացվի Սովետների ղեկավար օրգանների կազմը, որոնց աշխատողներն այժմ, որպես կանոն, տվյալ պաշտոններում անընդհատ ընտրվել կարող են ոչ ավելի, քան երեք անգամ: Միայն բացառիկ դեպքերում կարող են շեղումներ թույլատրվել այդ կանոնից:

Սովետական դեմոկրատիայի հետագա ծավալումն իր մեջ, որպես անհրաժեշտ տարր, բովանդակում է նաև պետական ապարատի էլ ավելի կատարելագործումն ու պարզեցումը: Պարտիան իր առջև խնդիր է դնում հասնել սոցիալիստական դեմոկրատիայի այնպիսի սկզբունքների լիակատար կենսագործման, ինչպես ընտրողների առաջ դեպուտատների և Սովետների կողմից կանոնավորապես հաշվետվություններ տալն է, կամ իրենց չարդարացնող դեպուտատներին ժամկետից շուտ ետ կանչելու ընտրողների իրավունքը, Սովետների սեսիաներում պետական կառավարման, տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր կարևոր հարցերի հրապարակային, ազատ և բազմակողմանի քննարկումը, Սովետների սեսիաներում վարից վեր իշխանության գործադիր օրգանների կանոնավորապես հաշվետվություններ տալը և այլն:

Վ. Ի. Լենինը 1922 թվականի նոյեմբերին գրում էր. «Ներկա ժամանակվա ամենագլխավոր և մոտակա տարիների համար ամենակարևոր հերթական խնդիրն է սովետական ապարատի սիստեմատիկ փոքրացումն ու էժանացումը՝ նրա կրճատման, ավելի կատարյալ կազմակերպման, քաշքշուկի, բյուրոկրատիզմի վերացման և անարտադրողական ծախսերի պակասեցման միջոցով»: Մեծ Լենինի այդ ցուցումը իր նշանակությունը լիովին պահպանում է նաև այժմ:

Վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել պետական ապարատը կատարելագործելու և կրճատելու ուղղությամբ: Դրա մասին է վկայում այն փաստը, որ 1954 թվականից մինչև 1958 թվականը մեր երկրում կառավարչական ապարատը կրճատվել է ավելի քան մեկ միլիոն մարդով, որը հնարավորություն տվեց տնտեսել հարյուր միլիոնավոր ռուբլիներ:



Այդ ուղղությամբ որոշակի աշխատանք է կատարվել նաև մեր ռեսպուբլիկայում: Նվազեցված է պետական ապարատում աշխատողների թիվը, որոնցից շատերը ուղարկվել են արտադրություն, աշխատանքի են մեկնել շրջանները՝ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետները կադրերով ամրապնդելու համար:

Վերջին ժամանակներս վերացվեցին պետական ապարատի մի շարք ոչ հարկավոր, ավելորդ օղակներ, միավորվեցին զուգահեռ գործող որոշ կազմակերպություններ, ընդլայնվեցին ձեռնարկությունների ու կազմակերպությունների իրավունքները, ուժեղացվեց կոլեգիալության սկզբունքը՝ կառավարման հարցերը վճռելու գործում: Պետական ապարատի գործունեության կատարելագործմանը նպաստում է նաև այն, որ ուժեղացված է աշխատավորների կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների վերահսկողությունը նրանց աշխատանքի նկատմամբ: «Լենինի ցուցումներին համապատասխան,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— պետք է մշտապես գործեն վերահսկողության օրգանները, որոնք պետական վերահսկողությունը զուգորդում են կենտրոնում ու տեղերում հասարակական տեսչության հետ: Պարտիան ժողովրդական վերահսկողության տեսչությունները դիտում է որպես պետության գործերի կառավարմանը, օրինականության խստիվ կիրառման նկատմամբ վերահսկողության իրականացմանը ժողովրդական լայն մասսաների ներգրավման ազդու գործիք, պետական ապարատի կատարելագործման, բյուրոկրատիզմը արմատախիլ անելու, աշխատավորների առաջարկների ժամանակին իրականացման գործիք:

Կառավարման գործում դեմոկրատական սկզբունքների առավել զարգացման համար մեծ նշանակություն կունենա՝ ընտրողների առջև հաշվետվություններ տալու սկզբունքների ընդլայնումը, այդ սկզբունքների աստիճանական տարածումը պետական օրգանների, ձեռնարկությունների, հիմնարկների ղեկավար աշխատողների և մյուս պաշտոնատար անձանց վրա: Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի մի շարք բաժիններ ու վարչություններ (առևտրի, առողջապահության, բարեկարգման և այլն) իրենց գործունեության մասին հաշվետվություններ են տալիս բնակչությանը: Քաղսովետի գործկոմը անցյալ տարի աշխատավորների կոլեկտիվների 18 ժողովներում հաշվետվություններ է տվել:

Վերջին տարիներին Սովետների գործունեությունը ավելի հարուստ ու բազմակողմանի է դարձել, աճել է նրանց՝ որպես մասսաների կազմակերպչի, դերը, ընդլայնվել է նրանց կապը աշխատավորների հետ, նրանք հիմա ավելի լավ են զբաղվում բնակչության ամենօրյա կարիքների ու պահանջների բավարարման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերով: Սովետների՝ մասսաների մեջ տարվող աշխատանքներին մեծ օգնություն են ցույց տալիս բնակչության հասարակական ինքնագործունեության կազմակերպությունները: Քաղաքների ու մյուս բնակավայրերի բարեկարգման, բնակարանային ֆոնդի ճիշտ օգտագործման և վերանորոգման գործում մեծ դեր են խաղում փողոցային, թաղամասային և տնային կոմիտեները: Բնակչության կյանքին վերաբերող շատ հարցերի լուծման համար նրանք ակտիվ օգնություն են ցույց տալիս տեղական Սովետներին: Երևանում կան այդպիսի 235, Լենինականում՝ 222 կոմիտեներ: Կիրովականի 49 տնային կոմիտեներում աշխատում են 150, իսկ փողոցային և թաղամասային 50 կոմիտեներում 250 ակտիվիստներ: Դրանցից բացի բազմաբնակարան տներում ստեղծվել են կոմունիստական կենցաղին աջակցող 30 խորհուրդներ, որոնցում աշխատում են մոտ 100 ակտիվ հասարակական գործիչներ:

Մեր ռեսպուբլիկայի քաղաքներում գնալով ավելի լայն տարածում են ստանում այնպիսի հասարակական կազմակերպություններ, ինչպես կենսաթոշակառուների

խորհուրդներն են և կանանց խորհուրդները: Նրանք մեծ և օգտակար գործ են կատարում կենսաթոշակառուներին և տնային տնտեսուհիներին հասարակական աշխատանքում ներգրավելու ուղղությամբ: Այսպես, Երևանի Սպանդարյան շրջանի № 1 տնային կառավարչության տերիտորիայում, կենսաթոշակառուները ստեղծել են կոմունիստական կենցաղի կոմիտե, երեք թաղամասային կոմիտե, երեք ընկերական դատարան, կազմակերպել են կենսաթոշակառուների ակումբ: Տնային կառավարչությանն օգնելու համար այստեղ ստեղծել են հասարակական կարգը հսկող հանձնաժողով և բնակարանների վերանորոգման ընթացքը, հակահրդեհային միջոցառումների պահպանումը և տների սանիտարական վիճակը վերահսկող հանձնաժողով:

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում աշխատավորների դեպուտատների Սովետների առջև ծառացած հրատապ խնդիրները անչափ բարձրացնում են Սովետների դեպուտատներին ներկայացվող պահանջները: Յուրաքանչյուր դեպուտատ, ընդգծված է ՍՄԿՊ Ծրագրում, պետք է ակտիվորեն մասնակցի պետական գործունեությանը և կատարի որոշակի աշխատանք: Այդ ծրագրային պահանջի անշեղ կատարման համար անհրաժեշտ է, որ տեղական Սովետների գործկոմները, պարտիական կազմակերպությունները դեպուտատներին ամեն տեսակ օգնություն ցույց տան ընտրողների հանդեպ իրենց պարտականությունները կատարելու գործում, պաշտպանեն նրանց ամեն մի արժեքավոր ձեռներեցություն ու նախաձեռնություն:

Սոցիալիստական դեմոկրատիզմի հետագա ծավալումը կապված է սովետական հասարակության կյանքում հասարակական կազմակերպությունների դերի բարձրացման հետ: Այդ նպատակով ՍՄԿՊ Ծրագիրը նախատեսում է ինչպես համապետական, այնպես էլ տեղական նշանակություն ունեցող առավել կարևոր օրենքների ու մյուս որոշումների նախագծերը աշխատավորների կողմից քննարկելու միջոցով ընդլայնել աշխատավորների, հասարակական կազմակերպությունների ու արհմիությունների մասնակցությունը Սովետական պետության ներկայացուցչական օրգանների օրենսդրական գործունեությանը: Արհմիությունները, կոմերիտմիությունը և մյուս մասսայական հասարակական կազմակերպությունները՝ հանձին իրենց միութենական և ռեսպուբլիկական օրգանների, օժտված են օրենսդրական նախաձեռնության իրավունքով, այսինքն՝ ՍՍՌՄ, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների օրենսդրական մարմինները օրինագծեր մտցնելու իրավունքով:

Սովետական երկիրը պատրաստվում է պետական իշխանության գերագույն օրգանի՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին, որը կայանալու է 1961 թ. մարտի 18-ին: Սովետական ժողովուրդը դեպի ընտրություններն է գնում լի հպարտությամբ իր Հայրենիքի, հարազատ Կոմունիստական պարտիայի համար, որը հաստատ ու աներեր մեր երկիրը տանում է դեպի կոմունիզմ:

Հայաստանի աշխատավորներն իրենց նախընտրական ժողովներում բուռն խանդավառությամբ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ են առաջադրել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության ականավոր գործիչների, ռեսպուբլիկայի պարտիական, սովետական լավագույն աշխատողների, արդյունաբերության ու գյուղատնտեսության անվանի առաջավորների, գիտության ու կուլտուրայի աչքի ընկնող գործիչների:

Պարտիական կազմակերպությունները ագիտատորների, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության և մյուս միջոցներով ընտրողներին պետք է ծանոթացնեն դեպուտատության թեկնածուների կենսագրության, քաղաքական ու արտադրական գործունեության հետ, նրանց ոգեշնչելով մեկ մարդու պես ձայն տալու կոմունիստների



ու անպարտիականների միասնական բլոկի թեկնածուների՝ մեր ժողովրդի արժանավոր զավակների ու դուստրերի օգտին:

Ընտրությունների հաջողությունը մեծ չափով կախված է ընտրողների շրջանում կազմակերպական և մասսայական-քաղաքական աշխատանքի թափից ու ծավալից: Պարտիական կազմակերպությունների կարևորագույն պարտքն է ըստ քաղաքացիների աշխատանքի ու ըստ նրանց բնակության վայրի, ծավալել մարտական ագիտացիոն-պրոպագանդիստական գործունեություն: Ագիտատորները, պրոպագանդիստները, մեր մամուլն ու ռադիոն վառ ու գունեղ կերպով բոլոր աշխատավորներին պետք է ամենայն խորությամբ պարզաբանեն ՍՄԿՊ նոր Ծրագիրը, պարտիայի XXII համագումարի որոշումները, դրանով իսկ մոբիլիզացնեն մասսաներին՝ հաջողությամբ կենսագործելու ժողովրդա-տնտեսական խնդիրները:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից անցել է չորս տարի: Այդ ժամանակամիջոցում մեր երկիրը ձեռք է բերել աննախընթաց հաջողություններ տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում: Նշելով այդ մեծագույն նվաճումները, սովետական մարդիկ միաժամանակ բացահայտում են տեղական սովետական ու տնտեսական օրգանների գործունեության մեջ տեղ գտած թերությունները: Պարտիական և սովետական կազմակերպությունները պարտավոր են զգայուն կերպով ունկնդրել աշխատավորների ձայնին, պաշտպանել նրանց առողջ քննադատությունը, գործուն միջոցառումներ ձեռնարկել նշված թերություններն արագորեն վերացնելու համար:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների պատվին, ինչպես ողջ երկրում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում, ծավալվում է համաժողովրդական մրցություն: Նախընտրական աշխատանքային հերթափոխի են կանգնել հայկական լեռնաշխարհի մարդիկ, որոնք ջանում են հերոսական նոր գործերով նշանավորել ընտրությունները: Խնդիրն այն է, որպեսզի պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունները գլխավորեն աշխատավորների քաղաքական ու աշխատանքային այդ մեծ ակտիվությունը, այն ուղղեն յոթնամյակի չորրորդ տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելուն:

Պարտիայի, նրա լենինյան Կենտկոմի շուրջը համախմբված դեպի ընտրություններն են ընթանում Հայաստանի աշխատավորները: Նրանք համոզված են, որ մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո նորանոր հաջողությունների կհասնեն կոմունիստական շինարարության բոլոր ոլորտներում:

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԶՕՐ ԳՈՐԾՈՆԸ

Լ. ԻԼՅԻՉՈՎ

Համաշխարհային քաղաքական ամբողջ մթնոլորտը, ժամանակակից քաղաքական ու գաղափարական ամբողջ պայքարը հագեցած են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի գաղափարներով։

Օրավուր ավելի խոր ու ավելի լրիվ է բացահայտվում պարտիայի XXII համագումարի համաշխարհային պատմական նշանակությունը։ Նրա գաղափարները ոգեշնչում են մեր համախոհներին, ձգողության կենտրոն ու հենարան են ծառայում բոլոր երկրների ազատասեր ժողովուրդների համար, դրանք սարսափ ու շփոթմունք են առաջացնում մեր թշնամիների բանակում։ Վերջին տարիներին միջազգային ոչ մի իրադարձություն այնքան մեծ չափով չի հուզել համաշխարհային հասարակական կարծիքը, որքան XXII համագումարը, ՍՄԿՊ նոր Ծրագիրը, Ն. Ս. Խրուշչովի հիանալի զեկուցումները։

XXII համագումարի գաղափարները այդպիսի ուշադրություն են գրավում, որովհետև դրանք ճշմարիտ են, որովհետև արտահայտում են հարյուր միլիոնավոր աշխատավոր մարդկանց խոհերն ու զգացմունքները և ըստ արժանվույն են պսակում ռևոլյուցիոն պայքարի մեծ ուղին «Կոմունիստական պարտիայի մանիֆեստից» մինչև ՍՄԿՊ նոր Ծրագիրը, որն իրավամբ անվանված է արդի դարաշրջանի Կոմունիստական մանիֆեստ։

Մեր պարտիայի համագումարը նշանավորեց Մարքսի—Էնգելսի—Լենինի ուսմունքի նոր տրիումֆը։ Նա համոզիչ կերպով ցույց տվեց, որ մեր երկրի աշխատավորների, ամբողջ միջազգային բանվոր դասակարգի երկարատև ու հերոսական պայքարը արմատապես փոխեց աշխարհի սոցիալական դեմքը։ Ընդունելով պարտիայի երրորդ Ծրագիրը, XXII համագումարը սկիզբ դրեց հասարակական առաջադիմության նոր էտապին, կոմունիզմի սկզբունքների անմիջական իրականացման պայքարի էտապին։ Նա ամբողջ աշխարհի առջև ցուցադրեց կոմունիզմի ստեղծարար ուժը, մեր պարտիայի տեսական կատարյալ հասունությունը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան մարքս-լենինյան ստեղծագործական մտքի ճանաչված կենտրոնն է։

## I

Խոր իմաստ է բովանդակված այն փաստի մեջ, որ XXII համագումարը համատեղ քննարկեց XX համագումարից հետո պարտիայի գործունեության արդյունքների հարցը և ՍՄԿՊ նոր Ծրագրի հարցը։



Քսաներորդ համագումարը շրջադարձային կետ հանդիսացավ պարտիայի ու երկրի, համաշխարհային ամբողջ կոմունիստական շարժման զարգացման մեջ։ Պարտիան քաղաքական նշանավոր սխրագործություն կատարեց, որի պատմական նշանակությունը արդեն դրսևորվել է, իսկ ապագայում ավելի մեծ չափով կդրսևորվի։ Լենինյան սկզբունքների վերականգնման ու զարգացման նպատակին ուղղված համարձակ ու խիզախ քաղաքականության շնորհիվ մեր պարտիան կարողացավ ստեղծագործաբար լուծել արդիականության տեսական ու գործնական շատ պրոբլեմներ, որոշել գիտականորեն հիմնավորված լենինյան քաղաքական այն կուրսը, որը լայն ասպարեզ բացեց պարտիայի ու ժողովրդի ստեղծարար ուժերի համար։

Պարտիան մերժեց մարքսիզմ-լենինիզմին և մեր. հասարակարգի էությանը խորթ՝ Ստալինի անձի պաշտամունքը, նա վերցրեց այդ պաշտամունքի վնասակար հետևանքները հաղթահարելու վճռական կուրս։ Ամբողջ սովետական ժողովուրդը միահամուռ հավանություն տվեց և ակտիվորեն պաշտպանեց մեր պարտիայի լենինյան քաղաքականությունը։ Քսաներորդ համագումարի քաղաքական գծի ճշտությունը հաստատվեց բուն կյանքի կողմից։ Վերջին տարիներս պարտիայի գործունեության մեջ գլխավորը, որոշողը պայքարն էր պարտիական կյանքի լենինյան նորմերի և ղեկավարության կոլեկտիվության սկզբունքի վերականգնման ու հետագա զարգացման համար, հասարակական առաջադիմության վճռական ուժը հանդիսացող ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացման համար։

Այդ տարիները եղան ամբողջ հնի, իր դարն ապրածի դեմ պարտիայի նոր կուրսի հետևողական ու սկզբունքային պայքարի ժամանակաշրջանը, մի պայքար, որին լենինյան հաստատակամությամբ և լենինյան շրջահայեցությամբ ուղղություն էր տալիս մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ։ Այն փաստը, որ պարտիան ստեղծեց նոր, գիտականորեն հիմնավորված Ծրագիր, նրա քաղաքական կուրսի կենսականության և ուժի վկայությունն է։

Մի՞թե կարելի էր նոր Ծրագիր մշակել, եթե ձեռք բերված չլինեին այդպիսի հաջողություններ էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի ասպարեզում, եթե լրիվ ծավալով չվերականգնվեին ու չզարգացվեին լենինյան ոճը, լենինյան մոտեցումը նոր հասարակարգի ստեղծման և ռևոլյուցիոն պայքարի տեսության ու պրակտիկայի նկատմամբ։

Մի՞թե կարելի էր ստեղծել նոր Ծրագիր, եթե անհատի պաշտամունքի աչքակալները և նրա հետ կապված խեղաթյուրումները առաջվա պես փակեին քաղաքական հորիզոնի զգալի մասը։ Մի՞թե կարելի էր այդ բանն անել, առանց հաշվի առնելու իրականությունը իր ամբողջ բազմազանությամբ, առանց ստեղծագործական նախաձեռնության և տեսական մտածողության ռևոլյուցիոն համարձակության, առանց ներկայի լենինյան գիտական ըմբռնման և ապագայի կանխատեսման։

Պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնումից հետո պարտիայի գործունեության ամենաբնորոշ գիծը դարձավ պրակտիկայի և տեսության խս-կական միասնությունը, միլիոնների փորձը գնահատելու կարողությունը։ Պարտիան ասաց. կյանքից մի՛ անջրպետվեք ցիտատներով, մի՛ քողարկվեք դրանցով, կուրորեն մի՛ խոնարհվեք ֆորմուլների առջև, այլ համարձակորեն ներ-

խումե՛ք կյանքի մեջ, ավելի խոր ուսումնասիրե՛ք այն, ավելի մեծ չափով վըս-տահե՛ք կյանքին։

Միանգամայն պարզ է, որ առանց այն տեղաշարժերի, որոնք պարտիայի մեջ և երկրում տեղի ունեցան վերջին տարիներս, առանց տեսական ու գործնական այն աշխատանքի, որը կատարեցին պարտիան ու նրա Կենտրոնական Կոմիտեն, մենք չէինք կարողանա մշակել և ընդունել Լենինի մեծ պարտիային արժանի նոր Ծրագիր։

Պարտիայի նոր Ծրագիրը մարքս-լենինյան հասարակական-գիտական մտքի բարձրագույն նվաճումն է։

Հասարակական պրակտիկան, մասսաների կենդանի ստեղծագործությունը պարտիան համարում է ռևոլյուցիոն տեսության զարգացման շարժիչ ուժը։ Մեր ժամանակներում, երբ գործնականում կերտվում է կոմունիզմը, զգալիորեն կրճատվում, իսկ երբեմն էլ առհասարակ անհետանում է ժամանակի տարածությունը կոմունիստական շինարարության հարցերի տեսական ու գործնական լուծման միջև։ Շատ հարցերի լուծումներ, որոնք պարտիան գտել է պրակտիկայում, բուն կյանքի մեջ, փաստորեն, նաև տեսական բնույթի լուծումներ են։

Այժմ հատկապես հրատապ են հնչում Լենինի նշանավոր խոսքերն այն մասին, որ տեսությունը «...չի կարելի հնարել, այն աճում է... ռևոլյուցիոն մտքի ու փորձի... հանրագումարից» (Երկեր, հատ. 21, էջ 450)։

Այժմ բոլորը տեսնում են, որ պարտիայի կարևորագույն գործի՝ ռևոլյուցիոն տեսության զարգացման գործի նկատմամբ միայն այդպիսի մոտեցումը լիովին արդարացրեց իրեն, նպաստեց տեսական մտքի ակտիվացմանը, մեծապես ուժեղացրեց ստեղծագործական որոնումների ոգին, ամենալայն մասսաների մեջ արթնացրեց մարքսիզմ-լենինիզմին տիրապետելու ձգտումը։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ստեղծագործական, խանդավառությամբ և կյանքի խոր ճանաչողությամբ տոգորված պրակտիկ ու տեսական գործունեությունը մի ոգեշնչող օրինակ է գաղափարական ճակատի բոլոր աշխատողների համար։

Չկա Սովետական Միության հասարակական կյանքի այնպիսի կողմ, որն իր հորձանքի մեջ չառներ XX համագումարի ծնունդ հանդիսացող՝ ստեղծագործական որոնումների, համարձակ խիզախումների հուժկու հեղեղը։ Բարեբար կերպով անդրադարձավ համագումարը նաև գաղափարական բնագավառում։ Նա բառացիորեն կենդանի ոգի ներշնչեց մեր ամբողջ գաղափարական աշխատանքին, նրան տվեց իսկական լենինյան բնույթ և ուղղություն։

Պարտիան ելնում է լենինյան այն դրույթներից, որ կոմունիստական շինարարության պրոցեսում անշեղորեն աճում է ժողովրդական մասսաների պատմական գիտակցական ստեղծագործության, հասարակական զարգացման գիտական ղեկավարման դերը։ Ելնելով դրանից, պարտիան վերջին տարիներս մի շարք խոշոր միջոցառումներ իրագործեց գաղափարական բնագավառում։ Դրանց հիմնական իմաստն է՝ վերականգնել և է՛լ ավելի զարգացնել գաղափարական-դաստիարակչական աշխատանքի լենինյան սկզբունքները։

Իսկ որո՞նք են լենինյան սկզբունքները, լենինյան ոճը գաղափարական աշխատանքում։

Դա ամենից առաջ և գլխավորապես կոմունիստական բարձր գաղափարայնությունն է, պարտիականությունը, անհաշտությունը թշնամական գաղափարախոսության նկատմամբ, տեսության և պրակտիկայի, խոսքի ու գործի միասնությունը, ռևոլյուցիոն տեսության ստեղծագործական կիրառումն ու



զարգացումը, դա լայն մասսաների քաղաքական կրթությունը, նրանց մարքս-լենինյան կոփվածքը քաղաքական ու տնտեսական հրատապ խնդիրների լուծման համար նրանց կազմակերպելու հետ միաձուլելու կարողությունն է։

Պարտիային անհրաժեշտ եղավ մեծ աշխատանք կատարել գաղափարական ասպարեզը անհատի պաշտամունքի վնասակար հետևանքներից մաքրելու ուղղությամբ։

Այն իրադրության մեջ, երբ տեսական ու գաղափարական բառացիորեն բոլոր հարցերում օրենսդիրը մի մարդ էր, որի ճիշտ թե սխալ դատողությունը վերջնական դատավճռի ուժ ուներ, անշուշտ, մեծ դժվարություններ էին ստեղծվում ստեղծագործական մտքի համար։ Այդպիսի իրադրության մեջ մեր պրոպագանդան նույնպես բավականաչափ ներգործուն չէր, հաճախ նա վրիպում էր նպատակից, հեռանում երկրի զարգացման գլխավոր ուղիներից։

Անհատի պաշտամունքի գաղափարախոսությունը հակամարքսիստական, հակալենինյան գաղափարախոսություն է։ Իր էությամբ այդպիսի գաղափարախոսությունը կործանարար է և, ամենից առաջ, այն պատճառով, որ խախտում է հասարակական զարգացման ասպարեզում ժողովրդական մասսաների վճռական դերի մասին մարքս-լենինյան ուսմունքը։ Անհատի պաշտամունքը նսեմացնում էր պարտիայի և ժողովրդի դերը սոցիալիստական հասարակարգի զարգացման գործում, կոպիտ կերպով խախտում էր պարտիական ղեկավարության լենինյան բարձրագույն սկզբունքը՝ կոլեկտիվությունը։

Պարտիան կտրուկ կերպով շուռ տվեց քաղաքական կուրսը։ Նա համարձակորեն փոխեց իրադրությունը նաև գաղափարական ասպարեզում, մեր գաղափարական կյանքից վճռականորեն դեն շպրտելով այն ամենը, ինչ խորթ է, իր դարն ապրած։ Գլխավոր հարվածը ուղղվեց անհատի պաշտամունքի առավել վտանգավոր հետևանքներից մեկի՝ պատմական ստեղծագործության մեջ պարտիայի և ժողովրդական մասսաների դերի նսեմացման դեմ: Բայց պարտիայի մեջ գտնվեցին մարդիկ, որոնք հանդես եկան նրա լենինյան գծի դեմ։

XX համագումարի քաղաքական կուրսը, պարտիայի գլխավոր գիծը սվիններով դիմավորեցին Մոլոտովը, Մալենկովը, Կագանովիչը, Շեպիլովը և հակապարտիական ֆրակցիոն խմբի մյուս մասնակիցները։ Հայտնի է, որ հակապարտիական խմբի որոշ մասնակիցներ հավակնություն ունեին կատարելու մարքսիզմ-լենինիզմի տեսաբանների դեր, թեև կյանքը պսակազերծ արեց նրանց, և նրանք մեր առջև կանգնեցին ո՛չ միայն որպես քաղաքական լիակատար սնանկներ, այլև քարացած դոգմատիկներ, որոնք ընդունակ չեն հասկանալու կյանքի մեծ պահանջները և մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական ռևոլյուցիոն էությունը։

Անհատի պաշտամունքի քննադատությունը և պարտիական, պետական ու գաղափարական աշխատանքի բոլոր բնագավառներում նրա վնասակար հետևանքների վերացումը, հակապարտիական խմբի գաղափարական ու կազմակերպական ջախջախումը առողջացրին իրադրությունը մեր երկրում, բարեբար կերպով անդրադարձան սովետական հասարակության կյանքի վրա։ Պարտիան անհատի պաշտամունքի և նրա հետևանքները հաղթահարելու հարցերի վերաբերյալ ընդունեց խիզախ որոշում. դա հանդիսացավ մեր պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հասունության նոր վկայականը։

Մեր պարտիան վերջ տվեց անհատի պաշտամունքին։

Գաղափարական ամբողջ աշխատանքում, խոսքը վերաբերի բանավոր

պրոպագանդային ու ագիտացիային, թե մամուլին, գրականությանն ու ար-
վեստին, թե հասարակական գիտությանը,— անհրաժեշտ է հստակ սահմանա-
գիծ դնել անհատի պաշտամունքի և սոցիալիզմի կառուցման ու մարքս-լենին-
յան տեսության զարգացման ուղղությամբ մեր պարտիայի բազմամյա ու բազ-
մազան ամբողջ գործունեության միջև։

Անհատի պաշտամունքը վնասակար հետևանքներ ունեցավ և բացասա-
կան դեր խաղաց պարտիայի, մեր երկրի կյանքում։ Բայց նույնիսկ անհատի
պաշտամունքի իրադրության մեջ պարտիան գործում էր որպես կենդանի օր-
գանիզմ, ստեղծագործաբար աշխատում էին տեղական պարտիական կազմա-
կերպությունները։ Նույնիսկ այն իրադրության մեջ չէր կարելի ամբողջովին
անտեսել լենինյան կարևորագույն դրույթները, մարքս-լենինյան տեսության
արմատական սկզբունքները։ Անհատի պաշտամունքի ստվերը չէր կարող և չի
կարող մթագնել այն մեծ հաջողությունները, որոնք ձեռք էին բերել պարտիան
ու ժողովուրդը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ասպարեզում։ Անհատի
ոչ մի պաշտամունք չէր կարող կանգնեցնել սովետական հասարակության
հաղթական զարգացումը, փոխել սոցիալիստական հասարակարգի էությունը,
որի վճռական շարժիչ ուժը միշտ եղել են, են և կլինեն աշխատավորների
բազմամիլիոն մասսաները։ Անհատի ոչ մի պաշտամունք չէր կարող փոխել
մեր ռևոլյուցիոն աշխարհայացքը, սասանել մեծ Լենինի կողմից ստեղծված ու
ռևոլյուցիոն ոգով դաստիարակված պարտիայի կազմակերպական, քաղաքա-
կան ու տեսական հիմքերը։

Հարկավոր է ակտիվորեն դիմադրել այն բոլոր փորձերին, որոնք նպատակ
ունեն շփոթել, նույնացնել անհատի պաշտամունքը ղեկավարների հեղինակու-
թյան հետ, անհատի պաշտամունքի քննադատությունը օգտագործել «ամեն
տեսակ հեղինակությունների» բուրժուա-անարխիստական ժխտման համար։
«Մարքսիստները,— գրել է Վ. Ի. Լենինը,— չեն կարող կանգնել ինտելիգենտ-
ռադիկալի սովորական, նրա իբր ռևոլյուցիոն վերացականորեն՝ «ոչ մի հեղի-
նակություն» տեսակետի վրա։

Ոչ։ Ամբողջ աշխարհում լիակատար ազատագրության համար համառորեն
պայքարող բանվոր դասակարգին հեղինակություններ հարկավոր են...» (Եր-
կեր, հատ. 11, էջ 518)։

Կարևոր է համբերատար ու հաստատակամ կերպով պարզաբանել անհատի
պաշտամունքի և ղեկավարների հեղինակության վերաբերյալ պարտիայի հա-
յացքները, ցույց տալ, որ պարտիային, սովետական ժողովրդին կենսականորեն
անհրաժեշտ են հեղինակավոր, ընդունակ, կոմունիզմի գործին նվիրված ղեկա-
վարներ։ Պարտիան ու ժողովուրդը առաջ են քաշում և պարտիական ու պե-
տական գործերի վարումը վստահում են այն ղեկավարներին, ովքեր հավա-
տարմորեն են ծառայում կոմունիզմի շահերին, ունկնդրում են ժողովրդի ձայ-
նին, գտնվում են պարտիայի և մասսաների վերահսկողության տակ, լավ են
հասկանում աշխատավորների կարիքները, գործում են հասարակական զար-
գացման օրենքներին ու պահանջմունքներին համապատասխան։

Վերջին տարիներս պարտիան, նրա բոլոր կազմակերպությունները շատ
ու բեղմնավոր ջանքեր թափեցին գաղափարական աշխատանքի մակարդակը
բարձրացնելու համար։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն, որը ուսումնասիրեց
գործերի վիճակը գաղափարական ճակատի բոլոր տեղամասերում, գաղափա-
րական աշխատանքի և նրա կադրերի նկատմամբ լենինյան հոգատարության



հիանալի օրինակ տվեց ամբողջ պարտիային։ Ընդունվեցին մի շարք սկզբուն-
քային որոշումներ պրոպագանդայի, ագիտացիայի, մամուլի, ռադիոհաղորդ-
ման, հեռուստատեսության, ժողովրդական կրթության, հասարակական գի-
տության, կուլտուրայի, գրականության և արվեստի հարցերի վերաբերյալ։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ամենօրյա ուշադրության, տեղական
պարտիական կազմակերպությունների, գաղափարական հիմնարկների, հասա-
րակական կազմակերպությունների և ստեղծագործական միությունների մեծ
ու բազմակողմանի աշխատանքի շնորհիվ գաղափարական ճակատում առկա է
աշխուժացում։ Ամրապնդվել են գաղափարական աշխատանքի կապերը կյանքի,
պարտիայի ու ժողովրդի պրակտիկ գործունեության հետ. ուժեղացել են այդ
աշխատանքի թափն ու մասսայականությունը, երևան են եկել մասսաների
վրա պարտիայի գաղափարական ազդեցության նոր ձևեր։ Գաղափարական
աշխատանքում լայն տարածում են գտել հասարակական հիմունքները։ Աճել
են գաղափարական կադրերը։

Հայտնի է, որ գաղափարական աշխատանքը, գաղափարական կադրերը
բարձր գնահատականի արժանացան պարտիայի XXII համագումարում։

«Պարտիան և սովետական ժողովուրդը,— ասաց Ն. Ս. Խրուշչովը XXII
համագումարում,— բարձր են գնահատում պրոպագանդիստների և ագիտա-
տորների, գիտության, լուսավորության և կուլտուրայի գործիչների, գաղափա-
րական աշխատողների ամբողջ բանակի՝ մարքսիզմ-լենինիզմի գաղափարնե-
րի հաղթանակի համար ակտիվ մարտնչողների գործունեությունը»։

Պարտիան, Կենտրոնական Կոմիտեն տվեցին բարձր, բայց և շատ բան
պարտավորեցնող գնահատական։

Ինչպե՞ս և ինչո՞վ կպատասխանեն մեր պարտիային գաղափարական աշ-
խատողները։ Ամբողջ սովետական ժողովուրդը XXII համագումարի որոշում-
ներին պատասխանեց կոմունիստական մեծ կառույցի բոլոր ճակատներում
ջանքերի կրկնապատկումով։ Ետ չպետք է մնան նաև գաղափարական աշխա-
տողները, որոնք պարտիայի հավատարիմ հենարանն են նրա ռևոլյուցիոն-վե-
րափոխիչ ամբողջ գործունեության մեջ։ Այժմ, երբ բացառիկ բարենպաստ
պայմաններ են ստեղծված, երբ մեր գաղափարական զենքը է՛լ ավելի հզոր է
դարձել, պարզապես չի կարելի աշխատել հին ձևով։

Բայց պետք է ասել ճշմարտությունը. որոշ տեղերում դեռևս աշխատում
են, ավելին՝ մտադիր են այսուհետև էլ աշխատել հին ձևով, ընթանալ, այս-
պես ասած, սովորական, բանուկ ճանապարհով։ Ինչ խոսք, այդպես ավելի
հանգիստ է։ Բայց հանգիստ, քնաթաթախ գոյության բոլոր սիրահարներին
պետք է ուղղակի ասել. «Այդպես չի լինի, ընկերնե՛ր, կյանքը թույլ չի՛ տա»։
Համագումարի աշխատանքի ավարտումից հետո անցած ավելի քան երկու
ամսում պարտիական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարել
համագումարի նյութերի, պարտիայի նոր Ծրագրի պարզաբանման և ուսումնա-
սիրման ուղղությամբ։

Դրա հետ մեկտեղ որոշ տեղերում երևան բերվեց նաև անթույլատրելի
անտարբերություն, իսկ երբեմն էլ անպատասխանատվություն։ Պարզվեց, որ
գաղափարական աշխատանքը Տաջիկական ռեսպուբլիկայի, Ստավրոպոլի երկ-
րամասի, Կույբիշևի մարզի և մի շարք այլ մարզերի առանձին պարտիական
կազմակերպություններում տառապում է լուրջ թերություններով՝ հին, որոշ

տեղերում խրոնիկական դարձած արատներով՝ կյանքից կտրվածություն, սուր
հարցերից հեռանալ, ֆորմալիզմ, վերացականություն։
XXII համագումարի որոշումները, պարտիայի նոր Ծրագիրը գաղափարա-
կան ճակատին նոր, զգալիորեն ավելի բարձր պահանջներ են ներկայացնում։
Ո՞րն է այդ պահանջների էությունը։
Գաղափարական աշխատանքը պետք է բարձրացվի մարքսիզմ-լենինիզմի
տեսության զարգացման արդի էտապի մակարդակին, լիովին համապատաս-
խանի կոմունիստական շինարարության այժմյան ժամանակաշրջանին, մաս-
սաների հոգևոր, գաղափարական աճած պահանջմունքներին։ Նա կոչված է
հմտորեն ընդհանրացնելու հասարակական կյանքի երևույթներն ու պրոցես-
ները, բացահայտելու դրանց էությունը, օրինաչափությունը, պարզաբանելու
պարտիայի քաղաքականության գիտական հիմունքները։ Այժմ հատկապես
կարևոր է մինչև վերջ հաղթահարել դպրականությունն ու պարզունակությունը
գաղափարական աշխատանքում։
Այնուհետև, գաղափարական աշխատանքը պետք է բարձրացվի պարտիա-
յի ու ժողովրդի կողմից իրագործվող գործնական պլանների մակարդակին,
գաղափարապես ապահովվի կոմունիստական շինարարության հիմնական
խնդիրների հաջող կենսագործումը։ Արդի պայմաններում, ինչպես երբեք, կա-
րևոր է լիովին հաղթահարել տիրացուականության և թալմուդիզմի մնացորդ-
ները գաղափարական աշխատանքում, նրա կտրվածությունը կյանքից, պար-
տիայի ու ժողովրդի պրակտիկ գործերից։
Ի վերջո, անհրաժեշտ է խոր մտածված, գիտականորեն մոտենալ գաղա-
փարական աշխատանքի կազմակերպմանը, անդուլ կերպով կատարելագործել
նրա ձևերն ու մեթոդները, ակտիվացնել և գործադրել մասսաների վրա պար-
տիայի գաղափարական ներգործության բոլոր միջոցները։
Սրանք են արդի պայմաններում պարտիայի հիմնական պահանջները գա-
ղափարական աշխատանքից։ Պետք է ելնել այն բանից, որ XXII համագումա-
րի նյութերը, դրանց պարզաբանումը պարտիայի ամբողջ գաղափարական
կյանքի հիմքն են կազմում։ «Ներկայումս,— ընդգծվում է պարտիայի XXII
համագումարի բանաձևում,— գաղափարական աշխատանքում գլխավորը ՍՄԿԿ
Ծրագրի խոր պարզաբանումն է, սովետական հասարակության աշխատավոր-
ների կոմունիզմի հաղթանակի համար պայքարի մեծ պլանով զինելը, բոլոր
աշխատավորների մոբիլիզացումը պարտիայի նոր Ծրագրի կենսագործման
համար»։

## II

XXII համագումարի որոշումները աչքի են ընկնում կոմունիստական դաս-
տիարակության խնդիրների սահմանման նկատմամբ գիտական, ստեղծագոր-
ծական մոտեցումով։ Արդի իրադրությունից բխող կարևորագույն հետևություն-
ներից մեկն այն է, որ առանց գաղափարական գործունեության մակարդակի
հետագա բարձրացման և այդ աշխատանքի թափի ուժեղացման, չի կարելի
հաջողությամբ առաջ շարժվել։
Նոր մարդու դաստիարակության հարցերը պարտիան քննության է առ-
նում և լուծում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման և
կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման խնդիրնե-



րի հետ անխզելի միասնության մեջ։ Կոմունիզմի կառուցման հիմնական
խնդրի վերաբերյալ XXII համագումարի դրույթները ինքնըստինքյան զգալի
առաջընթաց քայլ են սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պրոբլեմների
ստեղծագործական մշակման ասպարեզում։ Թեև կոմունիստական շինարարու-
թյան գլխավոր խնդիրների կատարումը նկատի է առնված քսան տարվա հա-
մար, բայց դրանցից յուրաքանչյուրի հաջող կատարման հիմքերը դրվում են
այսօր, այժմ։ Այն պտուղների առատությունն ու որակը, որոնք սովետական
ժողովուրդը քաղելու է 1980 թվականին, կախված են մեր այսօրվա աշխա-
տանքից, մեր այսօրվա ջանքերից։ Ահա թե ինչու հարկավոր է թանկ գնահա-
տել ամեն մի օրը, ամեն մի ժամը։
Պարտիայի գաղափարական աշխատանքը ոչ թե ինքնանպատակ բան է,
այլ կոմունիստական շինարարության հարցերի լուծման արդյունավետ միջոց։
Մեր գաղափարական կադրերի, պրոպագանդիստների, ագիտատորների, ժուռ-
նալիստների, գիտնականների, գրողների, արվեստի գործիչների, նկարիչների,
կոմպոզիտորների, մանկավարժների ամբողջ բանակի համար չկա ավելի պա-
տասխանատու խնդիր, քան իրենց ուժերի լրիվ չափով ակտիվորեն ու ամեն օր
նպաստել հետևյալ երեք գլխավոր խնդիրների լուծմանը՝
— կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը,
— կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորմանը,
— նոր մարդու դաստիարակությանը։

***

Գաղափարական աշխատանքը կարող է և պարտավոր է դառնալ է՛լ ավելի
ակտիվ գործոն պարտիայի ու ամբողջ ժողովրդի գլխավոր տնտեսական խնդրի՝
կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման խնդրի իրականացման
պայքարում։
Գաղափարական գործունեությունը գործ ունի մարդու գիտակցության, նրա
հոգեբանության հետ, ներգործում է նրա խոհերի և զգացմունքների վրա։
Բայց ինչպե՞ս ստուգել նրա ներգործության ուժը, ինչպե՞ս գնահատել նրա
արդյունքները։ Կա՞ արդյոք այնպիսի կշեռք, որի վրա կարելի լիներ կշռել գա-
ղափարական աշխատանքի պտուղները։ Կա՛, և թող դա չհնչի որպես պարա-
դոքս։ Դա այն կշեռքն է, որով մենք կշռում ենք մեր համապազօրյա հացը,
բամբակը, պողպատը, չուգունը, միսը, յուղը, ածուխը, նավթը և նյութական
մյուս արժեքները։ Որպես կանոն, ուղղակի, անմիջական և, ընդսմին փոխա-
դարձ կապ գոյություն ունի արդյունաբերության, գյուղատնտեսության ար-
տադրական հաջողությունների և գաղափարական-դաստիարակչական լավ աշ-
խատանքի միջև։
Ժամանակն է վճռականապես, մեկընդմիշտ հրաժարվել այն պատկերացու-
մից, թե իբր գաղափարախոսությունն ու էկոնոմիկան կարող են գործել առան-
ձին-առանձին։ Ժամանակն է պսակազերծ անելու այն անհեռատես, պարզ
ասած՝ անխելք տնտեսավարներին, տնտեսական և նույնիսկ որոշ պարտիա-
կան ղեկավարների, որոնք մեծամտաբար բարբառում են՝ «գաղափարները
ձերն են, գործը՝ մերը»։
Գաղափարական գործունեության հասարակական բարձրագույն խնդիրը,
նրա էությունն է՝ օգնել ապրելու և աշխատելու։ Գաղափարական աշխատանքի

արդյունավետությունը չափվում է առաջին հերթին կոնկրետ արտադրական
արդյունքներով, մասսաների աշխատանքային ակտիվության աճով: Ինչպես
առանձին ձեռնարկությունում և կոլտնտեսությունում, այնպես է . ամբողջ
երկրի մասշտաբներով արտադրական պլանների և առաջադրանքների կատար-
ման հաջողությունը մեծապես կախված է գործի նկատմամբ սովետական
մարդկանց գիտակցական վերաբերմունքից, հետևաբար, մեր գաղափարական
աշխատանքից:
Յուրաքանչյուր սովետական մարդու աշխատանքից է կախված մեր Հայ-
րենիքի հզորությունը, միջազգային իրադարձությունների վրա նրա ազդեցու-
թյան ուժը, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, նյութա-
կան բարիքների առատության հասնելու տեմպերն ու ժամկետները: Յուրա-
քանչյուրի աշխատանքից է կախված բոլորի հաջողությունը, մեր մեծ կոմու-
նիստական գործի հաջողությունը:
Ավելի սխալ ոչինչ չկա, քան XXII համագումարի արդյունքների շուրջը
ամբողջ գաղափարական, բացատրական աշխատանքը հանգեցնել միայն կո-
մունիստական բաշխման գալիք բարիքների ցուցադրմանը: Մինչդեռ քանա-
վոր և նույնիսկ գրավոր պրոպագանդայի ասպարեզում մինչև օրս արմատա-
խիլ չեն արվել այդպիսի տենդենցները: Իհարկե, կարելի է և պետք է աշխա-
տավորներին պատմել բաշխման կոմունիստական սկզբունքների մասին, այն
նյութական բարիքների մասին, որոնք ստանալու է մարդը հասարակությու-
նից: Բայց ինչու ընդամին հընդգծել գլխավորը՝ ի՞նչ պետք է տա մարդը հասա-
րակությանը այդպիսի բարիքների առատություն ապահովելու համար: Հա-
կառակ դեպքում մենք երաշխավորված չենք, որ առանձին մարդկանց մեջ կա-
րող է սխալ, քաղքենիական պատկերացում ստեղծվել կոմունիզմի մասին՝
որպես անբանների, ինչ որ «ծույլերի բազմության» հասարակության մասին:
Կոմունիզմը և աշխատանքը անբաժանելի են: Կոմունիզմի օրոք աշխա-
տանքը չի վերանում, այլ սոսկ ձևափոխվում է: Սովետական մարդիկ չեն կա-
րող իրենց երջանիկ ապագան երկնքից սպասել, այլ պետք է այն ստեղ-
ծեն իրենց ձեռքերով, իրենց համառ աշխատանքով: Հենց դրա համար
էլ պարտիայի XXII համագումարը ընդգծեց, որ աշխատանքային գործունեու-
թյան համար մարդու նախապատրաստումը, մարդկանց աշխատանքային կո-
փումը, աշխատանքի նկատմամբ սիրո և հարգանքի դաստիարակումը կոմու-
նիստական դաստիարակության ամբողջ աշխատանքի էությունը, միջուկն են
կազմում:
Դեռ շատ ու շատ բան պետք է անել պարտիայի այդ ցուցումը կատարե-
լու համար: Կարևոր է մասնավորապես խնկական և անընդհատ գաղափարա-
կան կրակ բացել նրանց դեմ (թեև դրանց թիվը մեր հասարակության մեջ հա-
մեմատաբար փոքր է), ովքեր մեծամտաբար, աղայաբար են վերաբերվում
առհասարակ աշխատանքին, հատկապես նրա այնպիսի ձևերին, ինչպիսիք են
բանվորի և կոլտնտեսականի աշխատանքը: Մեր երկրում ամեն մի աշխատանք
պատվավոր է ու հարգելի, աշխատանքային գործունեության ամեն մի ձև բա-
ցում է ստեղծագործական որոնումների և հերոսության, լայն հասարակական
ճանաչման ուղին: Տիեզերական թռիչքները մեծ հերոսություն են, և մենք
հպարտանում ենք դրանցով: Բայց մի՞թե հերոսական չէ այն մարդկանց աշ-
խատանքը, որը թույլ տվեց ստեղծել տիեզերանավեր;— ածխահատի ու մե-



տալուրգի, գիտնականի ու կոլտնտեսականի, փականագործի ու երկաթուղայինի, ուսուցչի ու ինժեների աշխատանքը:

Առհասարակ հարկավոր է հրաժարվել աշխատանքային դաստիարակության նեղ ըմբռնումից: Օրինակ, գտնում են, թե աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք պետք է դաստիարակել նրանց մեջ, ովքեր անմիջականորեն աշխատում են հաստոցի մոտ, դաշտում կամ ֆերմայում: Մի խոսքով՝ նրանց մեջ, ովքեր զբաղվում են ֆիզիկական աշխատանքով:

Հարկավոր է վճռականորեն ջախջախե՛լ այդպիսի պատկերացումը: Ոչ միայն բանվորն ու կոլտնտեսականը, այլև վարպետը, ինժեները, կոլտնտեսության նախագահը, ակումբի դիրեկտորը, ամեն մի տնտեսավար, սովետական ու պարտիական աշխատող կոչված են աշխատելու կոմունիստաբար: Հարկավոր է բոլոր սովետական մարդկանց, անկախ աշխատանքի վայրից, աշխատանքի տեսակից, դաստիարակել աշխատանքի, իր հասարակական պարտքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով: Հարկավոր է պայքարել ոչ միայն լոդրերի և պորտաբույծների, այլև բյուրոկրատների, պաշտպանողականների, ֆորմալիստների դեմ:

Աշխատանքային դաստիարակությունը առաջին հերթին աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումն է, աշխատանքի բարոյական խթանների, կոմունիստական կարգապահության դաստիարակումը: Կոմունիզմը նշանակում է ոչ միայն աշխատանքի բարձրագույն արտադրողականություն, այլև աշխատանքի բարձրագույն կազմակերպում, որը հիմնված է գիտակցական կարգապահության վրա: Կոմունիստական աշխատանքը ոչ միայն պարզապես տեխնիկապես հեշտացված աշխատանքն է, այլև իմաստավորված, սոցիալական տեսակետից ազնվացված աշխատանք, որպես բարձր գիտակցության արտահայտություն, որպես սովորություն և հաճույք: «Հասարակական աշխատանքի կոմունիստական կազմակերպումը,— գրել է Վ. Ի. Լենինը,— դեպի որը տանող առաջին քայլը սոցիալիզմն է, հենվում է և գնալով կշարունակի ավելի հենվել... հենց իրենց՝ աշխատավորների ազատ և գիտակցական կարգապահության վրա...» (Երկեր, հատ. 29, էջ 513—514):

Գաղափարական որոշ աշխատողների հին, արմատացած հիվանդությունն է աբստրակտությունը, վերացականությունը, ընդհանուր դրույթներով, ընդհանուր կոչերով առաջնորդվելու սովորությունը:

Մինչդեռ գաղափարական աշխատանքը այժմ, ինչպես երբեք, պետք է լինի կոնկրետ ու նպատակասլաց, սերտորեն կապված լինի աշխատավորների արտադրական գործերի և շահերի հետ: Հասել է այն պահը, երբ ոչ այնքան հարկավոր են բարձր արտադրողական աշխատանքի ընդհանուր կոչեր, որքան հարկավոր է պատմել այն մասին, թե ինչ կերպ աշխատանքը դարձնել բարձր արտադրողական: Օրինակ՝ մի բան է հասարակ առօրյա աշխատանքի նկատմամբ սեր ու հարգանք պատվաստել ընդհանուր կոչերի, վերացական լոզունգների միջոցով: Ա՛յլ բան է նույն խնդիրը լուծել աշխատանքի լավագույն օրինակների միջոցով, առաջավոր բանվորների և կոլտնտեսականների փորձը լայնորեն պրոպագանդելու միջոցով, անպայման բացահայտելով նրանց աշխատանքային հերոսության հասարակական նշանակությունն ու շարժառիթները, աշխատանքային սխրագործության ետևում ցույց տալով բուն մարդուն, նրա խոհերի ազնվությունը և զգացմունքների գեղեցկությունը:

Առհասարակ առաջավոր արտադրական փորձի պրոպագանդմանը ցուցա-

բերվող մոտեցման մեջ դեռևս սխալ և պարզապես վնասակար հայացքներ կան։ Ոմանք սխալմամբ գտնում են, որ առաջավորների փորձի տարածման գործը պարտիական պրոպագանդայի գործը չէ, թող դրանով, ասում են նրանք, զբաղվեն «նրանք, ում վերապահված է»՝ ժողտնտխորհները, Գյուղատնտեսության մինիստրության օրգանները, արհմիությունները, զանազան տեխնիկական ընկերություններ և այլն։ Ոմանք էլ, ընդհակառակը, քիչ է մնում քաղաքական լուսավորության սիստեմի տնտեսագիտական խմբակներն ու սեմինարները դարձնեն տեխնիկական գիտելիքների դպրոցներ։

Չի կարելի համաձայնել թե՛ մեկ, թե՛ մյուս ծայրահեղությանը։ Հարկավոր է ամեն ինչ անել խելացիորեն, պարտիայի ու ժողովրդի բարձրագույն շահերին՝ կոմունիզմի կառուցման շահերին համապատասխան։

Աշխատանքային դաստիարակություն, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար մասսաներին մոբիլիզացնելու զորեղ միջոց է սոցիալիստական մրցությունը։ Կոմունիստական աշխատանքի բրիգադների, իսկ այժմ արդեն ցեխերի և ամբողջ ձեռնարկությունների շարժումը մեր ժամանակի հատկանշական երևույթն է, և ամենից առաջ նրա համար, որ այդ երևույթը արտահայտում է աշխատանքին, կոլեկտիվին, հասարակությանը ցույց տրվող վերաբերմունքի նոր գծերը. այստեղ ձևավորվում են նոր մարդկանց բնավորություններն ու կերպարը։ Բայց, դժբախտաբար, սոցիալիստական մրցության կազմակերպման գործում քիչ չէ պարադային աղմկարարությունը, ֆորմալիզմը, որի համար մեծապես մեղավոր են նաև գաղափարական աշխատողները։

Վ. Ի. Լենինը, մեր պարտիան միշտ սոցիալիստական մրցության իմաստը համարել են և համարում են միլիոնավոր մասսաների շրջանում ստանձնած պարտավորությունների նկատմամբ պատասխանատու վերաբերմունքի, կոմունիստական գիտակցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի քրտնաջան, հաստատակամ մշակումը։

Խոսքը քամուն տվող մարդը իսկական մրցության մասնակից չէ, այլ սոսկ, ինչպես ասում են ժողովրդի մեջ, «գլուխ գովելու» սիրահար։ Լենինյան մեծ սկզբունքն է՝ պարտավորությունը վերցրել ես, կատարիր։ Մենք պետք է դաստիարակենք հարգանք դեպի մեր խոսքը, մեր պարտավորությունները, դաստիարակենք հաստատակամություն դրանց կատարման գործում։

***

Գաղափարական աշխատանքը կարևոր դեր պետք է խաղա ոչ միայն կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, այլև կոմունիստական ճասարակական ճարաբերությունների ձևավորման գործում:

Աճելով սոցիալիստական հարաբերություններից, կոմունիստական հասարակական հարաբերությունները ազատ, բազմակողմանի զարգացած ու բարձր գիտակցությամբ օժտված մարդկանց, բարեկամության և ընկերության հարաբերությունների ամենակատարյալ տիպն են։

Արդեն այս դրույթից երևում է, թե կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման մեջ ինչպիսի մեծ դեր կարող է խաղալ գաղափարական աշխատանքը, սովետական մարդկանց դաստիարակությունը։ Իսկապես, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման



ո՛ր կողմն էլ վերցնենք, առանց բացառության բոլոր դեպքերում հաջողությունը կախված է դաստիարակչական աշխատանքի մակարդակից ու թափից, ժողովրդական մասսաների գիտակցականության աստիճանից։

Որքան նշանակալի լինեն մեր հաջողությունները կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում, որքան բարձր լինի սովետական մարդկանց գիտակցականությունը, այնքան արագ կընթանան կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացման այնպիսի պրոցեսներ, ինչպիսիք են՝ սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցումը, աշխատանքի բնույթի մեջ և արտադրության աշխատողների փոխհարաբերություններում նորի ծիլերի զարգացումը. ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքի հետագա կատարելագործումը, որպես ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու կարևորագույն նախադրյալ. քաղաքի և գյուղի, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի տարբերությունների, դասակարգերի և հասարակության սոցիալական խմբերի տարբերությունների վերացումը. ազգերի մերձեցումը և այլն։

Վերցնենք, օրինակ, սոցիալիստական պետությունը կոմունիստական հասարակական ինքնավարության վերաճելու խնդիրը։ Այս խնդրի իրականացումը պահանջում է գաղափարական-դաստիարակչական մեծ աշխատանք, պահանջում է զգալիորեն բարձրացնել ժողովրդական մասսաների գիտակցականությունը։ Չէ՛ որ հասարակական ինքնավարությունը ենթադրում է քաղաքացիների ակտիվ մասնակցությունը հասարակության արտադրական և մյուս բոլոր գործերի կառավարմանը, ենթադրում է կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, հոգատար վերաբերմունք հասարակական ունեցվածքի հանդեպ, համակեցության նորմաների խստիվ կիրառում։ Հարկ կա՞ արդյոք ասելու, որ որքան բարձր լինի աշխատավորների գաղափարական-քաղաքական մակարդակը, այնքան այս ամենը ավելի արագ և լավ կկենսագործվի։

Այն պայմաններում, երբ մեր հասարակության կյանքը, նրա անդամների վարքագիծն ու փոխհարաբերությունները ավելի ու ավելի մեծ չափով են կարգավորվում բարոյականության նորմերով, մարդկանց համոզումով ու դաստիարակումով, զգալիորեն աճում է հասարակական ներգործության և կարծիքի դերը։ Ամբողջովին հենվելով մարդկանց համոզելու վրա, հասարակական ներգործությունը ամենուրեք, այդ թվում և զանցանքների ու հանցագործությունների դեմ մղվող պայքարում, ցուցադրում է իր մեծ արդյունավետությունը։

Իհարկե, դեռ բնավ չի վերացել իրավական հարկադրանքի և պատժի անհրաժեշտությունը, չի կարող թուլացվել վերահսկողությունը սովետական իրավունքի նորմաների խստիվ կիրառման նկատմամբ։ Ընդհակառակն, ներկայումս հատկապես կարևոր է մշտապես կատարելագործել մեր օրենսդրությունը, հասնել այն բանին, որ հասարակության բոլոր անդամները, առանց բացառության, անշեղորեն կիրառեն այն, մեր օրենքների ամբողջ ուժը ի սպաս դնեն անցյալի այլանդակ մնացուկների դեմ մղվող պայքարին, իսկ հակահասարակական մի շարք երևույթների հարցում առավել խիստ օրենքներ ընդունեն։

Բարոյականությունը՝ բարոյականություն, իսկ օրենքը՝ օրենք։

Իրավունքի պահանջները ավելորդ կդառնան, երբ դրանց կատարումը դառնա յուրաքանչյուրի կողմից գիտակցված բարոյական պարտք, հասարա-

կության բոլոր անդամների սովորություն: Իսկ դրա համար այլ ճանապարհ չկա, բացի պետության ամբողջ ուժով օժտված օրենքների խստիվ պահպանումից:



Գաղափարական աշխատանքը հսկայական, կարելի է ասել վճռական դեր է խաղում կոմունիստական շինարարության երրորդ հիմնական խնդրի՝ նոր մարդու դաստիարակության խնդրի իրականացման գործում:

Մեր պարտիան որպես աշխարհի կոմունիստական վերափոխման գլխավոր խնդիրներից մեկը առաջ քաշեց նոր, բազմակողմանիորեն զարգացած մարդու դաստիարակման խնդիրը, որն իր մեջ ներդաշնակորեն զուգակցում է հոգևոր հարստությունը, բարոյական մաքրությունը և ֆիզիկական կատարելությունը: Հոգևոր հարստություն ասելով հասկացվում է գիտական աշխարհայացքը, գաղափարական համոզվածությունը, պոլիտեխնիկական լայն կրթությունը, ներքին և արտաքին բարձր կուլտուրան, գեղագիտական զարգացած ճաշակը:

XXII համագումարում, իր նոր Ծրագրում պարտիան նոր մարդու դաստիարակության խնդիրը դրեց որպես կոնկրետ գործնական խնդիր:

Ինչի՞ վրա է հիմնվում մեր պարտիայի վստահությունը այդ խնդրի ռեալ լինելու նկատմամբ: Նախ՝ կոմունիզմի ակտիվ ու գիտակից կառուցողների դաստիարակության ասպարեզում արդեն ձեռք բերված հաջողությունների վրա: Նոր գիտակցությամբ ու գործելակերպով նոր մարդու դաստիարակման հնարավորության հարցը արդեն վիճարկման հարց չէ: Կյանքն ինքը դրա սպառիչ պատասխանը տվել է: Նոր գծերով օժտված մարդը արդեն գոյություն ունի, նա վստահորեն քայլում է սովետական երկրում: Պարտիան մշտապես առաջնորդվում է մարքս-լենինյան այն ուսմունքով, որ «գիտակցությունը երբեք չի կարող լինել ոչ այլ ինչ, եթե ոչ գիտակցված կեցություն...» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս: Երկեր, հատ. 3, էջ 25 ռուս.): Մարդիկ, փոխելով իրենց կյանքի պայմանները, իրենց հասարակական կեցությունը, փոխում են նաև հենց իրենց, իրենց գիտակցությունը: Նոր մարդու ձևավորման պրոցեսը, անցնելով սոցիալիստական էտապը, այժմ թևակոխում է ավելի բարձր՝ կոմունիստական էտապը:

Նոր մարդու՝ կոմունիստական հասարակարգի կառուցողի և անդամի դաստիարակության վճռական գործոններն են նյութա-տեխնիկական բարձր զարգացած բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորումը, սովետական մարդկանց հասարակական կեցության փոփոխումը: Նոր մարդը դաստիարակվում է մեր կյանքի ամբողջ կացութաձևով, աշխատանքի, հասարակական-քաղաքական գործունեության պրոցեսում, կոմունիզմի համար մղվող պայքարի ընթացքում:

Բայց մենք լուրջ սխալ թույլ կտանք, եթե կարծենք, թե նոր մարդու դաստիարակությունը տեղի է ունենում տարերայնորեն, ինքնաբերաբար, միայն օբյեկտիվ գործոնների ազդեցության ներքո: Որքան էլ դրանք կարևոր լինեն, դրանք ինքնըստինքյան դեռ չեն ապահովի նոր մարդու ձևավորումը, առանց սուբյեկտիվ գործոնների ակտիվ մասնակցության, առանց պարտիայի և ամբողջ սովետական հասարակայնության համառ ու նպատակասլաց գաղափարական, դաստիարակչական աշխատանքի:

Վերցնենք, օրինակ, աշխատանքային դաստիարակությունը որպես կոմունիստական ապագայի մարդու ձևավորման վճռական ուղղություններից մեկը: Արդյոք կարելի՞ է բանն այնպես պատկերացնել, թե իբր բավական է մարդուն ներգրավել աշխատանքային պրոցեսի մեջ, և ահա նրա մեջ ինքնաբերաբար կսկսի մշակվել կոմունիստական գիտակցություն: Ո՛չ, աշխատանքը իր վիթխարի դաստիարակչական դերը կխաղա միայն այն դեպքում, եթե նրա յուրաքանչյուր մասնակից, բանվոր թե կոլտնտեսական, սովորող թե ուսանող, աշխատանքին վերաբերվի իմաստավորված կերպով, հասկանա նրա հասարակական նշանակությունը: Իսկ դրան կարելի է հասնել միայն գաղափարական-դաստիարակչական խոր ու բազմակողմանի աշխատանքի միջոցով:

Իրավացի էր Ա. Ս. Մակարենկոն, երբ գրում էր.

«...Աշխատանքը առանց զուգահեռ ընթացող կրթության, առանց զուգահեռ ընթացող քաղաքական ու հասարակական դաստիարակության, դաստիարակչական օգուտ չի բերում, դառնում է չեզոք պրոցես: Դուք կարող եք մարդուն ստիպել, որ աշխատի որքան ուզեք, բայց եթե դրա հետ միաժամանակ դուք նրան քաղաքականապես ու բարոյապես չդաստիարակեք, եթե նա մասնակից չլինի հասարակական ու քաղաքական կյանքին, ապա այդ աշխատանքը պարզապես չեզոք պրոցես կլինի, որը դրական ոչ մի արդյունք չի տալիս:

Աշխատանքը, որպես դաստիարակչական միջոց, հնարավոր է միայն որպես ընդհանուր սիստեմի մի մասը»:

Նոր մարդու դաստիարակությունը մեր գաղափարական աշխատանքի գլխավոր գիծն է, նրա ներգործունության վճռական ցուցանիշը:

Արդյոք մենք ճի՞շտ ենք գնահատում գաղափարական աշխատանքի ազդեցությունը, եթե հաշվի չենք առնում նրա գաղափարական, բարոյական արդյունքները: Հաճախ այսպես են դատում. եթե, ասենք, ձեռնարկությունը կամ կոլտնտեսությունը կատարել և մանավանդ գերակատարել են պլանը, նշանակում է, կոլեկտիվում գործը բարեհաջող է բոլոր տեսակետներից: Բայց չէ՞ որ կյանքում միշտ չէ, որ այդպես է ստացվում: Որոշ ղեկավարներ աչք են փակում այն բանի առաջ, որ նույնիսկ ամբողջությամբ վերցրած լավ կոլեկտիվում առանձին մարդկանց գիտակցությունը կրծում է շահամոլության ժանգը, թույլ են տրվում աշխատանքային կարգապահության խախտումներ, լինում են խուլիգանության դեպքեր, գործում են աղանդավորները, արտադրության որոշ, նույնիսկ լավ աշխատողներ իրենց անվայել են պահում ընտանիքում, կենցաղում, վատ են դաստիարակում երեխաներին, հարբեցողությամբ են զբաղվում:

Անհրաժեշտ է պարտիական, սովետական, տնտեսական և մյուս ղեկավարներից պահանջել, որ նրանք իրենց ղեկավարած կոլեկտիվների բարոյական ու բարոյական վիճակի համար պակաս պատասխանատվություն չկրեն, որքան արտադրական պլանների կատարման համար:

### III

XXII համագումարը, ՍՄԿԿ նոր Ծրագիրը պարտիական կազմակերպություններին զինում են գաղափարական աշխատանքի ծավալուն պլանով, հստակ կերպով որոշում են նոր մարդու դաստիարակության հիմնական ուղիները: Նշենք կոմունիզմի ակտիվ և կայուն մարտիկների դաստիարակության երեք գլխավոր ուղղությունները՝

Նախ, գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը. Երկրորդ,

ժողովրդական մասսաների դաստիարակումը կոմունիստական բարոյականության ոգով. Երրորդ, պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ:

ՍՄԿԿ նոր Ծրագիրը առաջ է քաշում հսկայական կարևորություն ունեցող խնդիր՝ սովետական հասարակության բոլոր աշխատավորների մեջ մարքսիզմ-լենինիզմի հիման վրա ձևավորել գիտական աշխարհայացք:

Սովետական բոլոր մարդկանց մեջ գիտական աշխարհայացքի ձևավորումը ոչ միայն մեծ, այլև չափազանց բարդ ու դժվարին խնդիր է: Մենք չպետք է սխալ թույլ տանք և կարծենք, թե դրա կատարումը գաղափարական աշխատանքի ինչ-որ մի ձևի՝ քաղաքական լուսավորության սիստեմի կամ հասարակական գիտության, գրականության կամ արվեստի կամ մի այլ ձևի մենաշնորհն է: Տարբեր չափով, բայց գաղափարական աշխատանքի՝ առանց բացառության բոլոր տեսակներն ու ձևերը կարող են և պետք է օգտագործվեն մեր երկրի բոլոր աշխատավորների մեջ մարքս-լենինյան աշխարհայացք ձևավորելու նպատակով:

Վերցնենք մեր սովետական դպրոցը: Էլ ո՞րտեղ, եթե ոչ դպրոցում, տեղի է ունենում գիտական աշխարհայացքի ձևավորման նախնական պրոցեսը: Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ կոմունիզմ սովորել, կոմունիստական աշխարհայացք ձևավորել՝ չի նշանակում անգիր անել, սերտել կոմունիզմի լոզունգները, հետևությունները: Հարկավոր է հասնել այն բանին, որ այդ հետևությունները հենվեն գիտությունների հիմունքների իմացության վրա, դառնան սեփական հետևություններ, անխուսափելի լինեն ժամանակակից կրթության տեսակետից:

Սովետական դպրոցը, հատկապես պարտիայի ցուցումների հիման վրա նրա վերակառուցումից հետո, լուրջ հաջողությունների է հասել: Որպես կանոն, պատանիներն ու աղջիկները ստանում են գիտության հիմունքների ամուր գիտելիքներ, բայց միջնակարգ դպրոցը առայժմ դեռ լրիվ չափով չի լուծում ամբողջական և կուռ մատերիալիստական աշխարհայացքի ձևավորման խնդիրը: Դպրոցի կարևորագույն խնդիրն է երիտասարդությանը զինել գիտությունների հիմունքների իմացությամբ և այդ բազայի վրա ձևավորել նրա աշխարհայացքը, մշակել ճիշտ, մատերիալիստական աշխարհայացք կյանքի վերաբերյալ, ժողովրդի պայքարում իր ունեցած տեղի, հասարակության հանդեպ իր պարտականությունների հարցերում:

Միջնակարգ դպրոցների աշակերտների մեջ կոմունիստական ամուր աշխարհայացք մշակելու գործը մանկավարժական կոլեկտիվների, պարտիական, կոմերիտական և պիոներական կազմակերպությունների, ծնողների և ամբողջ հասարակայնության կարևորագույն խնդիրն է: Այստեղ կոչված է մեծ դեր խաղալու քաղաքական գիտելիքների հիմունքների դասավանդումը, որը ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ մտցվում է միջնակարգ ուսումնական հաստատությունների բարձր դասարաններում: Բայց և այնպես ամեն ինչ կախված կլինի դասավանդման որակից, սովետական, պարտիական և կոմերիտական օրգանների ուշադրությունից:

Ուսուցիչը դաստիարակ է: Պարտիան և ժողովուրդը վստահում են ուսուցչին, գնահատում նրա ազնիվ աշխատանքը: Ծրագրային պահանջների կապակցությամբ ուսուցչի դերը է՛լ ավելի է բարձրանում: Նա բառ էության կանգնած է երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության ճանապարհի սկզբին:



Երիտասարդության մեջ խոր աշխարհայացքի ձևավորման, գաղափարական համոզվածության խնդիրը շատ ավելի լավ կարող էր լուծել նաև մեր բարձրագույն դպրոցը: Այստեղ հարցի էությունը առաջվա պես դաստիարակչական աշխատանքի թուլությունն է, որոշ ուսանողների կողմից հասարակական գիտությունների, մարքս-լենինյան տեսության հաճախ ձևական ուսումնասիրումը: Ուսանողական տարիները կապված են կյանքի ուղիների որոնումների, բնավորության ձևավորման հետ, դրանք լի են խորհրդածություններով, գնահատումներով ու վերագնահատումներով, հափշտակություններով և հիասթափություններով: Ուսանողը ագահորեն ընկալում է կյանքը, գաղափարները, փաստերը, իրադարձությունները:

Ինչպիսի՜ վարպետություն, որքա՜ն հաստատակամություն ու ճկունություն պետք է ցուցաբերել գաղափարական պատշաճ հունով ուղղելու ուսանող երիտասարդության հարցասիրությունը, լուծելու բոլոր կասկածներն ու հարցերը: Այս տեսակետից որքա՜ն մեծ է մարքսիզմ-լենինիզմի դասախոսի դերը: Իսկ մենք, մեղքներս ինչ թաքցնենք, հաճախ հանդիպում ենք հասարակական գիտությունների պաշտոնական-ձևական, տաղտկալի, դոգմատիկ դասավանդման փաստերի, մի դասավանդում, որն ընդունակ է սոսկ վանելու հետաքրքրությունը դեպի գիտելիքները, դեպի հասարակական գիտությունների ուսումնասիրումը:

Ոչ, միշտ չէ, որ պետք է մեղադրել ուսանողներին: Դրության շտկումը պետք է սկսել հասարակական գիտությունների դասախոսներից: Նրանցից ոմանց պետք է վերաուսուցել, վերապատրաստել, օգնել նրանց ազատվելու դասավանդման սխալ, դոգմատիկ հայացքներից ու մեթոդներից: Մենք պետք է մարքս-լենինյան գիտության դասավանդումը վստահենք այնպիսի մարդկանց, որոնք ընդունակ են դատելու ստեղծագործաբար, բորբոքել ուսանողների հետաքրքրությունը, նրանց մեջ պատվաստելու սեր դեպի կոմունիստական հասարակարգի ստեղծման ուղին ցույց տվող Մարքսի, Էնգելսի, Լենինի ստեղծած գիտությունը:

***

Մեր երկրի աշխատավորների մեջ գիտական աշխարհայացքի ձևավորման, առաջավոր տեսության պրոպագանդայի և ստեղծագործական զարգացման գործում կարևոր դեր է պատկանում հասարակական գիտությունների հիմնարկներին ու աշխատողներին: Մեր երկրում մարքս-լենինյան հասարակագիտական միտքը զարգացման բարձր մակարդակի է հասել:

Մեր գիտնականների համար ոգեշնչող օրինակ է տալիս ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի տեսական ստեղծագործական գործունեությունը: Մեզանում բացառիկ բարենպաստ պայմաններ են ստեղծված գիտական աշխարհայացքի ձևավորման, մարքս-լենինյան ուսմունքի զարգացման ու պրոպագանդման ուղղությամբ ակտիվ և բեղմնավոր աշխատանքի համար:

Պարտիան մեր տնտեսագետներին, փիլիսոփաներին, պատմաբաններին, իրավագետներին՝ հասարակական գիտությունների բոլոր ներկայացուցիչներին ներկայացնում է մի գլխավոր, վճռական պահանջ՝ կանգնած լինել կյանքի հողի վրա, ստեղծագործաբար զարգացնել Մարքսի, Էնգելսի, Լենինի մեծ ուսմունքը:

Մենք այսուհետև ևս պետք է բարձր գնահատենք այն վառ ու տաղանդավոր հրապարակախոսությունը, որ պարզաբանում և մասսայականացնում է

մարքս-լենինյան ուսմունքի այս կամ այն դրույթը։ Բայց հարկավոր է ավելի առաջ գնալ, ինքնուրույն և խոր կերպով վերլուծել և ընդհանրացնել սոցիալական պրոցեսները, բացահայտել դրանց տենդենցները, հանձնարարականներ մշակել տնտեսական, քաղաքական և գաղափարական աշխատանքի պրակտիկայի համար։ Վաղուց արդեն ժամանակն է, որ մեր գիտնականները ավելի համարձակորեն ձեռնամուխ լինեն հրատապ պրոբլեմների տեսական մշակմանը, մասնավորապես ավելի մեծ ուշադրություն նվիրեն կոնկրետ սոցիալական հետազոտություններին։ Մենք ունենք հասուն և լավ գիտական կադրեր, որոնք իրենց նվիրել են հասարակական գիտության պրոբլեմների մշակմանը։ Բայց հարկավոր է դրանք ավելի համարձակորեն լրացնել երիտասարդ ստեղծագործական ուժերով։

Ճանապա՛րհ երիտասարդ գիտնականներին, ավելի մեծ չափով վստահե՛ք նրանց ընդունակություններին ու հնարավորություններին։

Եթե մենք ուզում ենք հասարակական գիտություններն է՛լ ավելի մոտեցնել կյանքին, դրանք ի սպաս դնել կոմունիստական շինարարությանն ու կոմունիստական դաստիարակությանը, ժամանակն է վերջ տալ գիտական հետազոտությունների թեմաների ընտրության գործում պատահականության տարրերին։ Չէ՛ որ որոշ հրատապ պրոբլեմներ դուրս են մնում հասարակական գիտությունների գործիչների տեսադաշտից։

Հատուկ հարց է՝ անհատի պաշտամունքի հետևանքները տեսության մեջ և հասարակական գիտությունների խնդիրները։

Հարկավոր է լավ հասկանալ, թե որն է մարքս-լենինյան տեսության զարգացման մեջ այն շրջադարձի ռևոլյուցիոն իմաստը, որ վերջին տարիներս իրագործեց և շարունակում է իրագործել մեր պարտիան, հարկավոր է որոշել իր տեղը գիտական ստեղծագործության մեջ լենինյան ոգին լրիվ վերականգնելու պայքարում։ Գաղափարախոսության բնագավառում անհատի պաշտամունքը ծնեց երկու լուրջ հիվանդություն՝ տեսության կտրվածությունը կյանքից, սոցիալիստական շինարարության պրակտիկայից և մասսաների վրա պարտիայի գաղափարական ներգործության ոլորտի նեղացումը։ Երբ այսօր մենք վերհիշում ենք անհատի պաշտամունքի օրով գոյություն ունեցած իրադրությունը և այն համեմատում այժմ մեր պարտիայի մեջ և երկրում ստեղծված իրադրության հետ, ապա հատկապես պարզ տեսնում ենք, թե մենք որքան ենք առաջ գնացել, որքան են փոխվել պայմանները իսկական ստեղծագործական աշխատանքի համար։

Սակայն տեսական աշխատանքում դեռևս մինչև վերջ հաղթահարված չեն թե՛ կյանքից կտրվածությունը, թե՛ վախը դեպի նորը, հրատապ հարցերից հեռանալը, թե՛ սերտած ֆորմուլներով դատելու վնասակար սովորությունը, տեսական անսկզբունքայնության տարրերը։ Դեռ շատ աշխատանք պետք է կատարվի, որ հասարակական գիտությունների աշխատողները դրսևորեն իրենց բոլոր հնարավորությունները, որ նրանց ձայնն ավելի ուժգին հնչի։

Պակաս կարևոր չէ խորամուխ լինել այն բանին, ինչը առաջ անվանվում էր «ստալինյան էտապ» մարքսիզմ-լենինիզմի զարգացման մեջ։ Այդպիսի անսահման չափազանցումը, ինչպես այժմ միանգամայն պարզ է, բխում էր բնավ ո՛չ գործի նկատմամբ սկզբունքային մոտեցումից։

Կար ժամանակ, երբ մեր հասարակական-քաղաքական գրականության մեջ, երբ խոսք էր բացվում Ստալինի հոդվածների կամ ելույթների մասին,



չկային այլ հասկացություններ և արտահայտություններ, բացի «մեծ» և «հանճարեղ» արտահայտությունները։ Այժմ մենք հրաժարվել ենք այդպիսի հասկացություններից և միանգամայն ճիշտ ենք արել։ Իհարկե, Ստալինը ծառայություններ ունեցել է պարտիայի և կոմունիստական շարժման հանդեպ, այդ թվում նաև ռևոլյուցիոն տեսության ասպարեզում։ Հազիվ թե նպատակահարմար է հաշվից դուրս նետել, սխալ և անճիշտ համարել այն ամենը, ինչ նա ասել է կամ գրել է։ Այնտեղ, որտեղ Ստալինը խստիվ հետևում էր Լենինի հայացքներին, ակտիվորեն պաշտպանում դրանք սոցիալիզմի հակառակորդների դեմ մղած պայքարում, այնտեղ նա չէր նահանջում տեսական ճիշտ դիրքերից։ Նա ունի մի շարք օգտակար և պետքական աշխատություններ։ Վերցնենք, մասնավորապես, «Լենինիզմի հիմունքների մասին» դասախոսությունները. կան գրքեր, օրինակ, «Մարքսիզմը և ազգային հարցը», որի մասին լավ կարծիք է հայտնել Վ. Ի. Լենինը։

Բայց Ստալինը գերազանցապես մարքսիզմ-լենինիզմի մասսայականացնող էր։ Ոչ մի հիմք չկա նրա աշխատությունները համարելու ավանդ, առավել ևս մեծ ավանդ մարքս-լենինյան ուսմունքի մեջ։ Նա թույլ է տվել շատ սխալներ, սուբյեկտիվ գնահատականներ, առաջ է քաշել դրույթներ, որպես կյանքից կտրված անառարկելի պոստուլատներ։

Մարքսիստական փիլիսոփայության բնագավառում Ստալինը ձևակերպեց հակադրությունների միասնության բացակայության վերաբերյալ սխալ դրույթը, շփոթ մտցրեց անցյալի փիլիսոփայական ժառանգությանը ցույց տրվող վերաբերմունքի հարցում, բազիսի և վերնաշենքի փոխհարաբերության վերաբերյալ մարքսիստական ուսմունքի մեջ. «վերացրեց» բացասման բացասման օրենքը և առհասարակ մատերիալիստական դիալեկտիկայի օրենքները փոխարինեց «դիալեկտիկայի չորս գծերով», սահմանեց այն «օրենքը», թե իբր մեր երկրում սոցիալիզմի հաջողությունների աճի համեմատ սրվում է դասակարգային պայքարը։ Ստալինի «Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի մասին» աշխատությունը, թեև բովանդակում է մարքսիստական փիլիսոփայության հիմունքների սոսկ հանրամատչելի, միևնույն ժամանակ սխալներից ոչ զերծ շարադրանքը, բարձրացվել էր մարքս-լենինյան մտքի «գագաթի» մակարդակին։

Մարքսիզմի տնտեսական տեսության բնագավառում Ստալինը լուրջ սխալներ թույլ տվեց սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պայմանների, կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության մակարդակի բարձրացնելու ուղիների, ապրանքաշրջանառությունը կրճատելու և այն մթերափոխանակությամբ փոխարինելու հարցերում, սոցիալիզմի օրոք բնակչության վճարունակ պահանջարկի հարցում, որն իբր պետք է միշտ առաջ անցնի արտադրությունից։ Ստալինը սխալ էր բացատրում սոցիալիզմի օրոք ապրանքային արտադրության պատճառները, ապրանքային արտադրության ոլորտից բացառում էր արտադրության միջոցները, առաջ քաշեց այն սխալ դրույթը, թե կապիտալիստական գլխավոր երկրներում հետպատերազմյան ժամանակաշրջանում արտադրության ընդհանուր ծավալի կրճատումը անխուսափելի է և այլն։

Իրավագիտության ասպարեզում, ինչպես հայտնի է, Ստալինը ինքը գրեթե հանդես չէր գալիս հատուկ աշխատություններով, «տեսական պատգամախոսի» դերը վերապահելով Վիշինսկուն, որը նրա խոսափողն էր և երկար տարիներ հանդես էր գալիս պետության և իրավունքի հարցերում առաջատար տե-

սաբանի դերում։ Քաջ հայտնի է, թե տեսական կամայականության ինչպիսի դագաթների է հասնում Վիշինսկին, փորձելով իրավաբանորեն հաստատել Ստալինի այն սխալ և վնասակար թեզը, թե մեր երկրում սոցիալիզմի դիրքերի ամրապնդման համեմատ սրվում է դասակարգային պայքարը, ձգտում էր իրավագիտությունը հարմարեցնել սոցիալիստական օրինականության խախտումների արդարացման հետ։

Պատմա-պարտիական գիտության բնագավառում առավել ծանր հետևանքներ ունեցավ Ստալինի սուբյեկտիվիզմը պատմական իրադարձությունների գնահատման հարցում, սեփական անձի մեծարման նպատակով փաստերի խեղաթյուրումը նրա կողմից, մեր պարտիայի պատմության մեջ Վ. Ի. Լենինի դերի նսեմացումը, իսկ ամենագլխավորը՝ հասարակության զարգացման մեջ պարտիայի, ժողովրդական մասսաների դերի թերագնահատումը։

Պատմա-պարտիական գիտությունը վերածվում էր բոլոր եղանակներով, միայն թե Ստալինին ներկայացնեին «անսխալական», բացառեին նրա կողմից տեսական ու քաղաքական սխալների հնարավորության ամեն մի միտք, թեև, ինչպես հայտնի է, այդպիսի սխալները քիչ չէին։ Անթույլատրելի էր համարվում վերհիշել և գրել այն մասին, որ ՌՍԴԲՊ IV համագումարում Ստալինը ագրարային հարցում կանգնած է եղել «բաժանարարների» դիրքերում, ռեակցիայի տարիներին տատանումներ է թույլ տվել «օտզովիզմի» դեմ մղված պայքարում և հաշտվողաբար է վերաբերվել մարքսիզմի փիլիսոփայության վրա կատարված իդեալիստական գրոհներին, 1917 թվականին և ավելի ուշ լրջորեն սխալվել է խաղաղության, Սովետների դերի, Վ. Ի. Լենինի՝ ռեակցիոն դատարան ներկայանալու, պետական կառուցվածքի և այլ հարցերում։

Իսկ ինչպիսի՞ն պետք է լինի ճիշտ մոտեցումը։ Խոսել միայն այն փաստերի մասին, երբ Ստալինը թույլ էր տալիս տեսական ու քաղաքական սխալներ, ինչպես առաջարկում են որոշ գաղափարական աշխատողներ, և բոլորովին անտեսել այն փաստերը, երբ նա տեսական ու քաղաքական ճիշտ դիրքե՞ր էր գրավում։ Բայց հարկ կա՞, որ մենք ընկնենք այսպիսի ծայրահեղության մեջ։

Լենինիզմը ուսուցանում է, որ կա միայն մեկ ճիշտ ուղի՝ պատմական ճշմարտության ուղին, որը և պետք է վերականգնել լրիվ ծավալով։ Հսկայական դեր պետք է խաղա պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ հրատարակվող՝ ՍՄԿՊ բազմահատոր պատմությունը։ Պարտիայի պատմության ամբողջ բովանդակությունը պետք է տոգորված լինի լենինյան գաղափարների ոգով, լենինյան գիտական մեթոդի ոգով, XX և XXII համագումարների որոշումների, ՍՄԿՊ նոր Ծրագրի ոգով։ Հարկավոր է ճիշտ և օբյեկտիվ կերպով, փաստաթղթերին խստիվ համապատասխան լուսաբանել մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար Կոմունիստական պարտիայի, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների հերոսական պայքարի պատմության բոլոր հիմնական էտապները։

Այն ամենը, ինչ կապված է անհատի պաշտամունքի հետ, մեծ վնաս հասցրեց մեր երկրի հասարակական-գիտական մտքի ստեղծագործական զարգացմանը։

Այն պայմաններում, երբ Ստալինի սովորական, հաճախ սխալներ բովանդակող աշխատությունները հռչակվում էին «գիտության գագաթ», օբյեկտիվորեն նսեմացվում էր Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունների նշանակությունը, նվազեցվում էր մարքս-լենինյան ուսմունքի հարստությունը, փաստորեն փակվում էր ռևոլյուցիոն տեսության ստեղծագործական հետագա զարգացման ճանապարհը։

Ահա թե ինչու անհրաժեշտ է վճռականորեն քննադատել նրանց, ովքեր փորձում են «տեսական» բազայի վրա դնել անհատի պաշտամունքը, ովքեր կառչում են Ստալինի՝ որպես «տեսության աստծու» վերաբերյալ կյանքի կողմից պսակազերծված հայացքին, ովքեր չեն կարողանում ազատվել հին պատկերացումների արատավոր շրջանակներից։

Իսկ այդպիսի մարդիկ, մասնավորապես պարտիայի պատմաբանների շրջանում դեռ կան։ Մի՞թե այդ չի վկայում, օրինակ, այն, որ Մոսկվայի համալսարանը վերջերս Պ. Ժիբարևի և Մ. Ստուչեբնիկովայի խմբագրությամբ հրատարակել է «ՍՄԿՊ պատմության աղբյուրների տեսություն»-ը։ Գրքի հեղինակները գովաբանում և որպես ՍՄԿՊ պատմության ուսումնասիրման հիմնական աղբյուրներ հանձնարարում են Ստալինի բոլոր գործերը, նույնիսկ նրանք, որոնք խոշոր սխալներ են պարունակում, և նրանք, որոնց մասին հենց ինքը նշել է որպես սկսնակ, ոչ հասուն մարքսիստի աշխատություններ։

Մենք այսուհետև ևս պետք է վճռականորեն մեր գաղափարական ասպարեզը մաքրենք անհատի պաշտամունքի մնացորդներից։ Դրա հետ մեկտեղ հարկավոր է զգուշանալ անհատի պաշտամունքի հետևանքների քննադատությունը պարտիայի շահերից, մարքսիզմ-լենինիզմի զարգացման շահերից հեռու նպատակների համար օգտագործելու փորձերից։

Դժբախտաբար, մեր մամուլում երևացին հոդվածներ, որոնք առիթ են տալիս դնելու այս հարցը՝ արդյոք բոլո՞րն են լավ հասկացել XXII համագումարի պահանջները։ Վերցնենք, օրինակ, «Էկոնոմիչեսկայա գազետայում» հրատարակված տնտեսագետ Լ. Լեոնտևի հոդվածը։ Չէ՞ որ նա առաջարկել է ոչ ավելի, ոչ պակաս՝ տնտեսական գիտությունից և պրակտիկայից դեն նետել սոցիալիզմի քաղաքատնտեսության հիմնական օրենքը, իսկ դրա հետ միասին նաև մի քանի այլ օրենքներ։ Հեղինակը իրավացի է, երբ հարց է դնում, որ անհրաժեշտ է հաղթահարել անհատի պաշտամունքի «մնացորդային երևույթները», այդ պաշտամունքի «արձագանքները» տնտեսական տեսության ասպարեզում։ Բայց այն ուղին, որ նա ինքը բռնել է և դեպի որը նա կոչ է անում մյուսներին, ճիշտ չէ և կարող է հանգեցնել լուրջ սխալների, խաչ քաշել մեր երկրում տնտեսական մտքի զարգացման ասպարեզում եղած դրականի վրա, հարցականի տակ դնել սոցիալիզմի ամբողջ քաղաքատնտեսությունը։

Կան և տեսականորեն ոչ հասուն այնպիսի մարդիկ, որոնք չեն հասկանում, որ պրոլետարիատի դիկտատուրայի մասին մարքս-լենինյան ուսմունքը գլխավորն է մարքսիզմ-լենինիզմի մեջ, առաջարկում են հրաժարվել արտադրողական ուժերի բնույթին արտադրական հարաբերությունների համապատասխանության օրենքից, իսկ ոմանք էլ կուզենային վերանայել, օրինակ, փիլիսոփայական որոշ հոսանքների գնահատումները, որոնք ժամանակին քննադատվել են մեր պարտիայի, սովետական գիտական հասարակայնության կողմից։

Չի կարելի թույլ տալ, որ մարքս-լենինյան տեսության մեջ անհատի պաշտամունքի հետևանքների դեմ պայքարելու անվան տակ հարված հասցնեն բուն տեսությանը, նրա հիմքերին, որ աննկատելիորեն ջրի երես դուրս գան և մեր մամուլը թափանցեն ամեն տեսակի հակալենինյան հայացքներ ու հոսանքներ, որոնք վաղուց ջախջախվել և դեն են շպրտվել մեր պարտիայի, Վ. Ի. Լենինի կողմից։

Անհատի պաշտամունքի հետևանքների դեմ մղվող պայքարը և մարքս-լենինյան գաղափարախոսության անխախտ հեղինակությունը տարբեր բաներ են, դրանք չի կարելի իրար հետ շփոթել։

Մեր պարտիան պայքարել է և կպայքարի անհատի պաշտամունքի հետևանքների դեմ, բայց այդ պայքարը չպետք է հանգեցնի մարքս-լենինյան ուսմունքի ուժի թուլացման։ Գաղափարախոսության մեջ անհատի պաշտամունքի մնացուկների լրիվ հաղթահարման հետևանքով Մարքսի—Էնգելսի—Լենինի անմահ ուսմունքը նոր, է՛լ ավելի հոյակապ հաղթանակների կհասնի։ Մենք պետք է աչալուրջ լինենք և ոչ ոքի թույլ չտանք ոտնձգություն կատարելու կոմունիստական գաղափարախոսության հեղինակության դեմ, խախտելու մարքս-լենինյան աշխարհայացքի հիմքերը։

Գաղափարական ճակատի աշխատողները պետք է գլխավոր ուշադրությունը և հիմնական ուժերը կենտրոնացնեն այն հսկայական ավանդի իմաստավորման, հետագա զարգացման ու պրոպագանդման վրա, որը վերջին տարիներս մեր պարտիան, նրա տեսական շտաբը՝ լենինյան Կենտրոնական Կոմիտեն մուծել են մարքսիզմ-լենինիզմի գանձարանը։

## IV

Մեր գաղափարական աշխատանքի կարևորագույն ուղղությունը սովետական հասարակության բոլոր աշխատավորների դաստիարակությունն է ամենավեհ և մարդասիրական կոմունիստական բարոյականության ոգով:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները իրենց նպատակ չէին դրել կոնկրետացնել ապագայի մարդկանց բարոյական կերպարի գծերը։ «Երբ այդ մարդիկ երևան գան,— գրել է Ֆ. Էնգելսը,— նրանք սատանայի գիրկը կուղարկեն այն ամենը, ինչ ներկա պատկերացումների համաձայն նրանք պետք է անեն. նրանք իրենք կիմանան, թե ինչպես վարվեն, և իրենք էլ դրան համապատասխան, կմշակեն իրենց հասարակական կարծիքը՝ առանձին վերցրած յուրաքանչյուրի արարքների վերաբերյալ...» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս։ Ընտիր երկեր, հատ. II, էջ 302)։

Բայց այն, ինչ տարիների հեռավորության ետևում թաքնված էր մեր մեծ ուսուցիչների հայացքից, տեսանելի կերպով կանգնեց մեր առջև, այն սերնդի առջև, որը պետք է կառուցի կոմունիզմը և ապրի կոմունիզմի օրոք։

Մեր պարտիան նոր Ծրագրում ձևակերպել է կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսը։ Նրանում մարմնավորված են բարոյական այն սկզբունքները, որոնք մշակվել են առաջադիմական հասարակական ուժերի, հատկապես բանվոր դասակարգի կողմից մարդկության ամբողջ բազմադարյան պատմության ընթացքում։ Դրա հետ միասին նրանում արտահայտված են այն էթիկական պահանջները, որոնք կարող էին ծնունդ առնել և ծնունդ առան միայն աշխարհի կոմունիստական վերափոխման ժամանակակից փուլի պայմաններում։

Նոր մարդու բարոյական աչնիվ գծերը, որոնք ձևակերպված են պարտիայի Ծրագրում, ոչ միայն մեր հեռավոր իդեալն են, այլև յուրաքանչյուր սովետական մարդուն հասարակության կողմից ներկայացվող ժամանակակից պահանջներ: Կարծել, թե միայն ութսունական թվականների մարդիկ կառաջնորդվեն կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի նորմերով, նշանակում է չհասկանալ, որ պարտիայի Ծրագրի իրականացումը արդեն սկսվել է, չհասկանալ, որ մենք արդեն ապրում ենք Ծրագրով: Կոմունիստական գիտակցություն, բարձր բարոյականություն մշակելու համար հարկավոր է պայքարել այժմ, արդեն այսօր կոդեքսի պահանջները դնել մեր ամբողջ աշխատանքի հիմքում, ըստ կոդեքսի դատել մարդկանց գիտակցության և վարքագծի մասին։



Կոմունիստական բարոյականության մշակումը միակողմանի պրոցես չէ, որտեղ մարդը դաստիարակության սոսկ պասսիվ օբյեկտն է։ Դաստիարակության հաջողությունը կախված է ոչ միայն օբյեկտիվ գործոններից և գաղափարական աշխատանքից, այլև բուն անհատից։ Իր սեփական վարքագծի նկատմամբ պահանջկոտությունը, «կոմունիստական հայացքներ մշակելու իր կարողությունը»,— ինչպես ասել է Վ. Ի. Լենինը,— նոր բարոյականության ձևավորման կարևորագույն կողմն է։

Դեպի կոմունիզմ առաջ ընթանալու համեմատ կանեն ոչ միայն հասարակության անդամների պահանջմունքները, այլև իրենք՝ հասարակությունը ավելի ու ավելի պահանջկոտ կդառնա իր անդամների նկատմամբ:

Կոմունիստական բարոյականության ոգով սովետական մարդկանց դաստիարակումը ենթադրում է անհաշտ պայքար մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ։ Հասարակության բոլոր անդամների գիտական աշխարհայացքի ձևավորումը կոմունիստական դաստիարակության արմատական հարցերի լուծման բանալին է։ Մարդկանց աշխարհայացքն ու կոմունիստական բարոյականությունը ամրապնդվում և հղկվում են իդեալիստական, մետաֆիզիկական և այլ հակագիտական կոնցեպցիաների դեմ մղվող պայքարում։

Գիտական աշխարհայացքի և կոմունիստական բարոյականության ձևավորումը անհնար է առանց կրոնական գաղափարախոսության դեմ պայքարելու։ Մեզ մոտ ամբողջությամբ վերցրած մեծ աշխատանք է կատարվել աշխատավորների աթեիստական դաստիարակության ուղղությամբ։ Սովետական մարդկանց գերակշռող մեծամասնությունը գիտակից աթեիստներ են, նրանք հույսը դնում են ոչ թե աստծու վրա, այլ սեփական աշխատանքի վրա, ապրում են ոչ թե հանուն երկնային դրախտի, այլ հանուն երկրային կոմունիզմի։

Բայց կրոնական մնացուկները կենսունակ են, դրանք ամուր պահպանվում են մեր երկրի շատ աշխատավորների մոտ։ Առայժմ դրությունն այնպիսին է, որ եկեղեցականները ոչ այնքան պաշտպանվում են մեր հակակրոնական պրոպագանդայից, որքան փորձում են ամրապնդել իրենց դիրքերը, հենվելով գլխավորապես բնակչության այն մասի վրա, որը գաղափարական տեսակետից պակաս կայուն է, պակաս է ներգրավված հասարակական-քաղաքական գործունեության մեջ։ Հատկապես անհանդուրժելի է զանազան տեսակի աղանդների գործունեությունը, որոնց ղեկավարները գիտակցաբար մարդկանց տգիտությունն օգտագործում են իրենց շահադիտական նպատակներով։

Մեր հակակրոնական պրոպագանդայի հիմնական արատն այն է, որ նա համատարած կերպով մղվում է շաբլոն ձևով, ոչ խելացիորեն, միակողմանի և հաճախ հանգում է միայն հոգևորականության ներկայացուցիչների մերկացման, չբացահայտելով կրոնի՝ որպես հակագիտական, ռեակցիոն ուսմունքի վնասը։

Կրոնական աշխարհայացքի դեմ մղվող պայքարում մենք քիչ ենք բացահայտում այն, ինչ որ կրոնը հեռու է պահում հասարակական ակտիվ գործունեությունից։ Մեր մամուլը, կինոն, հեռուստատեսությունը, դպրոցը, բարձրագույն

ուսումնական հաստատությունները, կուլտուր-լուսավորական հիմնարկները պետք է իրենց ջանքերը կենտրոնացնեն կրոնական աշխարհայացքի սնանկության գիտական, բայց մատչելի բացահայտման վրա, որպեսզի հօդս ցնդեցնեն կրոնական դոգմաների մշուշը, մերկացնեն դրանց հակագիտական էությունը, ցույց տան դրանց ավելորդությունը, հոգևոր և գաղափարական դատարկությունը։

Պակաս կարևոր և սուր չէ պայքարը մեր հասարակության մեջ եղած հակահասարակական տարրերի դեմ։ Սովետական մարդիկ չեն կարող թույլ տալ, որ սոցիալական թափթփուկը, ժուլիկը, սպեկուլյանտը, խուլիգանը ոտնահարեն մեր օրենքները։ Չի կարելի նրանց թույլ տալ թունավորելու սովետական մարդկանց կյանքը։ Դժբախտաբար, հակահասարակական երևույթների դեմ պայքարը ոչ ամենուրեք է մղվում նպատակասլաց և ակտիվ կերպով, մշտապես ու հաստատակամորեն։

Սոցիալիստական հասարակության մեջ ոչնչացված են հանցագործությունների սոցիալական պատճառները։ Թեև հանցագործությունների քանակը նվազում է, բայց չի կարելի հանգստանալ ընդհանուր թվերով։ Մենք չենք կարող կես ճանապարհին կանգ առնել։ «Կոմունիզմ կառուցող հասարակության մեջ տեղ չպետք է ունենան իրավախախտումներն ու հանցագործությունները»,— այս է ՍՄԿՊ Ծրագրի պահանջը, այս է այն խնդիրը, որ դնում է պարտիան։ Այդ խնդրի լուծման գործում կարևոր ու պատասխանատու դեր է պատկանում մասսաների մեջ կատարվող գաղափարական աշխատանքին։

Ինչո՞ւ է այժմ նորից հարկ լինում խոսել այդ մասին։ Որովհետև որոշ ընկերներ հաճախ մոռանում են մարդկանց դաստիարակելու, համոզելու խնդիրը, փորձելով հանցագործությունների փաստերի դեմ պայքարը ամբողջովին բարդել դատարանի, դատախազության և միլիցիայի ուսերին։ Կան մարդիկ, որոնք սխալ են հասկանում պարտիայի ցուցումները։ Նրանք մերթ փորձում են միլիցիան դարձնել հանցագործներին ու կողոպտիչներին համոզելու և հորդորելու օրգան, մերթ էլ ընկնում են մյուս ծայրահեղության մեջ և ապավինում են սոսկ հարկադրանքին ու պատժին։

Չի կարելի ճոճանակի նման մի ծայրից ընկնել մյուսը։

Հիշեցեք, թե սովետական մարդիկ ինչպիսի խանդավառությամբ, ինչպիսի եռանդով ձեռնամուխ եղան հասարակական կարգ հաստատելու գործին։ Բայց, դժբախտաբար, մի շարք ռեսպուբլիկաներում, երկրամասերում և մարզերում առաջին հաջողությունները չամրապնդվեցին, չզարգացվեցին։ Իսկ ի՞նչ պատահեց։ Ինչո՞ւ ինչ-որ չափով թուլացավ հասարակայնության խանդավառությունը, անցավ հանցավոր տարրերի սարսափը ժողովրդական դրուժինաներից։ Բանն այն է, որ շատ քաղաքներում դրուժինաները գոյություն ունեն սոսկ թղթի վրա։ Բանն այդպես է Սարատովի, Բրյանսկի և բազմաթիվ այլ մարզերում։ Սովետական հասարակայնության ուժերն անսպառ են։ Բավական է ասել, որ միայն 130 հազար ժողովրդական դրուժինաներում կան չորս միլիոն դրուժինիկներ։ Ինչպիսի՜ վիթխարի աշխատանք կարող են կատարել նրանք, եթե ինչպես հարկն է կազմակերպվի այդ աշխատանքը։

Հասարակական ներգործությունը զուգորդելով սովետական օրենքների ուժի հետ, մենք կարող ենք և պարտավոր ենք լիովին վերջ տալ մեր պայմաններում անհանդուրժելի հանցագործությունների և իրավախախտումների փաստերին։





Անցյալի մնացուկների դեմ, սովետական մարդկանց կոմունիստական բարձր բարոյականության համար մղվող պայքարը անբաժանելի է բուրժուական գաղափարախոսության ազդեցության դեմ մղվող պայքարից։

Իրավացիորեն նշելով, որ կապիտալիստական հասարակության ճգնաժամի հետ միասին անկում են ապրում նաև նրա գաղափարները, որ իմպերիալիստական գաղափարախոսությունը ճգնաժամ է ապրում, մենք, այնուամենայնիվ, չենք կարող թուլացնել զգոնությունը։ Հարկավոր է պարզորոշ գիտակցել, որ համաշխարհային ասպարեզում երկու գաղափարախոսությունների պայքարում մեր դեմ կանգնած է խարդախ և խիստ փորձված հակառակորդ։ Նա ունի պրոպագանդայի հզոր միջոցներ և բավական խորամանկ մեթոդներ։ Մեր թշնամիներն ստեղծել են պրոպագանդիստական մեծ, լավ կարգավորված և վարժեցված ապարատ։ Եվ չպետք է մոլորվել, թե իբր իմպերիալիստների պրոպագանդիստական մեքենան դատարկ ընթացքով է աշխատում։ Նա ոչ միայն ակտիվորեն ազդում է հասարակական կարծիքի ձևավորման վրա իմպերիալիստական լագերի ներսում, այլև զանազան ուղիներով թափանցում է մեր երկիրը, մյուս սոցիալիստական երկրները, ճգնելով այս կամ այն կերպ ներազդել սովետական մարդկանց վրա, նրանց շեղել ճիշտ ճանապարհից, կասկածներ սերմանել և այլն։

Միջազգային ասպարեզում գաղափարական պայքարը ավելի ու ավելի շատ է սրվում։ Մեր պարտիան միշտ ընդգծել է, որ տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը երբեք չի նշանակել և չի նշանակի հակադիր գաղափարախոսությունների՝ սոցիալիստական և կապիտալիստական գաղափարախոսությունների գոյակցություն։ Գաղափարախոսության բնագավառում միշտ մղվել է և մղվելու է դասակարգային անհաշտ պայքար։ Մեր հակառակորդները մեզ «գաղափարների պատերազմ» են հայտարարում, սպառնում են գաղափարական ճակատամարտը փոխադրել մեր տերիտորիան։

Իմպերիալիստական պրոպագանդայի գաղափարական դրոշը հակակոմունիզմի սև դրոշն է։

Հակակոմունիզմը բուրժուական գաղափարախոսության այլասերման ամենանողկալի հետևանքներից մեկն է։ Ընդունակ չլինելով առաջ քաշել կոմունիզմից տարբեր ոչ մի այնպիսի գաղափարական պլատֆորմ, որը գրավիչ լիներ աշխատավոր մասսաների համար, դառնար նրանց դրոշը, հափշտակեր նրանց, իմպերիալիստական գաղափարախոսները բռնում են կոմունիստական գաղափարախոսությունը խեղաթյուրելու ուղին, զրպարտության ուղին։ Տվյալ դեպքում նրանք նմանվում են այն հավին, որը նույնիսկ ամենալավ խնձորի մեջ միայն որդ է փնտրում։

Բուրժուական գաղափարախոսության ուժը նրա տրադիցիաներն են, օրգանական կապը բազմադարյան սովորույթների և պատկերացումների՝ մասնավոր սեփականատիրական հոգեբանության, կրոնականության, ազգային անհանդուրժողության և այլ երևույթների հետ, որոնք որպես անցյալի մնացուկներ, դեռևս ամուր մնում են նաև սովետական մարդկանց մի որոշ մասի գիտակցության մեջ։ Երկու գաղափարախոսությունների պայքարի պայմաններում մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկները օբյեկտի-

վորեն գտնվում են մեր հակառակորդների բանակում, պատերազմում են մեր դեմ։ Բուրժուական գիտակցության մնացորդները առավել վառ կերպով դրսևորվում են մասնավոր սեփականատիրական հոգեբանության մեջ։

Ընչաքաղցությունը, մանր սեփականատիրական տենդենցները ժանգի պես ուտում են անկայուն մարդու հոգին, նրան մղում դեպի ապօրինություններ և հանցագործություններ։ Եվ մասնավոր սեփականատիրական բնազդների խրախուսման ավելի հուսալի միջոց չկա, քան անտարբերությունը այդպիսի երևույթների նկատմամբ։ Ո՞վ հայտնի չէ, օրինակ, որ անձնական հարստացման բազմաթիվ փաստեր կապված են սպեկուլյացիայի, գանձագողության, պաշտոնական դիրքի չարաշահման հետ և այլն։ Ուրեմն ինչո՞ւ հասարակայնությունը իր վերահսկողության տակ չառնի, հաշիվ չպահանջի նրանցից, ովքեր ապրում են ոչ սեփական միջոցներով և ունեն կասկածելի անձնական գույք։ Ինչո՞ւ համապատասխան օրգանները չունկնդրեն հասարակայնության պահանջներին, չպարզեն, թե որտեղից է ձեռք բերվում այդ ունեցվածքը։

Հարկ չկա ընդունել ոչ մի հատուկ օրենք, եթե հիշենք, որ սոցիալիստական հասարակության մեջ անաշխատ սպառումը ոչ միայն անբարոյական երևույթ է, այլև հակաօրինական է։

Պարտիայի նոր Ծրագիրը մեզ ուժեղ զենք է տվել մասնավոր սեփականատիրական տենդենցների դեմ մղվող պայքարում։ Պարտիան ձևակերպել է անձնական սեփականության և նրա զարգացման հեռանկարների վերաբերյալ սկզբունքորեն նոր տեսական դրույթներ։ Հիշեցեք Ն. Ս. Խրուշչովի նշանավոր խոսքերը՝ «Շատ տարիների նկատմամբ աշխատավորի անձնական սեփականությունը, որպես անձնական օգտագործման ձև, չի հակասում կոմունիստական շինարարությանը, քանի դեռ այն պահպանում է խելացի չափեր և չի դառնում ինքնանպատակ բան»։ Պարտիան հստակորեն որոշել է մասսաների բարեկեցության բարձրացման կոմունիստական ուղիները, դրանք պետք է պարզաբանել, հաստատակամորեն մշակել կոմունիստական հոգեբանությունը։

Ժամանակակից պայմաններում մեծ նշանակություն ունի պայքարը բուրժուական նացիոնալիզմի ռեցիդիվների դեմ՝ մարդկանց սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար։

Նացիոնալիզմը ճանապարհ է մաքրում բացահայտ բուրժուական, հակակոմունիստական գաղափարախոսության համար։ Այս հետևությունը իրավացի է ոչ միայն միջազգային տեսակետից։ Մենք պետք է վճռականորեն ու հաստատակամորեն պայքար մղենք նացիոնալիստական ամենաչնչին դրսևորումների դեմ, որտեղից էլ դրանք երևան գան, ինչպիսի ձև էլ ընդունեն՝ տնտեսական, գաղափարական, կուլտուրական։ Չէ՞ որ նացիոնալիզմի ռեցիդիվները, արհեստականորեն բորբոքվում են իմպերիալիստական պրոպագանդայի կողմից և օգտագործվում են կոմունիզմի դեմ ուղղված թշնամական նպատակներով։ Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով մեր երկրի աշխատավորների դաստիարակությունը գաղափարական կարևորագույն խնդիրներից մեկն է։

Ինչպես և դաստիարակչական աշխատանքի ամեն մի բնագավառում, այստեղ նույնպես ուշադրության կենտրոնում պետք է դրվի ՍՄԿՊ XXII համագումարի նյութերի պարզաբանման աշխատանքը, հիմնական շեշտը պետք է դնել Սովետական Միության սոցիալիստական ազգերի անշեղ մերձեցման ու նրանց համակողմանի փոխհարստացման, սոցիալիստական լագերի եր-



կրների բարեկամության ու համագործակցության ամրապնդման օրինաչափ բնույթի, «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» ոգեշնչող կոչով հանդես եկող պրոլետարական ինտերնացիոնալիզմի հզոր ուժի մասին նոր Ծրագրի մարքս-լենինյան ստեղծագործական հետևությունների պարզաբանման վրա։

Գաղափարական-դաստիարակչական աշխատանքի հիմքում պետք է դրվեն ոչ թե աշխարհագրական-օդերևութաբանական վերացական այլաբանություններ, այլ Մարքսի—Էնգելսի—Լենինի ձևակերպած իսկական ինտերնացիոնալիստական սկզբունքները։

XXII համագումարի նյութերը, պարտիայի նոր Ծրագիրը, Կոմունիստական ու բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցության Հայտարարությունը բացահայտում են ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի մեջ սոցիալիստական ազգերի համագործակցության ու մերձեցման հիմնական օրինաչափությունները, կապիտալիստական զարգացած պետությունների աշխատավորների և գաղութային ճնշումից վերջերս ազատագրված կամ ազատագրվող ժողովուրդների հետ նրանց ինտերնացիոնալ կապերի զարգացման օրինաչափությունները։

Սոցիալիստական երկրների առաջադիմության կարևորագույն պայմանը նրանց փոխադարձ օգնությունն ու աջակցությունն է։ Սոցիալիստական սիստեմի էության մեջ չկան օբյեկտիվ պատճառներ այդ սիստեմի մեջ մտնող ժողովուրդների ու պետությունների կոնֆլիկտների և ընդհարումների համար։ Սոցիալիզմի թշնամիները կաշվից դուրս են գալիս, որպեսզի սեպ խրեն սոցիալիստական երկրների և մարքս-լենինյան պարտիաների միասնության մեջ։ Բայց ապարդյուն են նրանց փորձերը։ Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածությունը մարքս-լենինյան պարտիաների զարգացման օրենքն է։

Համաշխարհային կոմունիստական շարժումը վճռական հակահարված է տալիս Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարների պառակտիչ, հակալենինյան, նացիոնալիստական գործողություններին։

Գաղափարախոսության բնագավառում պայքարի և անհատի պաշտամունքի հետևանքների հաղթահարման հետ անմիջականորեն կապված է դոգմատիկ, ձախ աղանդավորական ու նացիոնալիստական այն տենդենցների մերկացման անհրաժեշտությունը, որոնք իրենց առավել խտացված դրսևորումը գտան ալբանական ղեկավարների հայացքների մեջ։ Մենք գործ ունենք ոչ թե պարզապես այս կամ այն սխալի կամ մոլորության հետ, այլ մարքս-լենինյան տեսությունն ու քաղաքականությունը խեղաթյուրող հայացքների միանգամայն որոշակի դարձած սիստեմի հետ։ Եթե հետևողական ու վճռական պայքար չմղվի ձախ աղանդավորական օպորտունիզմի դեմ, ապա այն կարող է մեծ վնաս բերել։

Մեր ամբողջ գաղափարական աշխատանքում, պրոպագանդայի ասպարեզում անհրաժեշտ է միշտ հաշվի առնել երկու ճակատով՝ աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ պայքարելու խնդիրները, ակտիվորեն պրոպագանդել XXII համագումարի որոշումներն ու համաշխարհային կոմունիստական շարժման փաստաթղթերը սոցիալիստական երկրների և մարքս-լենինյան պարտիաների միասնությունն ամրապնդելու առաջնահերթ կարևորության մասին՝ որպես յուրաքանչյուր պարտիայի ինտերնացիոնալ բարձրագույն պարտքի։

Մեր երկրի դեմ իրենց գաղափարական դիվերսիաների մեջ իմպերիալիստական պրոպագանդան մեծ ուշադրություն է նվիրում հատկապես երիտասար-

դության շրջանում ապոլիտիկության, գաղափարազրկության, նիհիլիզմի տրամադրությունների մշակմանը։ Մեր հակառակորդները հասկանում են, որ սովետական հասարակության անհաղթահարելի ուժը ժողովրդական ամենալայն մասսաների քաղաքական բարձր ակտիվությունն է։ Ուստի նրանք բոլոր ուժերով փորձում են ապոլիտիկության թունավոր սերմեր ցանել՝ օգտագործելով իրենց գաղափարական ողորմելի բագաժի գլխավոր հաղթաթղթերը՝ միստիկան, եսասիրությունը, հոռետեսությունը, անբարոյականությունը, կյանքի նկատմամբ շվայտ վերաբերմունքը, ձևամոլական արվեստը և այլն։

Դժբախտաբար, թունավոր սերմերը երբեմն ծիլեր են տալիս։

Ոչ մի սովետական մարդ չի կարող առանց ամոթի և զայրույթի լսել այն երիտասարդների մասին, ովքեր, կորցնելով սովետական մարդու արժանապատվությունը, ընկնում են «արտասահմանյան» իրերի ետևից, աշխատելով ձեռք բերել այդպիսիք կամ փոխել դրանք օտարերկրացիների մոտ, այն պատանիների և աղջիկների մասին, որոնք պարծենում են իրենց սանձարձակությամբ, փնչացնող նիհիլիզմով, անիշխանականությամբ, պորտաբուծությամբ։ Մենք չպետք է հաշտվենք այնպիսի մարդկանց հետ, որոնք, սողալով օտարերկրյա ամեն մի դրոշմի առջև, արատավորում են սովետական մարդու բարի անունը։ Թող այրվի հողը անճարակների ու ստահակների ոտքերի տակ, որոնք մոռանում են, թե ո՛ւմ հացն են ուտում իրենք, ինչ հողի վրա են քայլում, թե որքան արյուն ու քրտինք են տվել սովետական մարդիկ այդ հողը հարուստ ու երջանիկ դարձնելու համար։

Մենք պետք է զգալիորեն ուժեղացնենք սովետական մարդկանց հայրենասիրական դաստիարակությունը, աշխատավորների, հատկապես երիտասարդության մեջ մշակենք ազգային բարձր հպարտություն, մեծ ու հզոր Սովետական երկրի քաղաքացու արժանապատվության զգացմունք, երիտասարդներին դաստիարակենք անցյալի ռևոլյուցիոն տրադիցիաներով, ներկայի հերոիկայով, ապագայի իդեալներով։

**Պարտիան կոչ է անում ոչ թե պաշտպանվել, այլ հարձակվել գաղափարական ճակատում:** Մենք պետք է հարձակվենք, վճռականորեն և կազմ ու պատրաստ հարձակվենք մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների վրա, արմատախիլ անենք մեզ համար խորթ գաղափարների ու բարքերի շնչին ռեցիդիվները։ Մենք պետք է հարձակվենք, հարձակվենք լայն ճակատով, բարձր պարզած մարքսիզմ-լենինիզմի դրոշը, մերկացնենք մարդկության թշնամի իմպերիալիզմի էությունը, նրա արյունալի գործերը, նրա նեխած կուլտուրան և գաղափարախոսությունը։ Սովետական Միությունը համաշխարհային կուլտուրայի կենտրոնն է։ Այստեղից է բխում ամենաառաջավոր, ամենապրոգրեսիվ գաղափարախոսության լույսը։

Մեր գաղափարախոսության ուժը վիթխարի է, և այն ընդունում են նույնիսկ կոմունիզմի հակառակորդները։ Բուրժուական ոչ անհայտ տեսաբան Սուլցբերգերը Ն. Ս. Խրուշչովի հետ ունեցած հանդիպման հենց հաջորդ օրը «Նյու-Յորք թայմս» թերթում գրեց. «Ծիծաղելի է ռուսներին նզովել այն բանի համար, որ նրանք համառորեն պրոպագանդում են այն, ինչ իրենք արդարացի են համարում... Մենք առայժմ պես ի վիճակի չենք ոչ որոշելու մեր սեփական գաղափարները, ոչ էլ դրանք հասկանալի դարձնելու նրանց համար, որոնց համակրանքը մենք ուզում ենք շահել»։

Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր պրոպագանդիստ և ագիտատոր, ժու-



նալիստ և նկարիչ, ուսուցիչ և գրող, գիտնական և կոմպոզիտոր, գրադարանավար և արտիստ, յուրաքանչյուր կոմունիստ իրեն զգա և հանդես գա որպես գաղափարական ճակատի ակտիվ մարտիկ։ Յուրաքանչյուր գաղափարական աշխատող պարտավոր է խորապես հասկանալ իր անձնական պատասխանատվությունը մեր երկրում կոմունիստական շինարարության հաջողությունների համար, համաշխարհային ազատագրական շարժման հաջողությունների համար, ամբողջ մարդկության բախտի համար։ Տեղ չպետք է ունենան բարեհոգության, գործի նկատմամբ ձևական, չինովնիկական վերաբերմունքի տրամադրությունները։

Հիմա այնպիսի ժամանակ չէ, այնպիսի իրադրություն չէ, որ կարելի լիներ թուլացնել զգոնությունը, թուլացնել ջանքերը։ Պայքար, անհաշտ պայքար է մղվում իր դարն ապրող, բայց կամովին գերեզման մտնել չցանկացող հին աշխարհի և նոր աշխարհի՝ կոմունիզմի աշխարհի միջև։ Մեծ Լենինը մեզ պատգամել է «հաղթահարել կապիտալիստների ո՛չ միայն ռազմական ու քաղաքական, այլև գաղափարական ամբողջ դիմադրությունը, որն ամենախորն ու ամենազորն է» (Երկեր, հատ. 31, էջ 464)։

Զինված XXII համագումարի նյութերով, պարտիայի նոր Ծրագրով, մենք կարող ենք կատարել և անպայման կկատարենք լենինյան պատգամը։

## V

Մեր պարտիան կուտակել է մասսաների կազմակերպման ու դաստիարակության բազմամյա փորձ, իր ետևում թողել նոր մարդու համար մղված դժվարին ու հերոսական պայքարի տարիներ։ Պարտիան մշակել է մասսաների վրա գաղափարական ազդեցության, նրանց կոմունիստական դաստիարակության կուռ սիստեմ և արդյունավետ միջոցներ։

Սովետական դպրոցը, բարձրագույն կրթության սիստեմը, հասարակական գիտությունը, գրականությունը, արվեստը, կինոն, պրոպագանդան, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կուլտուրայի հիմնարկները և գաղափարական ճակատի մյուս բնագավառները՝ գաղափարական ներգործության հսկայական հնարավորություններ ունեն։ Ապահովել դրանց առավելագույն ակտիվությունը, բարձրացնել դրանց դերը կոմունիստական դաստիարակության գործում՝ ահա պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը։

Ի՞նչ է հարկավոր դրա համար։

Նախ, անհրաժեշտ է ավելի մտածված կերպով կոորդինացնել գաղափարական բոլոր տեսակի զենքերի կրակը, օրավուր կատարելագործել գաղափարական աշխատանքի ձևերն ու մեթոդները, անխոնջ կերպով որոնել, զարգացնել ու պաշտպանել մասսաների վրա գաղափարական ներգործության նոր միջոցները։

Երկրորդ, անհրաժեշտ է դաստիարակչական աշխատանքը կառուցել «ոչ թե առհասարակ» բնակչության մեջ, այլ շերտավորված ձևով, ամեն կերպ զարգացնել մարդկանց հետ աշխատելու անհատական ձևերը, կատարելագործել գաղափարական աշխատանքի նյութա-տեխնիկական բազան ու միջոցները։

Երրորդ, բարձրացնել պարտիայի ստորին օղակների՝ սկզբնական կազմակերպությունների, պարտիայի շրջանային ու քաղաքային կոմիտեների դերը գաղափարական աշխատանքում, շարժման մեջ դնել բառացիորեն յուրա-

քանչյուր գաղափարական «պտուտակ», որոնցից և կազմվում է այն, ինչը մենք անվանում ենք պարտիայի գաղափարական հզոր զենք։

Պարտիայի գաղափարական աշխատանքի հիմքը մասսաների քաղաքական կրթությունն է։

Մեր պարտիայում ստեղծված է և հաջողությամբ գործում է քաղաքական լուսավորության լայն սիստեմ, որը հագեցված է ծրագրերով և ուսումնական ձեռնարկներով, ունի հարյուր հազարավոր տաղանդավոր պրոպագանդիստներ, կուտակել է մեծ փորձ և ունի ստեղծված տրադիցիաներ։ Պարտիական կադրերի քաղաքական կրթության պահանջմունքից առաջացած պարտիական լուսավորությունն այժմ, երբ բանվոր դասակարգի պարտիան դարձել է համաժողովրդական պարտիա, իսկ բանվոր դասակարգի գաղափարախոսությունը՝ ամբողջ ժողովրդի գաղափարախոսություն, վերածվել է աշխատավորների միլիոնավոր մասսաների քաղաքական կրթության:

Իր որոշումների մեջ պարտիան սահմանել է քաղաքական լուսավորության սիստեմի հետագա բարելավման հիմնական ուղիները։ Այստեղ գլխավորն այն է, որ այսուհետև ևս կիրառվի կյանքի հետ քաղաքական ուսուցման կապն ամրապնդելու, քաղաքական կրթության շրջանակներն ընդլայնելու և նրա ներգործունությունը բարձրացնելու, ուսուցման ստեղծագործական, ինքնուրույն և, առաջին հերթին, սեմինարային ձևերը զարգացնելու հաստատուն կուրս։

Պարտիան նշում է, որ պրոպագանդայի մակարդակի բարձրացման գործում վճռականը պրոպագանդիստների որակավորումն է, նրանց հմտությունը, գիտելիքները։

Ոմանք պնդում են, թե այժմ չեն բավականացնում որակյալ պրոպագանդիստները։ Գուցե և այդպիսի գանգատների մեջ ճշմարտության հատիկ կա։ Սակայն պետք է ընդգծել, որ մենք ծայրահեղորեն անբավարար ենք օգտագործում մեր հնարավորությունները, վատ ենք պատրաստում պրոպագանդիստական կադրերի ռեզերվը։ Պարտիայի Կենտկոմը հատուկ որոշմամբ սահմանել է պրոպագանդիստների պատրաստման և նրանց որակավորման բարձրացման կարգը։ Մենք պետք է շատ և համառ աշխատանք կատարենք քաղաքական լուսավորության սիստեմի յուրաքանչյուր խմբակ ու սեմինար ապահովելու փորձված, իրենց վեհ միսիայի համար բազմակողմանիորեն նախապատրաստված կադրերով։

Մեր պրոպագանդիստական աշխատանքը իր բոլոր ձևերով հենվում է հասարակայնության ուժի վրա։ Երկրի գաղափարական կյանքում հասարակայնության դերի բարձրացման օրինակներից մեկը Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման համամիութենական ընկերության գործունեությունն է։ Առաջանալով որպես մասսայականացնող գիտնականների համեմատաբար նեղ միավորում, Ընկերությունը ներկայումս դարձել է սովետական առաջավոր ինտելիգենցիայի մասսայական կազմակերպություն։ Ընկերությունը մեծ, բայց դեռ լրիվ չօգտագործված հնարավորություններ ունի։ Գիտնականների, ինտելիգենցիայի, արտադրության առաջավորների զգալի խավեր չեն ներգրավված Ընկերության կազմակերպությունների աշխատանքի մեջ։ Շատ տեղերում դեռևս լուծված չէ հետևյալ խնդիրը՝ յուրաքանչյուր կոլեկտիվում ամսական կարդալ առնվազն մեկ դասախոսություն։

Պարտիայի XXII համագումարից հետո անցած ժամանակաշրջանում զգալիորեն ուժեղացավ, ավելի բարձր մակարդակի հասավ, ավելի նպատակասլաց



ու ներգործուն դարձավ ագիտացիոն-մասսայական աշխատանքը: Այդ աշխատանքի ճակատը, անշուշտ, ավելի է ընդլայնվել, ընդգրկել է նորանոր միլիոնավոր սովետական մարդկանց։ Երևան են եկել ու զարգացել մասսայական-քաղաքական աշխատանքի բացառիկ բազմազան և ճկուն ձևեր, որոնք հմտորեն օգտագործում են ռադիոն, հեռուստատեսությունը և ժամանակակից տեխնիկայի մյուս նվաճումները։

Իսկ ամենագլխավորը՝ աճել են ագիտացիայի արդյունավետությունը, նրա դրական ազդեցությունը գործարանների ու ֆաբրիկաների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատանքի բարելավման վրա, սովետական մարդկանց կոմունիստական գիտակցականության աճի վրա։ Բայց ագիտացիոն-մասսայական աշխատանքում դեռևս շատ է ձևամոլությունը, դեռևս չեն կարողանում գործը կատարել սրտանց, շատ է կաշկանդվածություն և քարացածությունը։

Մեծ հնարավորություններ ունեն կուլտուր-լուսավորական հիմնարկները, որոնք, դժբախտաբար, լրիվ չափով չեն օգտագործվում բնակչության բոլոր խավերի մեջ դաստիարակչական աշխատանք կատարելու համար. դրանք են՝ գրադարանները, ակումբները, կուլտուրայի տները, կուլտուրայի համալսարանները, թանգարանները և այլն։ Դրանցից շատերը իրոք աշխատում են ոգևորությամբ, ստեղծագործաբար, նրանց շուրջը եռում է գեղարվեստական ինքնագործունեությունը, մարդիկ հաղորդակից են լինում գեղարվեստական արժեքներին, բարձրացնում են իրենց կուլտուրական մակարդակը։ Սակայն շատերը աշխատանքը կատարում են կյանքից կտրված, կենդանի, գաղափարապես հագեցված աշխատանքը հաճախ փոխարինվում է հիմար զվարճայնությամբ և կուլտուրարարությամբ՝ բառիս վատ իմաստով։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն խնդիր է առաջադրել՝ կուլտուր-լուսավորական հիմնարկները դարձնել պարտիական կազմակերպությունների հենարանը մասսայական-քաղաքական աշխատանքի ասպարեզում: Հարկավոր է կուլտուր-լուսավորական հիմնարկներից վճռականորեն վանդել ռուտինայի ոգին. հարկավոր է նրանց աշխատանքը կառուցել հասարակայնությանը, ամբողջ բնակչությանը լայնորեն ներգրավելու հիման վրա, քանի որ նրանք հենց իրենց բնույթով ինքնագործ հիմնարկներ են։



XXII համագումարի որոշումներում, պարտիայի Ծրագրում սահմանված են մամուլի գործունեության կարևորագույն ուղղությունները։ Մեր մամուլը, շարունակելով ու զարգացնելով լենինյան տրադիցիաները, հենվում է ընթերցողների ձայնի, նրանց նամակների վրա, նա ձգտում է իր յուրաքանչյուր տողով պատասխան տալ իր ընթերցողների իսկական խոհերին, իղձերին, հույսերին։ Մի՞թե բավական պերճախոս չէ այն փաստը, երբ միայն կենտրոնական թերթերը միմիայն 1961 թվականին ստացել են ավելի քան մեկ միլիոն նամակ։

Քսաներորդ համագումարից հետո մամուլի զարգացման բնորոշ գիծը բանվորական ու գյուղական թղթակիցների վրա հենվելու լենինյան հրաշալի սկզբունքների հաղթանակն է։ Սովետական մամուլի ոչ միայն պրոֆեսիոնալ աշխատողները, ոչ միայն ժուռնալիստներն ու հրապարակախոսները, այլև բոլոր հինգ միլիոն բանգյուղթղթակիցները նույնպես իրավունք ունեն իրենց համարելու մեր պարտիայի հանձնակատարները։ Հենց նրանք պետք է կազմեն հիմ-

քերի հիմքը, այն սնուցիչ միջավայրը, առանց որի սովետական մամուլը չի կատարի իր միսիան։

Սովետական մամուլի խնդիրները պարզ են՝ ամբողջ ուժով, իր ամբողջ տաղանդով, հմտությամբ, պարտիական կրքոտությամբ ժողովրդի հետ միասին պայքարել կոմունիստական շինարարության Ծրագրի կենսագործման համար։ Եվ այս ամենը պետք է անել տաղանդով, կրքոտությամբ, համարձակորեն, վառ կերպով, մեծ հմտությամբ, խանդավառությամբ։

Բովանդակությունը և ուղղությունը գլխավորն է յուրաքանչյուր տպագիր օրգանի համար։ Խոշոր ու կարևոր թեմաների առաջադրման և մշակման խորության բացակայությունը ոչնչով չես կարող քողարկել՝ ո՛չ գեղեցկությամբ, ո՛չ պայծառությամբ։ Դատարկությունը մնում է դատարկություն։

Հարկ չկա օրինակներ բերել, այդպիսիք ուզածին չափ կարելի է գտնել։ Զանազան թերթերում ու ժուռնալներում կան հաջող նյութեր, կան և նվազ հաջող, իսկ երբեմն էլ պարզապես անհաջող նյութեր։ Ուշադրություն հրավիրենք մի այլ բանի՝ երևույթներն ու փաստերն ընդհանրացնելու և վերլուծելու կարողության վրա։

Հայտնի է, թե պարտիան որքան վճռականորեն ու խստորեն և՛ Կենտրոնական Կոմիտեի պլենումներում, և՛ իր նամակներում, և՛ պետական պրակտիկայում դրեց աչքակապների հարցը։ Արդյոք այդ մասին մամուլում ահազանգներ կայի՞ն։ Այո՛, կային, ժամանակ առ ժամանակ երևում էին թղթակցություններ, որոշ դեպքերում դրանք բավական սուր էին։ Բայց մամուլի աշխատողները, այդ թվում և մեր առաջատար հասարակական-քաղաքական ու տեսական ժուռնալները չբարձրացան այն մակարդակին, որ վերլուծեին, բացահայտեին աչքակապության սոցիալ-քաղաքական վնասակարությունը։ Ոչ ոք չի կարող ասել, թե սովետական մամուլը ուժ, կարողություն կամ հնարավորություն չունի այդպիսի խորության և այդպիսի լրջության հարց դնելու համար։ Բանը նրանումն է, որ թեմաների մանրացումը, մանրուքներ փորփրելը մամուլի որոշ օրգանների խանգարում են ավելի բարձր մակարդակի հասնելուն, ավելի լայն և ավելի հեռուն նայելուն։

Մեր ժուռնալների, թերթերի, հրատարակչությունների համար իսկական քաղաքական քննություն է պարտիայի XXII համագումարի որոշումների, նրա նոր Ծրագրի պրոպագանդան։ Պահանջվում են նոր ձևեր, կուտակվածի հմուտ ընտրություն և դրա լրացում այն ամենով, ինչ առաջ կքաշի կյանքը։ Ոչ թե տիրացուականություն, ոչ թե կամպանիականություն, այլ մտածված, ամենօրյա անդուլ աշխատանք՝ տարիներ շարունակ,— ահա թե ինչով պետք է մենք առաջնորդվենք XXII համագումարի որոշումների պրոպագանդան կազմակերպելիս։

Ժուռնալիստիկայի և հրապարակախոսության բոլոր լավագույն ուժերը՝ ամեն ինչ պետք է մոբիլիզացվի։

Սովետական մամուլի գործունեության մեջ նոր մարդու դաստիարակության հարցերը պետք է առանձնահատուկ տեղ գրավեն։ Մարդու նկատմամբ, նրա աշխարհայացքի, նրա բարոյական ու քաղաքական հայացքների ձևավորման նկատմամբ ուշադրությունը մի գործ է, որը սովետական մամուլը իրավունք չունի ոչ մի վայրկյան դուրս թողնել իր տեսադաշտից։ Իսկ դրանք շատ սուր և բարդ հարցեր են։ Մի պայթյունով, մի պոռթկումով չես կարող ոչնչացնել այն, ինչ հին աշխարհը նետել է և շարունակում է նետել մեր ոտքերի առաջ։



Սովետական մամուլի աշխատողների մեծ բանակը պետք է մշտապես գտնվի ստեղծագործական խանդավառության վիճակում, աշխատի այնպես, որ թերթի, ժուռնալի յուրաքանչյուր համար, յուրաքանչյուր ռադիոհաղորդում, հեռուստատեսային հաղորդում սովետական ժողովրդին պայքարի կոչեն հանուն կոմունիզմի գաղափարների հաղթանակի։

Ժողովրդի քաղաքական, կուլտուրական, գեղագիտական դաստիարակության համար մեծ, դեռևս լրիվ չափով չօգտագործվող հնարավորություններ ունեն ռադիոն ու հեռուստատեսությունը։ Այստեղ դեռ կան շատ թերություններ, ոչ ճկունություն, քիչ են աշխատանքի նոր ձևերի որոնումները։ Լսարանի չափերի տեսակետից ոչինչ չի կարող համեմատվել ռադիոյի և հեռուստատեսության հետ։ Իսկ որքա՜ն բարձր պետք է լինեն ռադիոյի և հեռուստատեսության ծրագրերին ներկայացվող պահանջները։

Իսկ ինչպիսի՞ն է գրահրատարակչական գործը երկրում։

Մեզ մոտ ամեն տարի գիտությունների տարբեր ճյուղերի վերաբերյալ մի քանի տասնյակ հազար գրքեր են լույս ընծայվում ավելի քան մեկ միլիարդ տիրաժով։ Ուստի և լույս տեսնող գրականության բովանդակության հարցը մշտապես պետք է գտնվի պարտիական կազմակերպությունների տեսադաշտում։ Սովետական ընթերցողները իրավացիորեն լուրջ պահանջներ են ներկայացնում գրքերի բովանդակության առթիվ։

Շատ հրատարակչությունների աշխատանքի վրա իրենց կնիքն են թողել վախը նորի հանդեպ, սովորական սխեմաների նկատմամբ ունեցած ընտելությունը։ Կյանքը երկրում առաջ է գնում, պարտիան, հիրավի, ռևոլյուցիոն քայլեր է ձեռնարկում էկոնոմիկայի և կուլտուրայի ասպարեզում։ Միայն մի քանի հրատարակիչներ շարունակում են բավարարվել գորշ, տաղտկալի գրքերով, դժվարությամբ համաձայնում են փոխել գրքերի հրատարակման պլանավորելու մեթոդները։

Ոչնչով չի կարելի բացատրել այն, որ Արտասահմանյան գրականության հրատարակչությունը տարվել է արտասահմանյան բուրժուական հեղինակների երրորդական ստեղծագործությունների վերահրատարակմամբ։

Իսկ որքա՜ն խոշոր սխալներ են թույլ տրվում, օրինակ, գյուղատնտեսությանը նվիրված գրքերում։ Գյուղատնտեսական հրատարակչությունների աշխատողները քիչ ջանքեր չեն գործադրել տխրահռչակ խոտադաշտային սիստեմի պրոպագանդման գործում, թեև դեռ 1954—1955 թվականներին պարտիայի Կենտկոմը ցույց տվեց հողագործության խոտադաշտային սիստեմի թերությունները։ Խոտադաշտային սիստեմը գովաբանող գրքերը բառացիորեն հեղեղել էին գրքի շուկան։ Մինչդեռ Դ. Ն. Պրյանիշնիկովի ուսմունքի և նրա հիմնավորած՝ հողագործության առաջադիմական շարահերկ սիստեմի մասին վերջին երեք տարում լույս է ընծայված ընդամենը մեկ գիրք։

Մեզ մոտ իսկական չարիք են դարձել ժուռնալների և գրքերի լույս ընծայման ժամկետների վիժեցումը։ Գրքերի և հոդվածների ձեռագրերը երբեմն տպագրության են պատրաստվում ամիսներ, հաճախ էլ տարիներ շարունակ։ Գրքերի հրատարակության գործում դանդաղկոտությունն ու ծանրաշարժությունը անհանդուրժելի և անեկդոտային բնույթ են ստացել։ Երբեմն ամեն ինչ բարդում են պոլիգրաֆիական բազայի վրա։ Իհարկե, ճիշտ է, որ մեր պոլիգրաֆիական բազան այնքան էլ լավը չէ։

Իսկ չէ՞ որ հարյուր տարի առաջ նա ավելի լավ չի եղել, բայց գրքերը հաճախ ավելի արագ էին լույս տեսնում։

Հայտնի է, որ առաջին տպագրիչ Իվան Ֆյոդորովի ժամանակներից անցած չորս հարյուրամյակում պոլիգրաֆիայի տեխնիկան շատ առաջ է գնացել։ Բայց, որքան էլ տարօրինակ է, արտադրության մեջ գրքի ճանապարհը չի կարճացել։ «Մարգարե» առաջին տպագիր գիրքը Իվան Ֆյոդորովը շարեց և տպագրեց տասը և կես ամսում։ Իսկ մեր ժամանակներում բաժանորդագրական հրատարակությունների հերթական հատորները լույս են տեսնում մոտավորապես նույնքան և նույնիսկ ավելի մեծ ժամանակում։

Մինչդեռ ժամանակակից տեխնիկան թույլ է տալիս 15 մամուլանոց գիրքը լույս ընծայել մոտավորապես 12 օրում։ Բանն ինչո՞ւմն է։ Պարզվում է, որ ժամանակի միայն 15 տոկոսն է ծախսվում շարելու, տպագրելու և կազմելու վրա, իսկ 85 տոկոսը վատնվում է հեղինակային ու խմբագրական ուղղումների վրա, տեխնոլոգիական պրոցեսի առանձին գործողությունների ընդմիջումների վրա։

Ինչպես տեսնում ենք, դեռևս շատ անհեթեթություններ կան գրահրատարակչական գործում, և անհրաժեշտ են լուրջ ջանքեր դրությունը շտկելու և գրահրատարակությունը մեր երկրի կուլտուրական շինարարության առաջավոր ճյուղը դարձնելու համար։



Կոմունիստական շինարարության պայմաններում անչափ աճում է գրականության և արվեստի դերը կոմունիստական աշխարհայացքի և բարոյականության ձևավորման գործում։ XX համագումարից հետո անցած ժամանակաշրջանը մեր գրականության և արվեստի համար կոմունիստական պարտիականության և ժողովրդայնության սկզբունքային հիմքի վրա ստեղծագործական բոլոր ուժերը մոբիլիզացնելու և համախմբելու ժամանակաշրջան էր։

Անհատի պաշտամունքի հետևանքների դեմ պարտիայի պայքարը բարեբար, հիրավի ոգեշնչող ազդեցություն ունեցավ գրականության և արվեստի զարգացման վրա։ Երևան եկան ոչ քիչ թվով լավ ստեղծագործություններ, որոնք ճշմարտացիորեն ու գեղարվեստորեն պատկերում են սոցիալիստական իրականության հարստությունն ու բազմազանությունը։ Մեր շատ գրողներ ու նկարիչներ պարտիական կրքոտությամբ են դիմում մեր ժամանակի հուզող պրոբլեմներին։

Ուրախալի է նշել, որ վերջին տարիներս ուժեղացել է տաղանդավոր ստեղծագործական երիտասարդության աճը։

Սովետական գրականությունն ու արվեստը պատկանում են ժողովրդին։ Նրանց պատմական միսիան է՝ հարթել համաշխարհային կուլտուրայի մայրուղին, արժանի ավանդ ներդնել ապագայի կուլտուրայի հիմքում։ Թեև մենք հաճախ խիստ, սուր կերպով քննադատում ենք մեր գեղարվեստական ինտելիգենցիայի անհաջողությունները, բայց չենք կարող մոռանալ, որ մեր բազմազգ գրականությունն ու արվեստը ամբողջությամբ վերցրած արժանի են Սովետական Միության ժողովուրդներին։

Ոչ մի ազնիվ մարդ չի կարող ժխտել, որ սովետական գրականության և արվեստի լավագույն ստեղծագործությունները ուրախալի իրադարձություն են



դառնում ոչ միայն մեր երկրի, այլև նրա սահմաններից հեռու միլիոնավոր մարդկանց կուլտուրական կյանքում։

Մենք իրավունք ունենք հպարտանալու ոչ միայն մեր էկոնոմիկայի հաջողություններով, գիտության ու տեխնիկայի ծաղկմամբ, այլև կուլտուրայի վերելքով. ոչ միայն ինդուստրիայի մեր հսկաներով և տիեզերանավերով, այլև մեր լավագույն վեպերով, սիմֆոնիաներով, գեղանկարներով, քանդակային ստեղծագործություններով, կինոֆիլմերով։

Դրանց հետ համեմատելու համար ի՞նչ կարող է առաջ քաշել ամբողջ ռեակցիոն բուրժուական կուլտուրան՝ միասին վերցրած։

XXII համագումարը բարձր գնահատեց գրականության և արվեստի նվաճումները, դրանք բնութագրելով որպես կարևոր էտապ մարդկության գեղարվեստական զարգացման մեջ։ Բայց սոցիալիստական իրականությունը շատ ավելի հարուստ է, քան այն մարմնավորված է որոշ գրողների ու նկարիչների, կինոաշխատողների և արվեստի այլ գործիչների ստեղծագործություններում։ Հոգևոր այն արժեքները, որոնք մենք սպասում ենք գրականության և արվեստի գործիչներից այսօր և ապագայում, պետք է համապատասխանեն ՍՄԿՊ Ծրագրի բարձր պահանջներին։ Ժողովրդին հարկավոր են այնպիսի գեղարվեստական գործեր, որոնք, ինչպես ասել է Ն. Ս. Խրուշչովը, միլիոնավոր սովետական մարդկանց համար բարի և խելացի խորհրդատուներ լինեն նրանց ամբողջ կյանքում, լինեն կոմունիստական աշխարհայացքի, կոմունիստական բարոյականության մշակման լուրջ գործոններ։

Գրականությունն ու արվեստը կոչված են կոմունիստական դաստիարակության խնդիրը լուծելու իրենց յուրահատուկ միջոցներով, մարդուն գրավելով գեղարվեստական կերպարների ճշմարտությամբ ու գեղեցկությամբ, արթնացնելով ոչ միայն ավելի լավ ապրելու, այլև ավելի լավ լինելու ցանկություն։ Մեր արվեստը ձգտում է խորաթափանց կերպով արտացոլել հասարակ մարդու՝ աշխարհի վրա բոլոր նյութական ու հոգևոր արժեքները կերտողի հոգևոր հարստությունն ու բարոյական գեղեցկությունը։ Ափսոս միայն, որ այդ մարդը երբեմն պատկերվում է սովորական ու պրիմիտիվ կերպով, չի բացահայտվում նրա խոհերի խիզախ վեհությունը, բարոյական ձգտումների վսեմ գեղեցկությունը։

Ինչո՞ւ, օրինակ, վերջին ժամանակներս երբեմն որպես հերոս հանդես է գալիս նվազ անհատը՝ սահմանափակ, քաղքենիական մտահորիզոնով։

Ինչո՞ւ որոշ երիտասարդ գրողներ ձգտում ունեն դեպի բուլվարային թեմատիկան, դեպի այն սյուժեները, որոնք ցինիկ վերաբերմունքով են ներթափանցված կնոջ, սիրո, գեղեցկի ու վեհի նկատմամբ։ Գեղանկարչության մեջ երբեմն արմատավորվում է մարդկանց կերպարների միտումնավոր կոպիտ պատկերումը, կոմպոզիցիայի թերավարտությունն ու անփութությունը, նկատվում են բուրժուա-մոդեռնիստական տենդենցների ռեցիդիվներ։ Երաժշտության մեջ թույլ է տրվում ֆորմալիստական սեթևեթանք, որը խանգարում է գեղագիտական ճիշտ ճաշակ դաստիարակելուն։

Ընդգծելով գրականության և արվեստի դաստիարակչական մեծ դերը, հարկավոր է հատկապես ասել երիտասարդության վերաբերյալ որոշ գործերի ոչ ճիշտ տենդենցների մասին։

Մամուլում սուր քննադատության ենթարկվեցին օրինակ Վ. Ակսյոնովի «Աստղային տոմսը» վեպը և Վ. Ռոզովի «Ա, Բ, Գ, Դ, Ե...» սցենարը։

Ինչի՞ համար են քննադատվում այդ ստեղծագործությունները։

Դրանք քննադատության են ենթարկվում բոլորովին ոչ սուր ու համարձակ լինելու համար, այլ այն բանի համար, որ իրականության սուր, իսկ երբեմն էլ հիվանդագին հարցերը դրանցում բերվում են միակողմանիորեն, ոչ խոր կերպով և ըստ էության սխալ։ Օրինակ, Վ. Ակսյոնովի վեպի երիտասարդները չեն գտել իրենց տեղը կյանքում։ Նրանք կոկետություն են անում էժան սկեպտիցիզմով և իրենց մտքերն արտահայտում են այլանդակ ժարգոնով։ Ցանկացե՞լ է, արդյոք, հեղինակը թե ոչ, սուբյեկտիվորեն ավելի շատ չի ցանկացել, բայց նրա հերոսները օժտված են հեղինակի լիակատար համակրանքով։ Իսկ կյանքի իսկական հերոսները ցույց են տրված որպես գորշ, անհետաքրքիր, հոգևոր և մտավոր տեսակետից աղքատ, հիմարացված մարդիկ։

Վ. Ռոզովը ավելի հեռուն է գնացել։ Նրա երիտասարդ հերոսը ուղղակի հիստերիկ ջղաձգությամբ է լսում ամեն մի հիշատակություն այն մասին, որ նա պետք է ինչ-որ բան անի, պահպանի մարդկային համակեցության տարրական նորմաները։ Եվ նա պատկերված է մի տեսակ որպես միջավայրի զոհ, նահատակ։ Իսկ նրան շրջապատող բոլոր անձինք՝ բութ ու սահմանափակ մարդիկ են, որոնք անընդունակ են ոչ միայն օգնելու, այլև նույնիսկ հասկանալու այդ տառապող և վրդովվող երիտասարդ ինդիվիդուալիստին։

Վ. Ակսյոնովի և Վ. Ռոզովի կողմից նկարագրվող երիտասարդների բնորոշ գիծը սկեպտիցիզմն է։ Հեղինակները պսակազերծ չեն անում այդ, այլ համակրանքով են վերաբերվում այդ բանին։ Բայց չէ՞ որ դա այն սկեպտիցիզմն է, որը ամեն ինչ աշխարհում կասկածի տակ է դնում։ Սոսկ բացասման համար գիտությունը, բանականությունը, արվեստը բացասող սկեպտիկների մասին մի ժամանակ շատ լավ է ասել Վ. Գ. Բելինսկին։ «Միայն մանր մտքերը,— ասել է մեծ քննադատը,— չնչին հոգիներն են պճնվում սկեպտիցիզմով, որպես նորաձև զգեստով, պարծենում են դրանով՝ որպես ծառայությամբ։ Միայն... դատարկ ամբոխի ձեռնածուներն ու խեղկատակները, միայն նրանք են ամեն ինչում հեշտությամբ և ուրախությամբ կասկածում՝ զվարճանալով, բայց ոչ տառապելով... Եվ ի՞նչ ծառայություն է դա՝ ամեն ինչի վրա ծիծաղել և ամեն ինչ հայհոյել՝ թե՛ գիտությունը, թե՛ բանականությունը, թե՛ արվեստը» (Երկեր, հատ. 6, էջ 334, ռուս.)։

Այդպիսիք են նաև ներկայիս «ձեռնածուներն ու խեղկատակները». չէ՞ որ նրանք նույնպես զվարճանում են։ Իսկ դա կրկնակի վիրավորական է, որովհետև նման բաներ թույլ տվող գրողները երբեմն տաղանդավոր մարդիկ են, որոնք ընդունակ են ստեղծելու ժողովրդին անհրաժեշտ լավ գործեր։

Գրականության և արվեստի մեջ դեռևս քիչ են մեր ժամանակակիցների կամային, ուժեղ, հերոսական բնավորությունները, որոնք ընդունակ լինեն իրենց օրինակով ոգևորել երիտասարդությանը, նրա համար ծառայել կյանքի վարքագծի փարոսներ։ Իրականությունը տալիս է սովետական մարդկանց աշխատանքային հերոսության այնքան օրինակներ, ցույց է տալիս նրանց գաղափարական ու բարոյական այնպիսի բարձրություն, որ այստեղ հարկ չկա որևէ բան հատկապես «գունազարդել», «դրստել», հարկավոր է միայն այդ բանը աչալուրջ կերպով տեսնել գեղարվեստագետի աչքերով։ XXII համագումարին պարտիայի Կենտկոմի տված հաշվետվության մեջ հատկապես նշվում է, որ «արվեստը կոչված է մարդկանց դաստիարակելու առաջին հերթին կյանքի դրական օրինակների հիման վրա, մարդկանց դաստիարակելու կոմունիզմի ոգով»։



Հենց այս կողմը պետք է ուղղվեն գրականության և արվեստի գլխավոր ուժերը։ Հսկայական հնարավորություններ ունի նաև մեր երգիծանքը։ Ն. Ս. Խրուշչովի կոչը պետք է լսեն մեր երգիծաբան գրողները։

Սոցիալիստական ռեալիզմի արվեստը լայն ասպարեզ է բացում ստեղծագործական նախաձեռնության, բարձր վարպետության, գեղարվեստական ձևերի, ոճերի ու ժանրերի բազմազանության համար։ Սակայն նորարարական որոնումները ձևամոլական տրյուկարարություն չեն, որը միշտ քաղքենիական հավակնոտ անճաշակության դրսևորումն է եղել։

Մեր խնդիրն է ոչ թե դեն նետել, այլ ստեղծագործաբար յուրացնել և զարգացնել մեծ վարպետների տրադիցիաները։

Վերջին ժամանակներս որոշ պարտիական կազմակերպություններ թուլացրել են ստեղծագործական ինտելիգենցիայի մեջ կատարվող դաստիարակչական աշխատանքը այն պատրվակով, թե գեղարվեստական ստեղծագործությունը չափազանց նուրբ ու բարդ գործ է, իսկ իրենք՝ գեղարվեստագետները չափազանց բծախնդիր մարդիկ են։

Երբեմն վկայակոչում են Վ. Ի. Լենինի խոսքերը, որոնք նա ասել է Կլարա Ցետկինի հետ ունեցած զրույցի ժամանակ, այն մասին, որ գեղարվեստագետը պետք է ստեղծագործի ազատորեն, իր իդեալի համաձայն։ Ճիշտ է, Վ. Ի. Լենինը այդպես ասել է, բայց այդ իդեալը պետք է համընկնի այն իդեալին, որի համար պայքարում է ժողովուրդը։ Վ. Ի. Լենինը ասել է, որ մենք՝ կոմունիստներս չենք կարող ձեռքներս ծալած կանգնել և թույլ տալ, որ զարգանա քաոսը։

Պարտիական ղեկավարությունը ամենից առաջ գաղափարական ղեկավարություն է։ Համոզման, պարզաբանման, ընկերական հաղորդակցման մեթոդը պարտիական ազդեցության հիմնական մեթոդն է։ Մենք չենք կարող ձեռքներս ծալած կանգնել, այլ պարտավոր ենք ակտիվորեն պայքարել մեր աշխարհայացքի անաղարտության համար նաև գրականության ու արվեստի բնագավառում, պայքարել մեր մեծ ռեալիստական տրադիցիաների համար, զարգացնել և ամրապնդել դրանք։

Գեղարվեստական ինտելիգենցիայի նկատմամբ լենինյան վերաբերմունքի հիանալի օրինակ են տալիս Կենտրոնական Կոմիտեն, Ն. Ս. Խրուշչովը։ Թերությունների սուր քննադատությունը, սխալ և խորթ տենդենցների նկատմամբ անհաշտությունը արվեստի հարցերի վերաբերյալ նրա բոլոր ելույթներում օրգանապես զուգորդվում են յուրաքանչյուր սովետական գեղարվեստագետի բախտի նկատմամբ հոգատարությամբ, սխալներ ու մոլորություններ թույլ տվածներին ճիշտ ճանապարհ դուրս գալու գործում օգնելու ցանկության հետ։ Չէ՞ որ հաճախ երիտասարդների սխալները թեթևամտության, կյանքի վատ, մակերեսային ճանաչողության հետևանքն են, որի մասին նրանք հաճախ սկըսում են դատողություններ անել ավելորդ ինքնավստահությամբ։

Եվ հարկավոր է ոչ միայն նրանց սուր քննադատել, այլև օգնել նրանց՝ ավելի լայնորեն նայելու կյանքին, գրավելու գաղափարական, ստեղծագործական ճիշտ դիրքեր։

Գրականության և արվեստի զարգացման մեջ մեծ դեր պետք է խաղա քննադատությունը։ Վերջին ժամանակներս նկատելի աշխուժացում տեղի ունեցավ մեր քննադատների աշխատանքում, որոնք ոչ քիչ թվով հետաքրքրական գրքեր ու մարտական հոդվածներ ստեղծեցին։ Բայց քննադատությունը միշտ

չէ, որ սկզբունքային է։ Երբեմն նա գնդակոծության տակ է առնում այն գրողներին, որոնք ամբողջ հոգին, իրենց ամբողջ կարողությունը նվիրում են մեր կյանքի գեղարվեստական մարմնավորմանը, և երկինք են հանում սառը սիրտ ունեցող, ժողովրդի պայքարից, նրա խոհերից ու զգացմունքներից հեռու կանգնած հեղինակներին։

Մեր գեղարվեստական քննադատությունը հաճախ ճղճղան բնույթ է կրում, մոդեռնիզմի, ֆորմալիզմի կողմնակիցների շուրջը ստեղծում է «նահատակության» և անարժան ժողովրդականության լուսապսակ։ Մենք պետք է գործն այնպես կազմակերպենք, որ գեղարվեստական գործերը գնահատելիս հնչի լայն հասարակայնության ձայնը, ժողովրդի ձայնը, որը սոցիալիստական հասարակության հոգևոր արժեքների իսկական կերտողն ու ամենահեղինակավոր գնահատողն է։

Հարկավոր է մամուլում, ռադիոյում, հեռուստատեսության ասպարեզում, դիսպուտներում ու կոնֆերանսներում բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի առջև լայն ճանապարհ բացել գեղարվեստական ստեղծագործությունների հրապարակային գնահատման համար։ Աշխատավորներն իրենց առողջ ճաշակով կկարողանան օբյեկտիվորեն գնահատել նոր վեպի, վիպակի, ներկայացման, երգի, ֆիլմի, ռադիոհաղորդման, քանդակի արժանիքներն ու թերությունները։ Որպես կանոն, նրանք դիպուկ կերպով մերկացնում են գռեհկությունն ու խալտուրան, մեր հասարակությանն ու մեր բարոյականությանը խորթ ամեն երևույթ։ Այդ դեպքում մեր լավագույն քննադատների ելույթները նույնպես ավելի ակտիվորեն կազդեն գրականության և արվեստի զարգացման վրա, կդառնան ավելի սկզբունքային, խոր և օբյեկտիվ, քանի որ կհենվեն սովետական լայն հասարակայնության կարծիքի վրա։

Անհրաժեշտ է հատկապես խոսել գրականության և արվեստի մեջ Վ. Ի. Լենինի կերպարի մասին։

Վլադիմիր Իլյիչ Լենինի մահից անցել է արդեն մի քանի տասնամյակ, բայց մինչև օրս գրականության և արվեստի մեջ շատ քիչ բան է արված, որպեսզի Վ. Ի. Լենինի կյանքը նոր սերունդների համար բացահայտվի գեղարվեստական կերպարների մեջ։ Վլ. Մայակովսկու, Բ. Շչուկինի, Ն. Պոգոդինի ստեղծագործության մեջ մենք տեսնում ենք համոզիչ ապացույցն այն բանի, որ Վլադիմիր Իլյիչ Լենինի կերպարը կարող է դառնալ սովետական արվեստի ամենագրավիչ, վառ և, որ գլխավորն է, բովանդակալից կերպարը։

Բայց առայժմ աններելիորեն քիչ բան է արված։ Գեղարվեստական արձակի ասպարեզում մինչև օրս չկա Վլադիմիր Իլյիչ Լենինի կյանքին ու գործունեությանը նվիրված ոչ մի, քիչ թե շատ նշանակալի, ստեղծագործություն։

Այնքան էլ շատ ժամանակ չի մնացել, երբ համայն առաջադեմ մարդկությունը կտոնի Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան հարյուրամյակը։ Դիմենք, ուրեմն, գրողներին և բանաստեղծներին, դրամատուրգներին և սցենարիստներին, նկարիչներին և արտիստներին, կոչ անելով՝ ստեղծեցե՛ք արժանի ստեղծագործություններ Իլյիչի մասին, թող վաթսունական թվականները գրականության և արվեստի մեջ նշանավորվեն անմահ մարդու և նրա անմահ գործերի վերաբերյալ նշանակալի երկերի ստեղծումով ու թող մեր առաջնորդի և ուսուցչի կերպարը շողա գրքերի էջերից, թատրոնների բեմահարթակներից, կինոների էկրաններից, գեղանկարիչների կտավներից։



***

Այն բանից հետո, երբ XXII համագումարը հստակորեն որոշել է գաղափարական գործունեության նպատակներն ու ուղղությունները, նրա հաջողությունը կախված է կազմակերպչական աշխատանքի մակարդակից ու թափից, նրա կուլտուրայից։

Կարելի է ճիշտ որոշել խնդիրներն ու նպատակները, կարելի է տալ ճիշտ լոզունգ, բայց եթե դրանց կենսագործման համար չգտնվեն կոնկրետ կազմակերպչական աշխատանքով ամրապնդված համապատասխան ձևեր ու մեթոդներ, ապա թե՛ խնդիրները, թե՛ նպատակները, թե՛ լոզունգները չեն ստանա պատշաճ ուժ և կմնան իբրև բարի ցանկություններ։ Ուստի լավ կազմակերպված, հմուտ հիմքերի վրա դրված կազմակերպչական աշխատանք գաղափարախոսության բոլոր օղակներում, կազմակերպում ո՛չ հանուն կազմակերպման, այլ հանուն կոմունիստական գաղափարախոսության ներգործության ուժեղացման՝ ահա թե ինչ է այժմ մեզ հարկավոր պարտիայի XXII համագումարի որոշումները կենսագործելու համար։

Կազմակերպչական աշխատանքի մեթոդների կատարելագործումը այն գլխավոր օղակն է, որից մենք պետք է բռնենք և առաջ մղենք գաղափարական աշխատանքը։

Պարտիան մեզ ուսուցանում է չհակադրել կազմակերպչական ու գաղափարական աշխատանքը, այլ հմտորեն զուգակցել դրանք, ենթարկել մեր պարտիայի, ամբողջ սովետական ժողովրդի առջև կանգնած մեծ խնդիրների կատարմանը։ Մենք չենք չափազանցնի, եթե ասենք, որ արդի պայմաններում կոմունիստական դաստիարակությունը հարցերի հարցն է։ Ուստի մեր պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն, Կենտրոնական Կոմիտեի Նախագահությունը այնքան շատ ուժեր և ուշադրություն են նվիրում գաղափարական-դաստիարակչական հարցերին, մարքս-լենինյան մեծ ուսմունքի պաշտպանությանն ու զարգացմանը։ Մենք կկատարենք մեր խնդիրը, եթե աշխատենք ավելի ակտիվորեն, գործենք ավելի արդյունավետ, ավելի հաստատակամորեն պայքարենք պարտիայի գաղափարների իրականացման համար։

XXII համագումարը պարտիայի ու ժողովրդի առջև դրեց հիրավի պատմական նշանակություն ունեցող խնդիրներ։ Դրանց լուծումը կպահանջի հսկայական աշխատանք ու եռանդ, առավելագույն կարգապահություն, կազմակերպվածություն ու գիտակցականություն։ Գաղափարական ճակատի աշխատողները պետք է գտնվեն պարտիայի պահանջների մակարդակի վրա, լավ տեսնեն ապագան և կարողանան պատասխան տալ կյանքի ամենօրյա հարցերին, հմտորեն ու լրջորեն կատարեն գաղափարական աշխատանքը մասսաների մեջ, իրենց ավանդը մուծեն կոմունիզմի կառուցման մեծ գործում։

Թո՛ղ ամենաառաջադիմական մարքս-լենինյան գաղափարախոսության կազմակերպող և մոբիլիզացնող մեծ ուժը է՛լ ավելի ակտիվորեն դրսևորվի մեր հասարակության կյանքում։

«Коммунист», 1962 թ., № 1, հունվար

---

# ՊԱՐՏԻԱՅԻ ՄԵԾ ԾՐԱԳՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII պատմական համագումարից անցել է ընդամենը մի քանի ամիս, բայց արդեն ակներև է, թե ինչպես մեր մեծ երկրի ամբողջ ժողովուրդը, այդ թվում և Հայաստանի աշխատավորները, կրկնապատկված եռանդով, քայլ առ քայլ գործի են վերածում ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման՝ պարտիայի մշակած հոյակապ Ծրագիրը։

ՍՄԿՊ նոր Ծրագիրը, պարտիայի XXII համագումարի որոշումները և համագումարին ընկեր Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումներում առաջ քաշված հարցերը գործունեության լայն հորիզոն են բացել պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, մեր բոլոր աշխատավորների առջև։ Նրանց ստեղծագործական աշխատանքը, եղած ռեզերվների ու միջոցների արդյունավետ օգտագործման հմտությունը, կոմունիզմի կառուցման համար ցուցաբերած հաստատակամությունը՝ պարտիայի կողմից երկրի առջև դրված խնդիրների կենսագործման լավագույն գրավականն են։

Այդ խնդիրները մե՜ծ են ու հոյակա՜պ։

Մեր հզոր Հայրենիքը շարունակում է անվարան և յոթմղոնանոց քայլերով առաջ ընթանալ դեպի կոմունիզմ։ Այդ առաջընթացի ճանապարհին ամբողջ Սովետական երկիրը, ինչպես և մեր ռեսպուբլիկան հոյակապ հեռանկարներ ունեն ողջ ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում։ Արդյունաբերության գծով յոթնամյակի առաջին երեք տարվա պլանը կատարվել է հաջողությամբ, գերազանցելով նախատեսված կոնտրոլ առաջադրանքները։ Այն բանի հետևանքով, որ արդյունաբերության կարևորագույն ճյուղերում յոթնամյակի առաջին երկու տարվա առաջադրանքները գերակատարվեցին, ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ցուցումով յոթնամյակի մնացած ժամանակաշրջանի առաջադրանքների ճշգրտումներ կատարվեցին արտադրության ծավալների ավելացման և կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման նպատակով։

Ռեսպուբլիկայի Պետպլանն արդյունաբերության աշխատողների լայն մասնակցությամբ հաշվարկեց լրացուցիչ հնարավորությունները և ռեսպուբլիկայի յոթնամյա պլանը ճշգրտեց ավելացման իմաստով։ Ահա թե այժմ, ճշգրտումից հետո, ինչ տեսք ունի մեր ռեսպուբլիկայի յոթնամյա պլանը։



Արդյունաբերության 1965 թվականի համախառն արտադրանքը 10,7 տոկոսով գերազանցելու է յոթնամյակի կոնտրոլ թվերով նախատեսված մակարդակը։

Արդյունաբերության առանձին ճյուղերի զարգացման հեռանկարները յոթնամյակում հետևյալ պատկերն ունեն՝

## ԷՆԵՐԳԵՏԻԿԱ

Արդյունաբերական արտադրության ծավալի նախատեսված աճի կապակցությամբ էլեկտրաէներգիայի 1965 թվականի պահանջմունքները սահմանվում են 5 միլիարդ կիլովատ-ժամ։ Այսպիսով, 1958 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի պահանջմունքը կավելանա մոտավորապես 2 անգամ։ Էլեկտրաէներգիայի արտադրության աճը նախատեսվում է ապահովել գլխավորապես բնական գազով և մազութով գործող ջերմաէլեկտրակենտրոններ կառուցելու միջոցով։ Միևնույն ժամանակ նախատեսված է Սևանա լճից մեկ միլիարդ 400 միլիոն խորանարդ մետրի փոխարեն տարեկան բաց թողնել մինչև 500 միլիոն խորանարդ մետր ջուր, այսինքն՝ ջրի բացթողումը կրճատել գրեթե երեք անգամ. այդպիսով Կասկադի հիդրոկայանների էլեկտրաէներգիայի արտադրությունը կնվազի։

Ինչպես ջերմային, այնպես էլ հիդրոէլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիայի ընդհանուր քանակը չի ապահովում ռեսպուբլիկայի պահանջմունքը։ ՍՍՌՄ Պետպլանի որոշմամբ Հայկական ՍՍՌ-ն էլեկտրաէներգիա կստանա մյուս ռեսպուբլիկաներից, գլխավորապես եղբայրական Ադրբեջանից։ Դրսից ստացվող էլեկտրաէներգիան 1965 թվականին կկազմի 1.600 միլիոն կիլովատ-ժամ։

Այդպիսի քանակությամբ էլեկտրաէներգիայի ստացումն ապահովելու համար մենք պետք է արդեն 1963 թվականին Աղստաֆա-Աթարբեկյան գոյություն ունեցող էլեկտրահաղորդման գիծը (որն այժմ ունի 220 կիլովոլտ լարվածություն) փոխադրենք 330 կիլովոլտ լարվածության։ Բացի դրանից, անցյալ տարի Որոտան գետի վրա սկսվեց Տաթևի խոշոր հիդրոէլեկտրակայանի կառուցումը, որը շահագործման կհանձնվի մոտավորապես 1965—1966 թվականներին։ Այժմ հրամայական խնդիր է՝ ռեսպուբլիկայի արագ աճող ժողովրդական տնտեսությունը ապահովել հզոր էներգետիկ բազայով։

## ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱ

Գունավոր մետալուրգիան ռեսպուբլիկայի արդյունաբերության հնագույն ու կարևորագույն ճյուղերից մեկն է, որի համախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին կգերազանցի ավելի վաղ նախատեսվածից և 1958 թվականի համեմատությամբ կմեծանա մի քանի անգամ։

Յոթնամյակի վերջում զգալիորեն կավելանա պղնձի հանքաքարի, կապար-ցինկային պղնձի կոնցենտրատների և նախնական ալյումինի արտադրությունը։

Արտադրության ծավալների նշանակալի աճն ապահովվում է, մի կողմից, լեռնա-հանքային նոր ձեռնարկությունների, Ագարակի պղնձամոլիբդենային և Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատների, Ախթալայի հարստացուցիչ ֆաբ-

րիկայի գործարկման, մյուս կողմից՝ գործող ձեռնարկությունների արմատական վերակառուցման և ընդլայնման միջոցով։

Նախատեսվում է մոտակա տարիներին զգալիորեն ընդարձակել Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատը։ Արմատապես կվերակառուցվի ռեսպուբլիկայի հնագույն ձեռնարկությունը՝ Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը, որն զգալիորեն կավելացնի սև և ռաֆինացված պղնձի, ծծմբաթթվի և արտադրանքի կարևոր այլ տեսակների արտադրությունը։ Վերակառուցման շնորհիվ կոմբինատը կդառնա ամենաժամանակակից ձեռնարկությունը, որը վնասակար գազեր բաց չի թողնի օդ. դա թույլ է տալիս վստահորեն ասելու, որ Ալավերդու մթնոլորտը մարդկանց առողջությանը չի վնասի։

1965 թվականին խոշոր չափերով կավելանա Քանաքեռի Ալյումինի գործարանի կարողությունը։ Ներկայումս արդեն կառուցված է փոլգագլանման խոշոր կորպուսը, որը երկրին կտա մեծ քանակությամբ գլանվածք և մինչև 7 միկրոն հաստությամբ ոսկյա փոլգա։

Ռեսպուբլիկայի խոշորագույն նորակառույցը կդառնա Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը, որն ալյումինի հումքից՝ արդնահողից բացի կտա արտադրանքի մի շարք այնպիսի արժեքավոր տեսակներ, ինչպիսիք են՝ բարձրորակ ցեմենտը, սպիտակ մուրը, պոտաշը, երևանիտը, նատրիումի, կալցիումի մետասիլիկատները և այլն։

Ինչպես հայտնի է, մեր երկրաբանները Բասարգեչարի շրջանում հայտնաբերել են ոսկու հանքավայր։ Այդ բազայի վրա ընթացիկ յոթնամյակում կկառուցվի Զոդի ոսկեհանքային կոմբինատը։

Գունավոր մետալուրգիայի զարգացման տեմպերն ապահովելու համար նախատեսվում են մեծ ծավալի կապիտալ ներդրումներ։ 1959—1965 թվականներին գունավոր մետալուրգիայի բնագավառում կապիտալ ներդրումները նախատեսվում են 205,8 միլիոն ռուբլի՝ նախապես յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով նախատեսված 150 միլիոն ռուբլու դիմաց։ 1962—1965 թվականներին գունավոր մետալուրգիայի ասպարեզում կապիտալ ներդրումները կկազմեն մոտավորապես 150 միլիոն ռուբլի։

## ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ

Մեքենաշինությունը ծանր արդյունաբերության միջուկն է, և մեզանում այն հատկապես արագ տեմպերով է զարգանալու։ Մեքենաշինության համախառն արտադրանքը յոթնամյակի կոնտրոլ թվերով նախատեսված 4,5 անգամի փոխարեն կաճի 5,2 անգամ։ Մեքենաշինության համախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին նշանակալի չափով կմեծանա, ընդսմին մեքենաշինության արտադրանքի տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի ամբողջ ծավալի մեջ կհասնի 25 տոկոսի։

Առանձնապես արագ աճ է նախատեսվում էլեկտրատեխնիկական արդյունաբերության գծով։ Այս կարևոր ճյուղը ռեսպուբլիկայի արդյունաբերության նոր ճյուղերից մեկն է։ Այն ըստ էության ստեղծվեց հետպատերազմյան տարիներին և բուռն թափով զարգացավ։ Այսօր մենք հպարտությամբ ենք նշում, որ թողարկվող արտադրանքի ծավալով մեր ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը Սովետական Միությունում գրավում է երրորդ տեղը (ՌՍՖՍՌ-ից և Ուկրաինայից հետո)։



Էլեկտրատեխնիկական արդյունաբերության և սարքաշինության ձեռնարկություններ են ստեղծվում և ընդլայնվում ո՛չ միայն Երևանում, այլև Լենինականում, Կիրովականում, Գորիսում, Արթիկում և ռեսպուբլիկայի այլ քաղաքներում ու շրջաններում։ Այդ ձեռնարկությունները կթողարկեն մեծ քանակությամբ ժամանակակից էլեկտրական մեքենաներ, տրանսֆորմատորներ, ապարատներ, սարքեր, որոնք ուղարկվելու են նաև երկրի մյուս տնտեսական շրջանները, ինչպես նաև արտահանվելու են արտասահմանյան տասնյակ երկրներ։

Նոր ճյուղ է հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերությունը։ 1965 թվականին կթողարկվի ավելի քան 15 հազար հատ մետաղահատ հաստոց 1958 թվականի 2287 հատի դիմաց։ Տարեցտարի կթողարկվեն ավելի ու ավելի մեծ քանակությամբ բարձր և գերբարձր ճշգրտության հաստոցներ։ Զգալիորեն կավելանա նաև մետաղամշակման գործիքների և տեխնոլոգիական սարքերի, հաստոցների, մամլիչների, հիդրոապարատուրայի և արտադրանքի այլ տեսակների թողարկումը։

Ընդամենը մի քանի տարի առաջ մեր ռեսպուբլիկայում ծնունդ առավ ռադիոտեխնիկական արդյունաբերությունը, որը յոթնամյակում արագորեն կզարգանա։ Յոթնամյա պլանով նախատեսվում է կառուցել ու շահագործման հանձնել սելենային ուղղիչների գործարան։

1950 թվականից ռեսպուբլիկայում բուռն թափով ծավալվեց սարքաշինական արդյունաբերությունը, որին մոտակա տարիներում սպասում են զարգացման ավելի մեծ հեռանկարներ։ Տակավին անցյալ տարի սկսվեց հաշվիչ-էլեկտրոնային մեքենաների խոշոր գործարանի կառուցումը։ Սարքաշինական արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալը 1965 թվականին կկազմի մոտավորապես 68 միլիոն ռուբլի։

Ընթացիկ յոթնամյակում ռեսպուբլիկայում ստեղծվում է նաև ծանր մեքենաշինություն։ Ներկայումս մենք արդեն ունենք Ստրոմմաշ (շինարարական մեքենաների արտադրության) և ամբարձիչ-տրանսպորտային սարքավորումների գործարաններ։ Նախատեսված է 1965 թվականին մեզ մոտ թողարկել 160 քարհատ և 400 քար տաշող մեքենաներ, ինչպես և 100 ամբարձիչ կռունկներ, 800 կայմավոր ամբարձիչներ և այլ տեսակի արտադրանք։ Նախատեսված է 1961—1962 թվականներին լիովին յուրացնել ավտոբեռնիչների թողարկումը։ Ի դեպ, այդ գործը արագորեն առաջ է գնում և արդեն թողարկված են առաջին երկու ավտոբեռնիչները։

Ռեսպուբլիկայի ընդհանուր մեքենաշինությունն ընդգրկում է պոմպակոմպրեսորային սարքավորումների, սննդարդյունաբերության, առևտրի և հասարակական սննդի տեխնոլոգիական սարքավորումների և այլ հարմարանքների արտադրությունը։ Զգալիորեն կավելանա ստացիոնար կոմպրեսորների արտադրությունը (տարեկան մինչև 5.500 հատ)։

## ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Քիմիական արդյունաբերությունը ռեսպուբլիկայում առաջատար ճյուղերից մեկն է, և յոթնամյակում նրա համախառն արտադրանքի ծավալը պետք է աճի ավելի քան 4 անգամ։ Նախատեսված է խիստ ավելացնել քիմիական արտադրանքի այնպիսի կարևոր տեսակների արտադրությունը, ինչպիսիք են հանքա-

յին ու ֆոսֆատային պարարտանյութերը։ Մեր տնտեսության պահանջների համեմատ, հատկապես, կաճի ֆոսֆատային պարարտանյութերի թողարկման ծավալը։ Պարարտանյութերի ընդհանուր թողարկումը 1965 թվականին կկազմի 534 հազար տոննա։ Նախատեսվում է արհեստական ու սինթետիկ թելերի, սինթետիկ ձյութերի և պլաստմասսայի արտադրության հատկապես արագ աճ։ Մեր քիմիական արդյունաբերությունը կթողարկի մեծ քանակությամբ ացետատային մետաքս, կապրոնային կորդ, զանազան արհեստական թելեր, ացետիլցելյուլոզ և արտադրանքի մի շարք այլ տեսակներ։ Ավտոդողերի արտադրությունը 1965 թվականին կհասնի 1.200 հազար կոմպլեկտի, միաժամանակ բարելավելով դրանց որակը։ Զգալիորեն ավելանալու է ծծմբաթթվի, պղնձարջասպի, քացախաթթվի և արտադրանքի այլ տեսակների արտադրությունը։

Քիմիական արդյունաբերության արտադրանքի աճը տեղի է ունենալու ինչպես նոր կարողությունների ստեղծման ու գործարկման, այնպես էլ գործող ձեռնարկությունների վերակառուցման, ընդարձակման, տեխնոլոգիայի կատարելագործման և նոր տեխնիկայի արմատավորման շնորհիվ։

***

Զգալի տեմպերով կզարգանան շինանյութերի արդյունաբերությունը և շինարարական ինդուստրիան։ Խիստ կավելացվի ցեմենտի, հավաքովի երկաթբետոնի և ոչ հանքային շինանյութերի արտադրությունը։ Տեղական հումքի հիման վրա կկազմակերպվի արտադրանքի նոր տեսակների, այդ թվում՝ շինարարական գիպսի, ջերմամեկուսիչ նյութերի, քարաձույլ առարկաների ու այլ արտադրանքի թողարկումը։ 1965 թվականին կարտադրվի 725 հազար տոննա ցեմենտ, 590 հազար խորանարդ մետր երկաթբետոնե հավաքովի կոնստրուկցիաներ ու դետալներ։ Նախատեսված է 1965—1966 թվականներին գործարկել Հրազդանի ցեմենտի գործարանի առաջին հերթը՝ տարեկան 600 հազար տոննա պորտլանդ ցեմենտ թողարկելու կարողությամբ։

Մեծ աճ է նախատեսված ապակու և ճենապակու-հախճապակու արդյունաբերության գծով, որի համախառն արտադրանքի ծավալը յոթնամյակում կաճի մոտավորապես 6 անգամ։ Շշերի արտադրությունը, որը 1958 թվականին կազմեց 16 միլիոն, 1965 թվականին կհասնի 72 միլիոնի. դա կիրագործվի Արզնու ապակե տարայի գործարանի ընդլայնման և Ջերմուկի շրջանում տեղական հումքի բազայի վրա ապակե տարայի նոր գործարան կառուցելու շնորհիվ։

Յոթնամյակի ընթացքում արագորեն կզարգանա ռեսպուբլիկայի ծանր, թեթև և սննդի արդյունաբերությունը։ Լրացուցիչ կապիտալ ներդրումներ են արվում գործվածքի, հագուստեղենի և կոշիկի արտադրության ավելի արագ զարգացման համար։ Արդյունաբերության մեջ կավելացվի շաքարավազի, պահածոների և մսամթերքների ու կաթնամթերքների արտադրությունը։

Հետագայում ավելի կզարգանա մեր ռեսպուբլիկայի համար տրադիցիոն գինու և կոնյակի արդյունաբերությունը։ Գինու արտադրությունը 1965 թվականին կհասնի 5,5 միլիոն, կոնյակինը՝ 500 հազար դեկալիտրի։

## ՏՐԱՆՍՊՈՐՏ

Ժողովրդական տնտեսության զարգացմանը համապատասխան, զգալիորեն կավելացվի ավտոմոբիլային ու երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը։ Կմեծանան բեռնատար ավտոմեքենաների, ավտոբուսների, մարդատար ավտոմեքենաների և տաքսամոտորային պարկերը։ Ավտոտրանսպորտի նշանակալի աճը պահանջում է վերակառուցել եղած ճանապարհները և կառուցել նորերը։ Մինչև 1965 թվականը ռեսպուբլիկայում կկառուցվի ու կվերակառուցվի 300 կիլոմետր խճուղային ճանապարհ։ Զգալի չափով կընդլայնվի ավիատրանսպորտը։



Կարելի է ասել, որ դրական կերպով է լուծված Երևան–Աղստաֆա երկաթուղու շինարարության հարցը։ Այդ երկաթուղու մի հատվածը, 60 կիլոմետր երկարությամբ, արդեն կառուցված է։ Իսկ Հրազդան—Աղստաֆա երկաթուղու մնացած մասը կազմում է 159 կիլոմետր, որից Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը կառուցում է 20 կիլոմետր։ Ներկայումս ավարտվում է տեխնիկական փաստաթղթերի կազմումը և այդ երկաթուղագծի կառուցման համար նախատեսվում են 39,6 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ՝ ՍՍՌՄ Հաղորդակցության ճանապարհների մինիստրության միջոցների հաշվին։

Բացի դրանից, աշխատանք է կատարվում երկաթուղիների էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Առաջիկայում ամբողջովին կէլեկտրիֆիկացվի Երևան–Թբիլիսի երկաթուղագիծը։ Արդեն սկսվել է Երևան—Սևան գծի էլեկտրիֆիկացման նախապատրաստական աշխատանքը։ Պետք է հուսալ, որ 1963 թվականին այդ գծով կերթևեկեն ժամանակակից էլեկտրաքարշներ, իսկ դա շատ կարևոր է, եթե հաշվի առնենք այդ երկաթուղագծի բարդ պրոֆիլը։

## ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը 1959—1965 թվականներին սահմանված է 2 միլիարդ 69,8 միլիոն ռուբլի (կամ ավելի քան 20 միլիարդ ռուբլի՝ հին դրամով)։ Մեծ կապիտալ ներդրումներ են նախատեսված արդյունաբերական, քաղաքացիական-բնակարանային և գյուղատնտեսական շինարարության համար։ Գյուղատնտեսության ասպարեզում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մեջ նշանակալի գումար է նախատեսվում ջրատնտեսական շինարարության և սովխոզային շինարարության համար։

1959—1965 թվականներին բնակարանային շինարարության մեջ պետական կապիտալ ներդրումների ծավալը կկազմի 393,6 միլիոն ռուբլի, որը 85 միլիոն ռուբլով ավելի է, քան նախատեսվում էր յոթնամյակի կոնտրոլ թվերով։ Յոթնամյակի ընթացքում մենք պետք է կառուցենք ու շահագործման հանձնենք 2 միլիոն 706 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն կամ 398 հազար քառակուսի մետրով ավելի, քան նախատեսված էր ավելի վաղ։ Ինչպես տեսնում եք, բնակարանային շինարարությունը կզարգանա հարաճուն տեմպերով, և մենք խնդիր ենք դնում 1965 թվականին քաղաքային բնակչության մեկ շնչի համար ապահովել 7—11 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Դրանով առաջ ընթաց քայլ կարվի բնակարանային պրոբլեմի լուծման գործում։

Խոշոր կապիտալ ներդրումներ են նախատեսվում կոմունալ և կուլտուր-կենցաղային շինարարության ասպարեզում (դպրոցներ, հիվանդանոցներ, թատրոններ, ակումբներ, ջրմուղ-կոյուղի, էլեկտրացանց, գազիֆիկացում և այլ միջոցառումներ)։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր առաջխաղացման կարևորագույն ցուցանիշներից մեկն է։ Սակայն այդ ասպարեզում յոթնամյակի անցած երեք տարվա առաջադրանքները չեն կատարվել։ Յոթնամյա պլանով աշխատանքի արտադրողականության աճը արդյունաբերության բնագավառում նախատեսված է մեկուկես անգամ։ Այդ առաջադրանքը հաջողությամբ կատարելու համար անհրաժեշտ է յոթնամյակի մնացած տարիների ընթացքում, այսինքն՝ 1962—1965 թվականներին աշխատանքի արտադրողականության միջին աճն ապահովել 3,6 տոկոսով։ Դա շատ լուրջ խնդիր է, և մենք պարտավոր ենք այն լուծել բոլոր պայմաններում։

## ԱՅՍ ՏԱՐԻՆ ՎՃՌԱԿԱՆ Է

Ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման յոթնամյա պլանը աչքի է զարնում ո՛չ միայն թողարկվող արտադրանքի ծավալի քանակական նշանակալի աճով, այլև նախատեսվող որակական մեծ փոփոխություններով։ Այդ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի արդյունաբերությունը կյուրացնի հարյուրավոր նոր տեսակի ժամանակակից մեքենաներ, սարքեր ու նյութեր, դրա հետ միասին արտադրությունից կհանվեն արդյունաբերական արտադրանքի հնացած տեսակները։ Հատկապես լայնորեն կզարգանան արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը։ Գործարաններում կարմատավորվեն նոր, բարձր արտադրողական սարքավորումներ։

Մեծ աշխատանք պետք է կատարեն գիտության աշխատողները։ Արդյունաբերության մասնագետների, գիտական աշխատողների և արտադրության նոբարարների ջանքերով կապահովվի ամբողջ ժողովրդական տնտեսության, այդ թվում նաև արդյունաբերության տեխնիկական ավելի արագ առաջընթացը։

1962 թվականը վճռական տարի է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման, յոթնամյա պլանը հաջողությամբ կատարելու համար։ Սակայն այս տարին ունի մի շարք առանձնահատկություններ, որոնց հաշվի առնելը կարևոր է։

Արդյունաբերության 1962 թվականի համախառն արտադրանքի ծավալը նախորդ տարվա մակարդակը կգերազանցի 7,4 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ «Ա» խումբը, կաճի 8,5 տոկոսով։

Նոր տարում ծանր արդյունաբերության հիմնական ճյուղերը, այդ թվում և գունավոր մետալուրգիան, կզարգանան փոքր-ինչ ավելի արագ տեմպերով։ Մեքենաշինությունն ու մետաղամշակությունը՝ ընդհանուր առմամբ կաճեն 15,2 տոկոսով և այլն։

Այս տարվա մեր զարգացման տեմպերը մեծ ջանքեր են պահանջում ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի աշխատողներից։ Կարևորագույն խնդիրներից մեկն է՝ այս տարի ապահովել Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի գործարկումը։ Արտադրության ընդհանուր ծավալով գունավոր մետալուրգիան 1962 թվականին յոթնամյա պլանի առաջադրանքները կգերազանցի։

Այս տարի խիստ պատասխանատու խնդիրներ են դրվում ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության աշխատողների առջև՝ կազմակերպել ացետիլցելյուլոզի, ինչպես նաև 90 հազար տոննա-մետր ացետատային մետաքսի արտադրությունը, միջոցառումներ կիրառել բնական գազից ացետիլեն արտադրելու ուղղությամբ. սահմանված չափով ավելացնել սինթետիկ ձյութերի և պլաստմասսայի թողարկումը։



Ընթացիկ տարում զգալիորեն կաճի մեքենաշինության և մետաղամշակության արդյունաբերական արտադրանքի ծավալը։ Էլեկտրամեքենաշինարարները նախորդ տարվա համեմատ պետք է ապահովեն գեներատորների արտադրության 14 տոկոսի աճ։

Մեր ռեսպուբլիկայում ժամանակակից մետաղահատ հաստոցների արտադրությունն անցյալ տարվա համեմատ, այս տարի պետք է աճի 34,7 տոկոսով։ Ընդսմին, բարձր ճշգրտության հաստոցների թողարկումը աճելու է ավելի քան երկու անգամ։

Գոհունակությամբ պետք է նշել, որ այս տարի նախատեսվում է ավտոբեռնիչների, հաշվիչ-էլեկտրոնային մեքենաների, բարձրավոլտ էլեկտրական ապարատների, քարհատ մեքենաների և այլ տեսակի արտադրանքի արդյունաբերական թողարկումը։ Կավելանա Ստեփանավանի բարձր հաճախականության սարքավորումների, Արթիկի վակուում էլեկտրավառարանների, Մարալիկի մագնիսային ուժեղացուցիչների գործարաններում թողարկվող արդյունաբերական արտադրանքի արտադրությունը, ինչպես նաև կրնդլայնվի կաբելի արտադրությունը Կամո քաղաքում, որտեղ ստեղծվում է կաբելի ժամանակակից գործարան։ Դա կլինի կաբելի երկրորդ գործարանը ռեսպուբլիկայում։

Ընթացիկ տարվա տնտեսական զարգացման առանձնահատուկ և դրական կողմերից մեկն էլ այն է, որ արդյունաբերական օջախներ են ստեղծվում մի շարք շրջաններում (Կամո, Հրազդան, Լուսավան, Ստեփանավան, Մարալիկ, Գորիս, Արթիկ և այլն)։ Այդ գիծը այսուհետև ևս հաստատակամությամբ կկիրառենք, ապահովելով նոր վերելք ո՛չ միայն ռեսպուբլիկայի խոշոր քաղաքների, այլև գյուղական շրջանների կուլտուրական ու տեխնիկական զարգացման ասպարեզում։

1962 թվականի կարևորագույն խնդիրներից մեկը Լուսավանի չուգունաձուլական արտադրության օբյեկտների կոմպլեքսի կառուցման ավարտումն ու արագ գործարկումն է և Հայէլեկտրագործարանի ու Ձերժինսկու անվան գործարանի չուգունաձուլական ցեխերի վերակառուցումը։

Ընթացիկ տարում էլեկտրաէներգիայի պահանջմունքները կկազմեն 3,3 միլիարդ կիլովատ-ժամ։ Այն կապակցությամբ, որ էլեկտրական էներգիայի մի մասը պետք է ստացվի եղբայրական Ադրբեջանից, ռեսպուբլիկայի գործող հիդրոէլեկտրակայաններում էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1961 թվականի համեմատությամբ, կնվազի, որը թույլ կտա Սևանա լճից ջրի բացթողումը անցյալ տարվա համեմատությամբ պակասեցնել մոտավորապես 150 միլիոն խորանարդ մետրով։

1962 թվականի կարևորագույն խնդիրներից մեկը՝ 44 հազար կիլովատ կարողությամբ Երևանի հիդրոէլեկտրակայանի ժամանակին գործարկումն է և ռեսպուբլիկայում առաջին՝ Երևանի ջերմաէլեկտրակայանի կառուցման արագացումը։ Նրա առաջին հերթը (50.000 կիլովատ կարողությամբ) պետք է գործարկել այս տարվա վերջերին, որը բնական գազից ացետիլցելյուլոզի և ացետիլենի արտադրությունը կազմակերպելու անհրաժեշտ պայմանն է։ Ավելի արագ կկառուցվի Կիրովականի ջերմաէլեկտրակենտրոնը, որը պետք է ապահովի տեխնոլոգիական գոլորշու արտադրությունը քիմիական արդյունաբերու-

թյան կարիքների և, առաջին հերթին, Կիրովականում շահագործման հանձնվող ացետատային մետաքսի խոշոր գործարանի համար։

Այս տարի նախատեսվում են միջոցներ նախագծային-հետախուզական աշխատանքների համար, որպեսզի տարվա վերջին կամ եկող տարվա սկզբներին սկսվեն Արփա գետի ջրերը Սևանա լիճ շուռ տալու աշխատանքները։

Ավարտվում է նոր, չորրորդ տեխնոլոգիական գծի գործարկումն ու սարքավորումը Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում, որով կապահովվի ցեմենտի արտադրությունը, այն կավելանա 570 հազար տոննայով կամ 1961 թվականի համեմատությամբ՝ 46,2 տոկոսով։ Սա լուրջ հաջողություն է, որը կապահովի ցեմենտի ասպարեզում շինարարների աճող պահանջմունքները։

Ընդլայնվում է ասբոցեմենտային խողովակների արտադրությունը, որը հասնելու է 500 կիլոմետր պայմանական տրամագծի, կամ անցյալ տարվա համեմատությամբ կաճի 2,6 անգամ։ Հավաքովի երկաթբետոնի արտադրությունն անցյալ տարվա դիմաց կավելանա 21,2 տոկոսով։

1962 թվականին նշանակալի չափով կաճի թեթև ու սննդի արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքը։ Նախատեսված է այս տարի արտադրել 72,8 միլիոն մետր բամբակե գործվածք, 4,3 միլիոն մետր բրդե գործվածք, 36 միլիոն զույգ գուլպա, 26 միլիոն հատ տրիկոտաժ, 6 միլիոն զույգ կոշիկ։

Ընթացիկ տարում անարատ կաթնամթերքի արտադրությունը կաճի 21 տոկոսով (կարտադրվի 35 հազար տոննա), պտղա-բանջարեղենի պահածոներինը՝ 114,5 միլիոն պայմանական տուփ, գինի՝ 3,6 միլիոն դեկալիտր, շամպայն՝ 250 հազար շիշ և այլն։ Կավելանա և կուլտուր-կենցաղային ու տնտեսական գործածության ապրանքների արտադրությունը։

## ԱՆՊԱՅՄԱՆ ԳԵՐԱԿԱՏԱՐԵԼ ՏԱՐԵԿԱՆ ՊԼԱՆԸ

Երբ խոսք է լինում տնտեսության զարգացման հրատապ խնդիրների մասին, չի կարելի չընդգծել այն կարևոր հանգամանքը, որ ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրության ընթացիկ տարվա նախատեսված ծավալը, դժբախտաբար, յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով նախատեսված մակարդակից ետ է մնում 26,4 միլիոն ռուբլու չափով։ Այս տարվա արդյունաբերության համախառն արտադրանքի աճը, 1958 թվականի մակարդակի համեմատ (յոթնամյակի չորս տարում), կկազմի 49,5 տոկոս՝ յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով նախատեսված 52,8 տոկոսի փոխարեն։ Մենք պետք է լուրջ խորհենք այս թվերի մասին և գործնական միջոցներ ձեռնարկենք յոթնամյա պլանի կատարումն ապահովելու համար։

Վերոհիշյալ անբավարար դրության պատճառն այն է, որ վերջին մի քանի տարիներում թերակատարվեցին շինմոնտաժային պլանները, որի հետևանքով մի շարք խոշոր ձեռնարկություններ նախատեսված ժամանակին չգործարկվեցին և դեռ այսօր էլ չեն գործարկվել։ Մյուս պատճառն այն է, որ ժողտնտխորհը դեռ անբավարար է օգտագործում եղած ռեզերվները արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացնելու համար։ Հարկավ, այստեղ դեր է խաղում և այն հանգամանքը, որ Բեռ ռեսպուբլիկայի արդյունաբերությունն ամբողջությամբ վերցրած առաջ է անցնում պլանից, բայց մեծ թվով ձեռնարկություններ պլանը չեն կատարում։ 1961 թվականին միայն ժողտնտխորհի սիստեմում 50



արդյունաբերական ձեռնարկություններ նախատեսվածից պակաս տվեցին 18,6 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք։

Հաշտվել այդ դրության հետ չենք կարող։ Հայաստանի արդյունաբերությունը պետք է կատարի իր յոթնամյա պլանը։ Արդյոք կարելի է ելք գտնել ստեղծված դրությունից։ Ելք, անտարակույս, կարելի է գտնել։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը հանգամանորեն քննարկեցին այդ հարցը և մի շարք գործնական միջոցառումներ նշեցին։ Յոթնամյա պլանի մակարդակից արդյունաբերության ետ մնալը շտապփույթ կերպով հաղթահարելու կարևորագույն նախադրյալներից մեկը՝ կապիտալ ներդրումների առավել արդյունավետ օգտագործումն է և դրամական ու նյութական միջոցների կենտրոնացումը։ Իսկ դրա համար անհրաժեշտ է վճռականապես հաղթահարել առանձին գերատեսչությունների դիմադրությունը և մեկընդմիշտ վերջ տալ ճակատային այնպիսի պրակտիկային, ինչպիսին պետական միջոցների փոշիացումն է։

Մեր խնդիրն է՝ 1962 թվականը դարձնել արտադրական նոր կարողությունների գործարկման աննախընթաց տարի։ Այդ նկատառումով էլ 1962 թվականի պետական կապիտալ ներդրումների ծավալը սահմանվել է 228 միլիոն ռուբլի կամ 20 միլիոն ռուբլով ավելի, քան նախատեսված էր յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով։ 1961 թվականի պլանի կատարման համեմատությամբ, կապիտալ ներդրումների ծավալն ընթացիկ տարում կմեծանա 25,4 տոկոսով, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 23,6 տոկոսով։

Գործարկվելիք օբյեկտները միջոցներով ապահովելու համար նախատեսված է կոնսերվացնել սկսված մի շարք օբյեկտներ, որոնց կառուցումն առաջնահերթ անհրաժեշտություն չէ (ահա այստեղ հարկ եղավ հաղթահարել առանձին գերատեսչությունների համառ դիմադրությունը)։

Այսպիսով, ազատվող միջոցներն ու նյութերը կհատկացվեն սկսված մի շարք կառույցների ավարտմանը։

Նախատեսված է 1962 թվականին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ ներդնել 258 միլիոն ռուբլի, որը 1961 թվականի համեմատությամբ կտա մոտավորապես 25 տոկոսի աճ։ Կապիտալ ներդրումների այսպիսի նպատակասլաց օգտագործումը հնարավորություն կտա ռեսպուբլիկայում անավարտ շինարարության ծավալը նվազեցնել 30 միլիոն ռուբլով, որը միանգամայն իրական երևույթ է։

Արդյունաբերության զարգացման ընթացիկ տարվա պլաններն ապահովելու համար անհրաժեշտ է ինչ գնով էլ լինի, կատարել շինմոնտաժային աշխատանքների նախատեսված ծավալը, ապահովել նախատեսված նոր կարողությունների գործարկումը։ Սա գլխավոր պայմանն է, որպեսզի մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1963 թվականին ապահովի զարգացման տեմպերի զգալի արագացում՝ մոտավորապես 14—15 տոկոսով։ Դա թույլ կտա ո՛չ միայն հաղթահարել ետ մնալը, այլև բոլոր ճյուղերում յոթնամյա պլանը կատարել որոշ գերազանցումով։ Սա դժվարին, բայց միանգամայն ռեալ խնդիր է։

Պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունները պետք է գործադրեն իրենց բոլոր ջանքերը և ցույց տան, որ կարող են հաղթահարել դժվարությունները, այդ խնդիրները լուծել ընթացիկ տարում։ Հաշվարկները ցույց են տալիս, որ կա ռեալ հնարավորություն արդեն այս տարի արդյունա-

բերության բնագավառում հասնելու յոթնամյակի առաջադրանքների մակարդակին: Դրա համար անհրաժեշտ է, որ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1962 թվականի պլանը գերակատարի երկուս ու կես տոկոսով:

Ժողտնտխորհի և արդյունաբերության աշխատողների գլխավոր խնդիրն է՝ ավելի հմտորեն օգտագործել ռեզերվները արդյունաբերության արտադրանքի թողարկումն ավելացնելու համար: Պարտիական, սովետական, տնտեսական և արհմիութենական օրգանները պարտավոր են գլխավորել աշխատավորների խանդավառությունը, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը և ապահովել 1962 թվականի պլանի կատարումն առնվազն 102,5 տոկոսով:

Ընթացիկ տարում զգալիորեն ընդարձակվում է բնակարանային շինարարության ծավալը: Նախատեսված է կենտրոնացված կապիտալ ներդրումների միջոցով ռեսպուբլիկայում կառուցել 320 հազար քառակուսի մետր նոր բնակելի տարածություն կամ 9.830 բնակարան: Յոթնամյա պլանով նախատեսածից ավելի արագ է ծավալվելու նաև դպրոցաշինարարությունը: Այս տարի պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցվելու և շահագործման են հանձնվելու հանրակրթական դպրոցներ՝ 18,3 հազար աշակերտի համար: Բացի դրանից, մեծ թվով դպրոցներ կկառուցվեն ժողտնտխորհի ձեռնարկությունների շահույթների մասհանումների, ինչպես նաև կոլտնտեսությունների միջոցների հաշվին: Այս ամենի շնորհիվ հնարավոր կլինի դպրոցներում վերացնել երկրորդ և երրորդ հերթի պարապմունքները: 1962—1965 թվականների ընթացքում 136,7 հազար աշակերտի համար նախատեսված հանրակրթական դպրոցներ շահագործման հանձնելու շնորհիվ. ենթադրվում է, որ 1965 թվականին մեկ հերթափոխում կսովորեն 345 հազար աշակերտ կամ ռեսպուբլիկայի բոլոր աշակերտների 75 տոկոսը:

Բնորոշ է, որ ընթացիկ տարում մի քանի անգամ կմեծանա ռեսպուբլիկայում կատարվող գիտահետազոտական աշխատանքների ծավալը: Կասկածից վեր է, որ մեր ռեսպուբլիկայի գիտնականներն ինչպես մինչև այժմ, նույնպես և առաջիկայում իրենց խոշոր լուման կներդնեն սոցիալիստական Հայրենիքի ծաղկման; նրա հզորության աճման գործում:

Նախատեսվում է այս տարի ռեսպուբլիկայում իրագործել նոր տեխնիկայի արմատավորման 507 միջոցառում՝ արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, նոր, կարևորագույն մեքենաների ու սարքավորումների կոնստրուկցիայի մշակման ու պատրաստման, ծանր և աշխատատար պրոցեսների մեքենայացման և այլ բնագավառներում:

## ՊԱՅՔԱՐ ԱՌԱՋԱՎՈՐ ԵՎ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՎԱԾ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Մեր առջև անհամեմատ լուրջ և դժվարին խնդիրներ են ծառանում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման ասպարեզում: Անցած տարին խիստ ծանր էր մեր գյուղատնտեսության համար: Երաշտը մեծ դժվարություններ առաջացրեց, բայց գյուղական շրջանների պարտիական, սովետական կազմակերպություններն ու աշխատավորները հերոսական ջանքեր գործադրեցին, որպեսզի նվազագույն վնասով հաղթահարեն երաշտի հետևանքները: Չնայած եղած դժվարություններին, ռեսպուբլիկան կատարեց պետությանը մսի, կաթի,



խաղողի, պտուղների և գյուղատնտեսական մի քանի այլ կուլտուրաների վաճառքի պլանը: Զգալիորեն նվազել է անասունների անկումը: Բայց այդ ամենը մեզ հանգստացնել չեն կարող, որովհետև գյուղատնտեսության բնագավառում դեռևս շատ դժվարություններ և չլուծված խնդիրներ կան:

Ամենից առաջ անհրաժեշտ է կուտակված կերի պաշարները այս տարի խելացի օգտագործել և անասունների խնամքն ու ձմեռումն օրինակելի անցկացնել: Դրա հետ միասին, հենց այսօրվանից պետք է հոգալ գարնան դաշտային աշխատանքները պատշաճ բարեխղճությամբ ու որակով կատարելու մասին, որով միայն հնարավոր կլինի բարձր բերք ստանալ:

Այժմ մեր գյուղատնտեսության առջև ծառացել են խոշոր և լուրջ խնդիրներ, որոնցից գլխավորներն են՝ ոռոգման ցանցի ընդլայնումը, գյուղատնտեսության մասնագիտացումը և հողատարածությունների առավել արդյունավետ օգտագործումը:

Ընթացիկ տարում խոշոր ջրանցքների կառուցումը շարունակելու հետ միասին նախատեսվում է ստեղծել ջրհան կայաններ, որոնք թույլ կտան ոռոգելու շատ կոլտնտեսությունների ու սովխոզների բերրի հողերը: Այս տարի կավարտվի 13 ջրհան կայանների շինարարությունը, որով հնարավոր կլինի լրացուցիչ կերպով ոռոգել 3.575 հեկտար հող, ջրարբի հողերի ընդհանուր տարածությունը ռեսպուբլիկայում հասցնելով 257,4 հազար հեկտարի:

Անհրաժեշտ է առաջիկայում համապատասխան միջոցառումներ մշակել խոտադաշտային սիստեմի հաղթահարման ուղղությամբ: Այդ գործը պետք է կատարել այն հաշվով, որպեսզի վարելահողի յուրաքանչյուր հեկտարը օգտագործվի այն կուլտուրաների մշակման համար, որոնք տալիս են ավելի շատ կերի միավոր. ընդսմին հարկավոր է հաշվի առնել մեր ռեսպուբլիկայի լեռնային պայմանները:

Պարտիան մեծ ուշադրություն է նվիրում գյուղատնտեսության զարգացմանը և սննդամթերքների ու արդյունաբերության համար հումքի արտադրության խիստ ավելացմանը, դա համարելով կոմունիզմի կառուցման գործում իր առաջնահերթ խնդիրներից մեկը: Մեր պարտքն է՝ հմտորեն օգտագործել եղած հնարավորություններն ու ապահովել յոթնամյա պլանի կատարումը նաև գյուղատնտեսության ասպարեզում:

## ՓԱՅԼՈՒՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

ՍՄԿՊ XXII պատմական համագումարի որոշումները, պարտիայի նոր Ծրագիրը հոյակապ խնդիրներ են դնում ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի առջև: Եվ մենք պետք է աշխատենք ավելի մեծ եռանդով ու հրմտությամբ, որպեսզի ավելի հաջող լուծենք մեր առջև դրված նոր, մեծ խնդիրները կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում:

Պարտիայի Ծրագրում կոնկրետ կերպով, ըստ էտապների, շարադրված է կոմունիզմի կառուցման քսանամյա պլանը: Մեր ռեսպուբլիկան նույնպես ունի ժողովրդական տնտեսության զարգացման քսանամյա հեռանկարային պլան: Այդ հեռանկարները հոյակապ են, բերկրալի և հրապուրիչ:

Բավական է ասել, որ 1961—1980 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը կանի մոտավորա-

պես 16,5 անգամ: Ահա թե որն է սոցիալիստական տնտեսաձևի անկասելի առավելությունը: Նշված ժամանակամիջոցում քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը կաճի շուրջ 30 անգամ, մեքենաշինությանը՝ գրեթե 48, իսկ միայն հաստոցաշինությանը՝ ավելի քան հարյուր անգամ:

Հեռանկարային պլանով նախատեսված է զգալիորեն ընդլայնել ավտոմոբիլային և երկաթուղային տրանսպորտը: Բացի Երևան—Հրազդան—Աղստաֆա երկաթուղագծից, մեր առջև ծառանում է և Ջանգեզուրի երկաթուղագծի կառուցման հարցը, Ղափան—Տաթև—Սիսիան—Բասարգեչար—Սևան ուղղությամբ:

Հատկապես մեծ թափ կստանա բնակարանային շինարարությունը: Յոթնամյակի վերջում մեկ բնակչին կընկնի մոտավորապես 7 քառակուսի մետր, 1970 թվականին՝ 11,5 քառակուսի մետր, իսկ 1980 թվականին՝ 18 քառակուսի մետր բնակելի տարածություն: Ընդամենը 20 տարում կկառուցվի և շահագործման կհանձնվի 35 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն:

Շենքերի կառուցման հիմնական եղանակը կլինի խոշոր պանելային հավաքովի տնաշինությունը:

Բնակարանային շինարարության հարաճուն, մեծ ծավալները հաջողությամբ ապահովելու համար անհրաժեշտ է ավելի համարձակ և ավելի լայնորեն ինդուստրացնել շինարարական աշխատանքները, հասնել այն բանին, որ գործարանային կարգով պատրաստվեն բնակելի տների դետալներն ու կոնստրուկցիաները և տեղում է՛ մոնտաժվեն: Այս տարի շահագործման կհանձնվի տնաշինական առաջին կոմբինատը, տարեկան 70 հազար քառակուսի մետր կարողությամբ: Մինչև 1965 թվականը կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն ևս 4 տնաշինական կոմբինատներ՝ 175 հազար քառակուսի մետր ընդհանուր կարողությամբ:

1961—1980 թվականներին զգալիորեն կընդլայնվի հանրակրթական, գիշերօթիկ, երկարօրյա դպրոցների և մանկական նախադպրոցական հիմնարկների ցանցը: Կկառուցվեն հանրակրթական դպրոցներ 308 հազար աշակերտի համար, գիշերօթիկ դպրոցներ՝ 350 հազար աշակերտի համար, բանվոր երիտասարդության դպրոցներ՝ 17 հազար աշակերտի համար, մանկական նախադպրոցական հիմնարկներ՝ 508 հազար երեխայի համար, պիոներների 41 տուն և 300 ֆիզկուլտ դահլիճ:

Հեռանկարային քսանամյա պլանով նախատեսվում է կառուցել մեծ թվով կինո-թատրոններ, դրամատիկ թատրոններ, այդ թվում Սունդուկյանի և Ստանիսլավսկու անվան թատրոնները, Լենինականի, Կիրովականի, Ալավերդու, Ղափանի, Լուսավանի, Գորիսի և այլ դրամատիկ թատրոնները:

Հիվանդանոցային մահճակալների թիվը քսան տարում կավելանա մոտավորապես 4 անգամ: Հատկապես մեծ աշխատանքներ կկատարվեն գյուղական բնակչության բուժ-սպասարկումը բարելավելու ուղղությամբ: Կուրորտային լայն շինարարություն կծավալվի Ջերմուկում, Արզնիում, Դիլիջանում և այլ վայրերում: Ռեսպուբլիկայի սանատորիաներում մահճակալների թիվը կավելանա 5 անգամ:

Քսան տարում զարգանալու լավ հեռանկարներ ունի նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը, որն ընթանալու է խաղողագործության, պտղաբուծության և անասնաբուծության ասպարեզում հետագա մասնագիտացման ուղղությամբ: Զգալիորեն կավելացվի նաև բանջարեղենի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, խորդենու արտադրությունը:



Նախատեսվում է երկու տասնամյակում գյուղատնտեսական ակտիվ շրջանառության մեջ ներգրավել այժմ չօգտագործվող մոտավորապես 100 հազար հեկտար հողեր՝ առավելապես բնական խոտհարքների տարածությունն ընդլայնելու համար: Ոռոգելի հողերի տարածությունը կավելանա 187 հազար հեկտարով և 1980 թվականին կհասնի 408 հազար հեկտարի՝ 1958 թվականի 221 հազար հեկտարի դիմաց: Իրիգացիոն շինարարության առավել խոշոր օբյեկտները կլինեն՝ Թալինի, Արզնի—Շամիրամի ջրանցքների առաջին և երկրորդ հերթերը, Կոտայքի ջրանցքը, Վերին Եղվարդի և Արտաշատավան—Բյուրականի ջրանցքները:

Նոր ոռոգվող հողերի կեսից ավելին ենթադրվում է հատկացնել խաղողի և պտղատու այգիներին և միայն 42 տոկոսը օգտագործել որպես վարելահող: 1980 թվականին խաղողի այգիների տարածությունը 1958 թվականի 25.000 հեկտարի դիմաց կկազմի մոտավորապես 90 հազար հեկտար, իսկ պտղատու այգիներինը՝ 1958 թվականի 16 հազար հեկտարի դիմաց՝ 58 հազար հեկտար:

Անասնաբուծության զարգացման արագ տեմպեր ապահովելու համար անհրաժեշտ է զգալիորեն ընդլայնել կերային կուլտուրաների արտադրությունը և ստեղծել կերի կայուն բազա: Այդ նպատակով, մի կողմից, կերային կուլտուրաների տարածությունը, քսանամյակի վերջին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 2,5 անգամ (100 հազար հեկտարից կհասնի 250 հազարի), իսկ մյուս կողմից՝ նախատեսվում է խիստ բարձրացնել հեկտարի բերքատվությունը, այդ թվում՝ բազմամյա խոտաբույսերինը՝ 2 անգամ, բնական խոտհարքներինը՝ 2,2, եգիպտացորենի կանաչ զանգվածինը՝ 5,3, կերի արմատապտուղներինը՝ 4,2 անգամ:

Անասնաբուծական մթերքների արտադրությունը երկու տասնամյակ հետո 1958 թվականի համեմատությամբ կավելանա. մսինը (սպանդանոցային քաշով)՝ 3,1 անգամ, կաթինը՝ 3, բրդինը՝ 2,26 և ձվինը՝ 5,3 անգամ:

Հարյուր հեկտար գյուղատնտեսական հողատարածության դիմաց անասնաբուծական մթերքների արտադրությունը կաճի հետևյալ չափով. մսինը (սպանդանոցային քաշով) կհասնի 78 ցենտների, կամ 1958 թվականի մակարդակից 2,9 անգամ ավելի, կաթինը՝ 656 ցենտների, կամ 2,8 անգամ ավելի, բրդինը՝ 5,5 ցենտների, կամ 2,1 անգամ ավելի, ձվինը՝ 315 հազար հատի, կամ 7,5 անգամ ավելի:

Տրակտորների ընդհանուր քանակը նախատեսված է 1980 թվականին հասցնել 19,5 հազար հատի կամ 15 ուժանոցի վերածած՝ 31,4 հազար հատի, որն ավելի քան 5 անգամ շատ է այժմ գործող տրակտորների քանակից: Ավելի քան երկու անգամ կավելանա հացահատիկային կոմբայնների քանակը:

Ժողովրդական տնտեսության բուռն աճը, աշխատավորների բարեկեցության բարձրացումը պետք է զուգակցվեն բնակչության արագ աճին: Արդեն 1962 թվականի աշնանը ռեսպուբլիկայի բնակչությունը (բնական աճի հաշվին) անցնելու է երկու միլիոնից: Ռեսպուբլիկայի Պետպլանի տվյալներով Հայկական ՍՍՌ բնակչությունը, հաշվելով նաև հայրենադարձներին, 1965 թվականին կկազմի 2.200 հազար մարդ, 1970 թվականին՝ 2.470 հազար մարդ, 1980 թվականին՝ 3.350 հազար մարդ:

## ԳԼԽԱՎՈՐԵԼ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ

Հաջողությամբ իրագործել վերոհիշյալ հոյակապ պլանը՝ նշանակում է գործնականում կատարել առաջին և երկրորդ տասնամյակների այն վիթխարի կանխագծումները, որոնք շարադրված են պարտիայի Ծրագրում, նշանակում է մեր արժանի ավանդը մուծել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

Աշխատանքների նոր, հսկայական մասշտաբներն ու ծավալները ընդգրկելու համար մենք պետք է արմատապես բարելավենք տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարումը, բարելավենք մասսաների մեջ կատարվող դաստիարակչական և գաղափարական ամբողջ աշխատանքը:

Մեզանում քիչ չկան դժվարություններ ու չլուծված խնդիրներ։ Այժմ գլխավորն այն է, որ ապահովվի 1962 թվականի ժողովրդա-տնտեսական պլանի անվերապահ կատարումը քանակական և տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով:

Պարտիական, սովետական, տնտեսական և հասարակական կազմակերպությունները, ինչպես նաև ռեսպուբլիկայի ամբողջ ակտիվն ու աշխատավորները պետք է պարզ պատկերացնեն այդ գլխավոր խնդիրը և պատասխանատվության մեծ զգացումով տոգորվեն՝ 1962 թվականի պետական պլանը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի գծով կատարելու համար։

Հարկավոր է արագ և ճիշտ լուծել նոր, մեծ խնդիրները, առանց ավելացնելու վճարովի աշխատողների թիվը, հատկապես պարտիական ապարատում։ Այդ մասին շատ որոշակի, պարզ ու շիտակ է ասված պարտիայի Ծրագրում։ Անհրաժեշտ է ամեն կերպ զարգացնել հասարակական հիմունքները պարտիական, ինչպես նաև սովետական ու տնտեսական օրգանների աշխատանքում:

Պարտիական կազմակերպություններն իրենց աշխատանքում պետք է հմտորեն օգտագործեն ակտիվի ուժերը, աջակցեն արտահաստիքային աշխատողներին, ցույց տան կոմունիստական հասարակական ինքնավարության առավել կատարյալ ձևերի մշտական օրինակ։ «Գործնականում դա կարող է նշանակել,— ասել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում,— որ, ասենք, պարտիական օրգանների ապարատը անշեղորեն կկրճատվի, իսկ պարտիական ակտիվի շարքերը կմեծանան։ Պարտիական օրգաններում պետք է լինեն շրջկոմների ու քաղկոմների՝ հասարակական հիմունքներով աշխատող ավելի ու ավելի շատ հանձնաժողովներ, բաժիններ, հրահանգիչներ, քարտուղարներ»։

Չպետք է մոռանալ, որ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում լայն մասսաների ակտիվ մասնակցությունը հասարակական գործունեությանը նոր խնդիրների հաջող լուծման բանալին է։

Կասկածից վեր է, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման, ժողովրդի կուլտուրական և նյութական բարօրության հզոր վերելքի ապահովման բնագավառում մեր ռեսպուբլիկայի աշխատավորները պատվով կկատարեն կոմունիզմի կառուցման՝ պարտիայի մեծ Ծրագիրը։

---

# ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆ ԱՅԴ ՄԵՆՔ ԵՆՔ

ՀՈՎՀ. ՀԱԿՈԲՅԱՆ

Դասակարգային հասարակության ամբողջ պատմությունն անհերքելիորեն ապացուցել է, որ ոչ մի դասակարգ չի կարող տիրապետության հասնել, ձեռքի տակ չունենալով իր հակառակորդներին հնազանդեցնելու անհրաժեշտ միջոցներ։ Եվ տերերը ստեղծել են իրենց քաղաքական կազմակերպությունը՝ պետությունը։ Նրանք կառուցել են բանտեր ու զորանոցներ, վարձել են դահիճներ ու հարկահավաքներ, հավաքագրել են հոգևոր ու աշխարհիկ սպասարկուներ, որպեսզի փոխադարձաբար երաշխավորելով իրենց ունեցվածքն ու շահերը, հասարակության հսկայական մեծամասնությանը ստիպեն աշխատել փոքրամասնության համար։

«Պատմությունը ցույց է տալիս,— գրում է Վ. Ի. Լենինը,— որ պետությունը, իբրև մարդկանց հարկադրման հատուկ ապարատ, առաջացել է միմիայն այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ հանդես է եկել հասարակության բաժանումը դասակարգերի,— նշանակում է, մարդկանց այնպիսի խմբերի բաժանվելը, որոնցից ոմանք շարունակ կարող են յուրացնել ուրիշների աշխատանքը, որտեղ մեկը շահագործում է մյուսին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 585)։ Պետությունը, որպես կանոն, միշտ էլ եղել է այն դասակարգի քաղաքական տիրապետության գործիքը, որը գերիշխում է նյութական բարիքների արտադրության ոլորտում։ Պետությունը մասնավոր սեփականության և շահագործման հարաբերությունների ծնունդ է։

Բուրժուազիան պատմության թատերաբեմ իջավ Ազատության, Հավասարության և Եղբայրության հրապուրիչ լոզունգներով։ Բայց ի՞նչ փոխվեց աշխատավոր դասակարգերի կյանքում։ Ազատությունը, որը բուրժուական մասնավոր սեփականատիրության պայմաններում նշանակում էր բանվորական ուժի առ ու ծախի, շահագործման ազատություն, բացից սոցիալական ու տնտեսական անհավասարության մի նոր, խոր անդունդ։ Ընկեր Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ՝ այսօր, ինչպես և դարեր առաջ, «մեր առջև է սոցիալական անհավասարության մի հրեշավոր բուրգ։ Նրա գագաթին գտնվում են մի բուռ արդյունաբերական ու ֆինանսական օլիգարխիաներ։ Հռոմեական կայսրության անկման ժամանակաշրջանի այլասերված ավագանու նման նրանք շվայտ ու շռայլ կյանք են վարում և ծայրաստիճան հղփացած են։ Միևնույն ժամանակ այդ բուրգի հիմքը կազմող հարյուր միլիոնավոր մարդիկ մատնված են զրկանքների ու իրավազրկության»։

Բավական է նշել, որ ներկայումս ԱՄՆ-ում հարուստների մի նեղ շրջան՝

բնակչության մեկ տոկոսը, իր ձեռքում է պահում ազգային հարստության 60 տոկոսը, իսկ Անգլիայում՝ 50 տոկոսը։

Պատմության հորիզոնում պրոլետարիատի, որպես ամենաաուլյուցիոն դասակարգի հայտնվելը ոչ պատահականություն էր և ոչ էլ որևէ մեկի հորինածը։ Նա կապիտալիստական մեքենայական արտադրության ծնունդ է, որն այնքան է հարստությունը կենտրոնացրել մի բևեռում, որ մյուս բևեռում մարդկանց ապրուստի այլ միջոց չի մնացել, քան սեփական աշխատուժը վաճառքի հանելը։ Պրոլետարիատի ռևոլյուցիոն էությունը որոշվում է հենց նրանով, որ նա սեփականություն չունի և նրա պայքարը հետապնդում է հանուրի շահերը։ Պրոլետարիատը մարդավայել ապրելու միակ ելքը տեսնում է արտադրության միջոցների ու գործիքների մասնավոր, կապիտալիստական սեփականության ոչնչացման և հանրային սեփականության հաստատման մեջ, որը վերջին հաշվով հանգեցնում է դասակարգերի շահագործման ամեն մի ձևի ոչնչացման։ Բայց սա ունենում է նաև մի այլ արդյունք՝ վերացնելով հակամարտությունը արտադրական հարաբերություններում, պրոլետարիատը վերացնում է նաև հասարակության մի մասի իշխանության անհրաժեշտությունը մյուս մասի նկատմամբ։ Ինչպես գրում է Էնգելսը՝ «Դասակարգերի անհետացման հետ անխուսափելիորեն կչքանա նաև պետությունը։ Այն հասարակությունը, որ արտադրությունը նոր ձևով կկազմակերպի, արտադրողների ազատ և հավասար ընկերակցության հիման վրա, ամբողջ պետական մեքենան կուղարկի այնտեղ, որտեղ այնուհետև նրա իսկական տեղը կլինի, այն է՝ հնությունների թանգարանը, ճախարակի և բրոնզե կացնի կողքին» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, Հայպետհրատ, 1950 թ., էջ 412—413)։

Սակայն կապիտալիստական կարգերի ռևոլյուցիոն փոխակերպումը անդասակարգ հասարակության մի պարզ և կարճատև պրոցես չէ։ Որպեսզի պրոլետարիատը, որպես ճնշված դասակարգ փոխի իր գոյության կենսապայմանները, նա նախ պետք է ունեզրկի ունեզրկողներին, իսկ այնուհետև վերացնի նաև բարիքների բաշխման մեջ գոյություն ունեցող անարդարությունը։ Բայց չէ՞ որ ոչ մի դասակարգ չի զիջում իր արտոնություններն առանց դիմադրության։ Դրա համար էլ ինչպես ամեն մի, այնպես էլ պրոլետարական ռևոլյուցիայի հիմնական հարցը եղել է և մնում է քաղաքական իշխանությունը նվաճելու և դիմադրող դասակարգերի նկատմամբ դիկտատուրա հաստատելու հարցը։ Սակայն, ի տարբերություն մյուս ռևոլյուցիաների, սոցիալիստական ռևոլյուցիան չի ավարտվում իշխանության գրավմամբ, որովհետև սոցիալիստական կացութաձևը ծնունդ չի առնում կապիտալիստական հարաբերությունների ընդերքում։ Այն պետք է նոր ստեղծվի։ Պրոլետարիատի դիկտատուրան հաղթանակած բանվոր դասակարգի դասակարգային պայքարի և նրա ստեղծագործական էության դրսևորման մի ձև է։

«Պրոլետարիատի դիկտատուրան,— նշվում է մեր պարտիայի Ծրագրում,— դա ճնշող մեծամասնության դիկտատուրան է փոքրամասնության նկատմամբ, այն ուղղված է շահագործողների դեմ, ժողովուրդների և ազգերի ճնշման դեմ, ծառայում է մարդու կողմից մարդու ամեն տեսակ շահագործումը ոչնչացնելու նպատակին։ Պրոլետարիատի դիկտատուրան արտահայտում է ո՛չ միայն բանվոր դասակարգի, այլև ամբողջ աշխատավոր ժողովրդի շահերը, նրա գլխավոր բովանդակությունը ոչ թե բռնությունն է, այլ ստեղծումը, կառուցումը նոր, սոցիալիստական հասարակարգի, նրա նվաճումների պաշտպանությունը սոցիալիզմի թշնամիներից»։



Սոցիալիստական բոլոր երկրների և, հատկապես, մեր երկրի օրինակը ակնառու ցուցադրում է թե հասարակության վերակառուցման ինչպիսի հզոր միջոց է մարքսիստական-լենինյան պարտիաների կողմից ղեկավարվող բանվոր դասակարգի դիկտատուրայի պետությունը։ Սովետական իշխանության տարիներին մեր երկրի արդյունաբերությունն աճել է ավելի քան 45 անգամ։ Այնտեղ, ուր առաջ տիրում էին տգիտությունն ու խավարը, այժմ ստեղծվել են աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայաններն ու տիեզերանավերը։ Սակայն զարգացման դիալեկտիկան կայանում է նրանում, որ ո՛չ միայն սոցիալիստական պետությունն է ներգործում հասարակության վրա, այլև, հասարակությունն ինքը ևս զարգանալով ու փոփոխվելով վճռական ներգործություն է ունենում պետության վրա։ Շահագործողական դասակարգերի վերացումը, սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը և մեր երկրի հաղթական մուտքը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, հասցրին նրան, որ, ինչպես նշված է պարտիայի Ծրագրում, «Պրոլետարիատի դիկտատուրան կատարեց իր պատմական միսիան ու ներքին զարգացման խնդիրների տեսակետից դադարեց ՍՍՌՄ-ում անհրաժեշտ լինելուց»։

Բայց դա նշանակո՞ւմ է արդյոք, որ բանվոր դասակարգը արդեն սպառել է իր ղեկավար դերը սոցիալիստական պետության սիստեմում։ Իհարկե, ոչ։ Մեր երկրի բանվոր դասակարգը նոր հասարակարգի կառուցման առաջամարտիկը լինելու պատիվը նվաճել է պրոլետարիատի դիկտատուրա հաստատելուց դեռ շատ առաջ։ Նա փառքով պսակեց իրեն սոցիալիզմի համար մղված հերոսամարտերում։ Նա հանդես է գալիս նաև որպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի, նոր, կոմունիստական հարաբերությունների ստեղծման դրոշակակիրը։ «Հասարակության ղեկավարի իր դերի կատարումը,— նշվում է պարտիայի Ծրագրում,— բանվոր դասակարգը կավարտի կոմունիզմի կառուցմամբ, երբ կվերանան դասակարգերը»։

Պարտիայի Ծրագրի այս նոր դրույթները ջարդուփշուր են անում բուրժուական և ռեֆորմիստական գաղափարախոսների այն հերյուրանքները, թե իբր բանվոր դասակարգին հատկանշական է «եսապաշտությունը», իսկ կոմունիստները «բռնության», թելադրանքի կողմնակիցներ են։

Բանվոր դասակարգը պատմության մեջ միակ դասակարգն է, որը նպատակ չի դնում հավերժացնել իր տիրապետությունը։ Ըստ որում պրոլետարիատի դիկտատուրան հասարակությանը ղեկավարելու անցողիկ ձև է միայն և խարսխվում է ոչ թե ինչ-որ մեկ դասակարգի, «եսապաշտության» վրա, այլ հանդես է գալիս բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի ձևով, որովհետև բանվոր դասակարգը չի կարող կատարել աշխատանքը կապիտալի շղթաներից ազատագրելու իր միսիան, առանց համագործակցելու ոչ պրոլետարական աշխատավոր մասսաների, առաջին հերթին՝ գյուղացիության հետ։ Միաժամանակ, հենց այդ դաշինքն էլ հանդիսանում է այն պատվանդանը, որի վրա սոցիալիստական շինարարության ընթացքում կազմավորվում է ողջ հասարակության բարոյա-քաղաքական, գաղափարական միասնությունը, որը և ավելորդ է դարձնում մի դասակարգի տիրապետությունը մյուսի նկատմամբ։ «Պետությունը,— հռչակվում է պարտիայի Ծրագրում,— որը առաջ եկավ

որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետություն, նոր, ժամանակակից փուլում վերածվեց համաժողովրդական պետության, դարձավ ամբողջ ժողովրդի շահերն ու կամքն արտահայտող օրգան»։

«Համաժողովրդական պետություն» հասկացությունը նոր է մարքսիզմ-լենինիզմի տերմինոլոգիայի մեջ, որը բովանդակում է նոր որակ հասարակության քաղաքական կառուցվածքում՝ անցում դասակարգային, պրոլետարական դեմոկրատիայից համաժողովրդական դեմոկրատիայի։

Իսկ ինչո՞ւմն է կայանում դրա էությունը։



«Սովետական համաժողովրդական պետությունը» և «Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը» նույնական չեն, բայց և չի կարելի պատնեշ դնել այդ երկուսի միջև։

Սոցիալիստական պետությունը ծնվում է պրոլետարիատի դիկտատուրայի հետ միասին։ Սակայն բանվոր դասակարգի դիկտատուրան ավելի շուտ է դադարում անհրաժեշտություն լինելուց, քան պետությունը կմահանա։ Պետությունը որպես համաժողովրդական կազմակերպություն կպահպանվի մինչև կոմունիզմի լիակատար հաղթանակը։ Հետևաբար համաժողովրդական պետությունը ինչ-որ նոր, իր նախորդը չունեցող կատեգորիա չէ։ Այն՝ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը աստիճանաբար համաժողովրդական քաղաքական կազմակերպության վերաճելու արդյունքն է, սոցիալիստական պետության զարգացման նոր, բարձրագույն աստիճանը։ Եթե պրոլետարիատի դիկտատուրայի պետության խնդիրներն ու ֆունկցիաները թելադրվում էին մեր երկրում սոցիալիզմի կառուցման շահերով, ապա համաժողովրդական պետության անհրաժեշտությունը պայմանավորվում է հասարակության զարգացման ավելի բարձր էտապի՝ կոմունիզմի կառուցման պահանջներով։ Ինչպես նշված է պարտիայի նոր Ծրագրում, «Արտահայտելով ժողովրդի կամքը, նա կոչված է կազմակերպելու կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, սոցիալիստական հարաբերությունների վերափոխումը կոմունիստական հարաբերությունների, վերահսկողությունն իրագործելու աշխատանքի և սպառման չափի նկատմամբ, ապահովելու ժողովրդի բարեկեցության վերելքը, պահպանելու սովետական քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները, սոցիալիստական իրավակարգը և սոցիալիստական սեփականությունը, ժողովրդական մասսաներին դաստիարակելու գիտակցական կարգապահության և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, հուսալիորեն ապահովելու երկրի պաշտպանությունն ու անվտանգությունը, զարգացնելու եղբայրական համագործակցությունը սոցիալիստական երկրների հետ, պաշտպանելու ընդհանուր խաղաղության գործը և նորմալ հարաբերություններ պահպանելու բոլոր երկրների հետ»։

Համաժողովրդական պետության այս խնդիրներից շատերը հատուկ են եղել նաև պրոլետարիատի դիկտատուրայի պետությանը։ Սակայն փոփոխված սոցիալ-տնտեսական պայմաններին համապատասխան նրանք հարստացել են նոր բովանդակությամբ, այդ խնդիրների իրագործման նոր ձևերով ու մեթոդներով։



Ինչո՞ւմն է կայանում այդ նորը։ Սոցիալիստական շինարարության առաջին էտապում պետությունը հանդես է գալիս որպես բանվոր դասակարգի կամքի արտահայտիչ։ Ճիշտ է, բանվոր դասակարգը հենց սկզբից հենվում է ոչ պրոլետարական աշխատավորական մասսաների վստահության և օժանդակության վրա, բայց, որպես միակ սոցիալիստական դասակարգ, նա ոչ մեկի հետ չի կիսում իր քաղաքական իշխանությունը։ Այն չափով, ինչ չափով գյուղացիությունը կապիտալիստական ուղուց աստիճանաբար անցում է կատարում սոցիալիստական զարգացման ուղու վրա և հասարակության մյուս խավերն էլ ձեռք են բերում սոցիալիստական բնույթ, այդ չափով էլ բանվոր դասակարգի պետությունը վեր է ածվում սոցիալիստական հասարակության բոլոր աշխատավորների կազմակերպության։ Եվ, չնայած դեռ այսօր էլ պահպանվում են բանվորների և գյուղացիների դասակարգերի միջև եղած որոշ տարբերությունները, պետությունը դադարել է մի դասակարգի տիրապետության գործիք լինելուց և դարձել է ողջ ժողովրդի իղձերի ու ձգտումների իսկական արտահայտիչը։

Համաժողովրդական պետությունն իր էությամբ սոցիալիստական նոր, բարձրագույն տիպի պետություն է, որի նմանը դեռևս չի ծնվել մարդկային պատմության ողջ ընթացքում։

Դեռևս Սովետական իշխանության արշալույսին Վ. Ի. Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը բնորոշել է որպես նոր ձևով դեմոկրատական (պրոլետարների և չունևորների համար ընդհանրապես) և նոր ձևով դիկտատորական (ընդդեմ բուրժուազիայի)։ Հասկանալի է, որ մեր երկրում շահագործողական դասակարգերի վերացմամբ պատմության գիրկն անցավ նաև քաղաքական տիրապետության դիկտատորական ֆունկցիան, հետևաբար փոխվեց նաև պետության կողմից կիրառվող հարկադրանքի սոցիալական բնույթը։ Հարկադրանքը, որ դասակարգային պայքարի սուր պահերին վճռական դեր էր խաղում, վերջնականապես մղվեց ետին պլան։ Այն դադարեց սոցիալական պրոբլեմները լուծելու միջոց լինելուց։ Համոզումը, որ առաջ էլ նոր հասարակարգի կառուցման գլխավոր մեթոդն էր, գնալով ավելի ու ավելի համապարփակ դարձավ համաժողովրդական պետության գործունեության մեջ։ Այսօր արդեն մեր երկրում այլևս չկան քաղաքական շարժառիթներով բանտարկված անձինք։ Սա սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության մեծ հաղթանակն է։ Ներկայումս օրակարգի հարց է դարձել քրեական հանցագործությունների իսպառ վերացումը մեր հասարակության կյանքից։ «Աշխատավորների նյութական ապահովության, կուլտուրական մակարդակի և գիտակցության աճը,— նշվում է ՍՄԿՊ Ծրագրում,— բոլոր պայմաններն ստեղծում է, որպեսզի արմատախիլ արվի հանցագործությունը, վերջին հաշվով քրեական պատժի միջոցները փոխարինվեն հասարակական ներգործության ու դաստիարակության միջոցներով»։ Այժմ սովետական պետությունն իր գլխավոր ուշադրությունն ուղղում է հանցագործությունների կանխմանը, բայց նա կանգ չի առնում խիստ պատժամիջոցների առաջ բոլոր նրանց նկատմամբ, ովքեր կատարում են հասարակության համար վտանգավոր հանցանքներ, խախտում են սոցիալիստական համակեցության կանոնները, չեն ցանկանում մասնակցել ազնիվ աշխատանքային կյանքին։ Չէ՛ որ մենք չենք կարող մեզ հետ միասին կոմունիզմ տանել պորտաբույծներին և ժողովրդական բարիքը հափշտակողներին։

Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը համաժողովրդական պե-

տության վերացնելու կապակցությամբ էական փոփոխություններ են տեղի ունեցել նաև ՍՍՌՄ քաղաքական հիմքում։ Սովետները, որ ծնվեցին ռևոլյուցիայի բոցերում, որպես իշխանության համար մղվող պայքարի օրգաններ, այսօր արդեն դարձել են ամբողջ ժողովրդի համապարփակ կազմակերպություն, հասարակական պետական գործունեության դպրոց միլիոնների համար։ Այս բանը ցույց տալու համար բավական է բերել հետևյալ տվյալները։ Եթե 1917 թվականին Սովետների ընտրությանը մասնակցել է 40 միլիոն ընտրող, իսկ 1937 թվականին՝ 90 միլիոն, ապա 1961 թվականին Սովետների ընտրությանը մասնակցեց ավելի քան 138 միլիոն ընտրող, այսինքն՝ 3,5 անգամ ավելի, քան Սովետների իշխանության առաջին տարում։ Ներկայումս Սովետների դեպուտատներ են ավելի քան մեկ միլիոն 800 հազար քաղաքացի, իսկ 3,5 միլիոն մարդ մասնակցում են Սովետների մշտական հանձնաժողովների աշխատանքին։ Բայց արդյո՞ք Սովետները երկրի կառավարմանը բնակչության մասնակցության միակ ձևն են։ Ներկայումս տարբեր հասարակական կազմակերպություններում, աշխատավորական ընկերություններում և սովետական հասարակայնության ամենաբազմազան ինքնագործ օրգաններում ընդգրկված են ավելի քան 100 միլիոն մարդ, որոնք այս կամ այն կերպ նույնպես ակտիվորեն միջամտում են երկրի տնտեսական, քաղաքական, հասարակական կյանքին։ Այս ամենը խոսում է այն մասին, որ այսօր արդեն, ընկեր Խրուշչովի արտահայտությամբ, «Ամեն մի բանվոր, ամեն մի գյուղացի, ամեն մի ինտելիգենտ կարող է ասել՝ պետությունը մենք ենք, նրա քաղաքականությունը մեր քաղաքականությունն է, այն զարգացնելու և ամրապնդելու, ամեն տեսակ ոտնձգություններից այն պաշտպանելու խնդիրը մեր խնդիրն է»։ Բայց դա նշանակո՞ւմ է արդյոք, որ սովետական պետությունը սպառել է դեմոկրատիայի ընդլայնման, հետևաբար, իր զարգացման հեռանկարները։

Սոցիալիզմը ստեղծեց պետության կառուցվածքը որոշելու և այն կառավարելու բոլորի համար հավասար հնարավորություններ։ Այսօր, երբ այդ հնարավորություններից օգտվում է մեր երկրի ամբողջ չափահաս բնակչությունը՝ առաջնակարգ հարց է դառնում դեմոկրատիայի է՛լ ավելի ընդլայնումն ու կատարելագործումը։ Ահա թե ինչու պարտիայի Ծրագրի բնորոշմամբ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունն է սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալումն ու կատարելագործումը, բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի գործունեության բարելավումը և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացումը։

Սովետական համաժողովրդական պետության զարգացման գլխավոր ուղղությունը բնորոշելիս պարտիան ելել է մարքս-լենինյան այն դրույթից, որ ժողովուրդն է պատմության կերտողը, կոմունիզմի կառուցումը ժողովրդի ձեռքի, նրա եռանդի, նրա բանականության գործն է։ Կոմունիզմի հաղթանակը կախված է մարդկանցից, և կոմունիզմը մարդկանց համար է կառուցվում։ Իսկ այդ նպատակին կարելի է հասնել միայն մասսաների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության համակողմանի զարգացման, նրանց անսպառ փորձը տնտեսական, կուլտուրական, քաղաքական շինարարության պրակտի-



կայում լայնորեն կիրառելու միջոցով։ Եվ որքան կատարելագործվի դեմոկրատիան, որքան ընդլայնվեն Սովետական պետության կապերը ժողովրդի հետ, որքան ավելի շատ մարդիկ իրենց բանականության ուժը ներդնեն պետական գործերի կառավարման մեջ, այնքան ավելի արագընթաց կլինի շարժումը դեպի կոմունիզմ։



Պարտիայի նոր Ծրագրում հետագա զարգացում է ստացել նաև պետության մահացման մասին մարքսիստական-լենինյան ուսմունքը, որը բանվոր դասակարգի փորձաքարն է դարձել թշնամիներին բարեկամներից զատելու համար։ Պետությունը կարող է մահանալ ոչ թե ժամանակակից սոցիալիստական պետության լիկվիդացման միջոցով, ինչպես բարբաջում են ռևիզիոնիստները, այլ սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնման ճանապարհով։ Բանը նրանում է, որ սոցիալիստական պետությունը նոր տիպի պետություն է, Լենինի դիպուկ արտահայտությամբ այդ արդեն անցման պետություն է, այդ այլևս պետություն չէ իսկական իմաստով, որովհետև ոչ թե փոքրամասնությունն է իշխում մեծամասնության վրա, այլ ժողովրդի մեծամասնությունն է ղեկավարում հասարակությանը։ Եթե բուրժուական պետությունը համարվում է «ուժեղ», երբ կարողանում է իր օրորոցի մեջ խեղդել աշխատավորների ամեն մի գիտակցված պահանջ, ապա սոցիալիստական պետությունն անպարտելի է աշխատավորների գիտակցականությամբ, երբ նրանք ամեն ինչի մասին գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչին գնում են գիտակցաբար։ Այստեղից էլ այն դիալեկտիկական ամբողջությունը, թե որքան համապարփակ է դեմոկրատիան, այնքան ամուր է պետությունը, բայց հենց այդ դեմոկրատիայի մեջ էլ, ինչպես բարեբեր հողը գցված հատիկի մեջ, պարունակվում է սոցիալիստական պետության մահացման սաղմը։

Բայց մի՞թե սա նշանակում է, որ պետության մահացումը մի ինչ-որ տարերային պրոցես է, և կամ էլ կարող է թելադրվել որևէ մեկի ցանկությամբ։ Իհարկե, ոչ։ Բոլոր դեպքերում չէ, որ պետությունը կարող է մահանալ, և բոլոր պետությունները չէ, որ այդպես կանհետանան։ «Պետության մահացման համար,— նշվում է պարտիայի Ծրագրում,— անհրաժեշտ են ինչպես ներքին պայմաններ՝ զարգացած կոմունիստական հասարակարգի կառուցումը, այնպես էլ արտաքին պայմաններ՝ սոցիալիզմի հաղթանակն ու ամրապնդումը միջազգային ասպարեզում»։ Այստեղից հետևում է, որ պետության մահացումը ոչ թե նպատակ է, ինչպես պնդում են ռևիզիոնիստները, այլ արդյունք։ Պետությունը կմահանա միայն լիակատար կոմունիզմի օրոք։

Սոցիալիզմից կոմունիզմին անցումը օրինաչափ, անխուսափելի պրոցես է, բայց այստեղ քանակի փոխարկումը որակի տեղի է ունենում կառավարման, սոցիալիզմի ձևերն աստիճանաբար կոմունիստականի վերաճելու ճանապարհով։ Ինչպես կոմունիզմն է ծնվում սոցիալիզմից, այնպես էլ ապագա կոմունիստական ինքնավարությունը սկիզբ է առնում սոցիալիստական հասարակության այժմյան քաղաքական կազմակերպությունից։ Պետության մահացման պրոցեսը հարատևում է և ընդգրկում սոցիալիստական հասարակությունը կոմունիստականով վերափոխելու ամբողջ ժամանակաշրջանը։

Իսկ ինչո՞վ է արտահայտվում սոցիալիստական պետականությունը կոմունիստական ինքնավարության վերաճելու, կամ պետության մահացման պրոցեսը։

Նախքան այս հարցին պատասխանելը պետք է նկատի ունենալ, որ պետությունը ո՛չ միայն հետևանք է, այլև միջոց։ Սոցիալիստական պետության մահացումը տեղի է ունենում այնպիսի աստիճանականությամբ և այն չափով, ինչպիսի աստիճանականությամբ և ինչ չափով սեղմվում են հասարակական այն երևույթների շրջանակները, որոնք պահանջում են պետական, հարկադրական օրգանների միջամտությունը։ Այսպես, մեր երկրում շահագործողական դասակարգերի վերացման հետ միասին մահացավ պետության դիկտատորական կողմը։ Մոտ ժամանակներս պետությունն ամբողջությամբ կդադարի օգտվել իր բնորոշ հատկանիշներից մեկից՝ բնակչությունից հարկեր գանձելու իրավունքից։ Բարիքների կոմունիստական առատության ստեղծումը ավելորդ կդարձնի բաշխման իրավական կարգավորումը, իսկ հանցագործությունների իսպառ վերացման հետևանքով կվերանա նաև հանցագործների նկատմամբ հարկադրանք կիրառելու անհրաժեշտությունը և այլն։

Ինչ վերաբերում է սոցիալիստական պետության արտաքին անհրաժեշտությանը, ապա այն պայմանավորված է իմպերիալիզմի առկայությամբ, իսկ նրա մահացման նախադրյալները ստեղծվում են համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման ու աճի ընթացքում։ Քանի դեռ գոյություն ունեն արևմտյան տերությունների ագրեսիվ ռազմական բլոկները, այնուհետև ևս կամրապնդվեն ու կկատարելագործվեն սովետական պետության զինված ուժերը, պետական անվտանգության օրգանները, որոնք կոչված են խափանելու իմպերիալիստական ագրեսորների պրովոկացիոն գործողություններն ու մեքենայությունները։

Իսկ ի՞նչ բախտ կվիճակվի սովետական պետության մյուս ֆունկցիաներին։ Սոցիալիստական պետության գործունեության այն կողմերը, որոնք կոչված են կատարելու տնտեսական, կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական դեր, գնալով ավելի կզարգանան, կամրապնդվեն, որովհետև կոմունիստական հասարակարգի կառուցման համար անհրաժեշտ է արտադրողական ուժերի հսկայական աճ և աշխատանքի բարձր արտադրողականություն։ Իսկ սա իր հերթին պահանջում է աշխատանքի անխափան կազմակերպում, կուլտուրայի և ողջ բնակչության գիտակցության բարձր մակարդակ։ Պետության մահացումը այստեղ կդրսևորվի այն բանում, որ սոցիալական պրոցեսների կարգավորումը պետական օրգաններից աստիճանաբար անցնելով ողջ հասարակությանը, կկորցնի իր քաղաքական բնույթը։ «Տնտեսության և կուլտուրայի կառավարման ներկայիս պետական ֆունկցիաների համանման հասարակական ֆունկցիաները,— նշված է պարտիայի Ծրագրում,— կպահպանվեն նաև կոմունիզմի օրոք, կերպարանափոխվելով և կատարելագործվելով հասարակության զարգացմանը համապատասխան։ Բայց դրանց իրականացման բնույթն ու եղանակները տարբեր կլինեն...»։ Իսկ ի՞նչ է նշանակում սա։ Մի՞թե կոմունիզմի օրոք գոյություն չի ունենա որևէ կարգ և հասարակության մեջ կթագավորեն կամայականությունն ու անարխիան, ինչպես ձգտում են գործը պատկերել մեր թշնամիները։

Հեռուն չգնալու համար պատկերացնենք մի նավ բաց ծովում, որի տախ-



տակամածի վրա գտնվում են հարյուրավոր ուղևորներ։ Ի՞նչ կարող է պատահել այդ նավի հետ, եթե չլինի նավավարի հեղինակությունը։ Փորձության ժամին ամեն մեկը փրկության հույսով ջուրը կնետվի։ Սպառնալիքի տակ կդրվի և՛ ուղևորների, և՛ նավի գոյությունը։ Նման երևույթի մենք հանդիպում ենք հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Եվ պատահական չէ, որ Էնգելսն ասում էր. անկախ մարդկանց հասարակական կազմակերպման ձևից մենք միշտ կունենանք մի կողմից որոշակի հեղինակություն, այսինքն՝ իշխանություն, իսկ մյուս կողմից որոշակի ենթակայություն։ Առանց այդպիսի հեղինակության չի կարող կառավարվել նաև կոմունիստական հասարակությունը։ Բայց դա կլինի այնպիսի հեղինակություն, այնպիսի իշխանություն, որին կենթարկվեն առանց բացառության բոլորը, ոչ թե արտաքին ճնշման, այլ հասարակական պարտքի խոր ըմբռնման ուժով։ Չէ՛ որ հիմա էլ, մեր մարդկանց ճնշող մեծամասնությունը ինքնակամորեն կատարում է պետության պահանջները ոչ թե այն պատճառով, որ նա ի վիճակի է հարկադրելու, այլ պարզապես այն պատճառով, որ մարդիկ այդ պահանջներում տեսնում են հասարակական շահը և դրանց կատարումը համարում են իրենց սրբազան պարտքը։

Այսպիսով, չի կարելի կոմունիզմը պատկերացնել որպես մի անարխիկ և անկազմակերպ հասարակություն, որտեղ ամեն ոք կարող է անել այն, ինչ ինքը կցանկանա։ Հասարակության գործերի կառավարումն այստեղ կկենսագործվի որոշակի հասարակական մեխանիզմի կողմից, որը չունենալով քաղաքական բովանդակություն, ավելի զորեղ կլինի, քան ժամանակակից պետությունը, հենց միայն այն պատճառով, որ նա օժտված կլինի բարոյական հսկայական հեղինակությամբ՝ հասարակության բոլոր անդամների աչքում։ Եվ ինչպե՞ս կարող է հեղինակավոր չլինել, երբ հասարակության ամեն մի անդամ ո՛չ միայն կմասնակցի ընտրություններին, այլև իրականում կղեկավարի, կկառավարի, կվերահսկի։

Իսկ որո՞նք են սոցիալիստական պետականությունը կոմունիստական հասարակական ինքնակառավարման վերաճելու հիմնական ուղիները։ Սրանք արդեն, հեռավոր ապագայի հարցեր չեն։ Այս հարցերը վաղուց են դուրս եկել տեսության շրջանակներից և դարձել սովետական ժողովրդի գործնական խնդիրը։ Կոմունիստական հասարակական ինքնակառավարման անցնելու գլխավոր ուղիներից մեկը հանդիսանում է Սովետների դերի հետագա բարձրացումը, որպես ժողովրդական իշխանության և հասարակական ինքնակառավարման օրգանների։ Պարտիայի Ծրագիրն այսօր արդեն առաջարկում է Սովետների աշխատանքը բարելավելու և նրանց մեջ նոր ուժեր ներգրավելու այնպիսի ձևեր ու մեթոդներ, որ պետության կառավարման դպրոցն անցնեն նորանոր, հարյուր հազարավոր և միլիոնավոր աշխատավորներ։ Պարտիան նպատակահարմար է գտնում յուրաքանչյուր ընտրության ժամանակ նորացնել Սովետների կազմը, լիովին իրականացնել՝ Սովետների և նրանց դեպուտատների կանոնավոր հաշվետվությունը ընտրողների առջև, վստահությունը չարդարացրած դեպուտատներին ժամկետից շուտ ետ կանչելու՝ ընտրողների իրավունքը, պետական կառավարման, տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր կարևոր հարցերի հրապարակային, ազատ ու բազմակողմանի քննարկումը։ Ըստ որում, տեղական Սովետների մշտական հանձնաժողովների լուծմանը կտրվեն վճարովի գործադիր օրգանների, վարչությունների և բաժինների իրավասությանը ենթա-

կա ավելի ու ավելի մեծ թվով հարցեր։ Կընդլայնվի հասարակական կազմակերպությունների և աշխատավորների միավորումների մասնակցությունը սովետական պետության ներկայացուցչական օրգանների օրենսդրական գործունեությանը, լայն ծավալ կստանա աշխատավորների կողմից ինչպես համապետական, այնպես էլ տեղական նշանակություն ունեցող օրենքների և մյուս որոշումների նախագծերի քննարկումը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հսկայական չափերով կաճի նաև հասարակական կազմակերպությունների դերը։ Պարտիայի նոր Ծրագիրը պահանջում է ընդլայնել հասարակական կազմակերպությունների մասնակցությունը կուլտուրայի, առողջապահության հիմնարկների կառավարման գործին, մոտակա տարիներին նրանց տնօրինությանը հանձնել հանդիսատեսային ձեռնարկությունների, ակումբների, գրադարանների և պետության տնօրինության ներքո գտնվող մյուս կուլտուր-լուսավորական հիմնարկների ղեկավարումը. ընդլայնել նրանց գործունեությունը հասարակական կարգի, հատկապես ժողովրդական դրուժինաների, ընկերական դատարանների ամրապնդման ուղղությամբ։ Պետական օրգանների մի շարք ֆունկցիաների աստիճանական անցումը հասարակական կազմակերպություններին բխում է լենինյան այն դրույթից, որ բոլոր մարդիկ պետք է սովորեն կառավարել հասարակության գործերը։ Սակայն այստեղից չպետք է ենթադրել, որ մոտ ապագայում պետությունն իր անելիքներն ամբողջովին կզիջի հասարակական կազմակերպություններին։ Պետությունը չի կարող աշխատավորների ինքնագործ կազմակերպություններին հանձնել այնպիսի ֆունկցիաներ, որոնք կապված են պետական հարկադրանքի հետ։ Այսպես, օրինակ, քանի դեռ սոցիալիստական համակեցության կանոնները չեն դարձել սովորույթ, պետությունը չի կարող հասարակական կազմակերպություններին հանձնել հատկապես վտանգավոր հանցագործներին, որոնց վերադաստիարակելու համար պահանջվում են հարկադրանքի հատուկ օրգաններ՝ միլիցիա, դատախազություն, դատարան, աշխատանքային ուղղիչ հիմնարկներ։

Պարտիան մեծ նշանակություն է տալիս նաև պետական ապարատի գործունեության բարելավմանը, որը նույնպես կոմունիստական հասարակական ինքնավարության անցնելու ուղիներից մեկն է։ Զէ՛ որ գալիք հասարակության կառավարման ապարատը պետք է լինի պարզ, որակյալ, էժան և օպերատիվ, առանց բյուրոկրատիզմի, ֆորմալիզմի և քաշքշուկի որևէ դրսևորման։ Այդ խնդրի լուծման համար պարտիան անհրաժեշտ է համարում ընտրականության և ներկայացուցչական օրգաններին ու ընտրողներին հաշվետու լինելու սկզբունքը աստիճանաբար տարածել պետական օրգանների բոլոր ղեկավար աշխատողների վրա, գործն այնպես տանել, որ պետական վճարովի ապարատը կրճատվի, որ կառավարման հմտություններին տիրապետեն ավելի ու ավելի լայն մասսաներ, և այդ ապարատում աշխատանքը հետագայում դադարի հատուկ պրոֆեսիա լինելուց։

Սոցիալիստական հասարակության զարգացման արդի էտապում, երբ օրակարգի հարց է դարձել կոմունիզմի կառուցումը, է՛լ ավելի է աճում Կոմունիստական պարտիայի դերը, որպես սովետական ժողովրդի առաջընթացն իմաստավորող և ուղղություն տվող ստեղծարար ուժի։ Որպես կոմունիստական հասարակարգ կառուցող ժողովրդի առաջավոր ջոկատ, պարտիան պետք է առջևվից ընթանա նաև իր ներպարտիական կյանքը կազմակերպելու գործում, ցույց տալով կոմունիստական հասարակական ինքնավարության առավել կատարյալ ձևեր մշակելու օրինակ։



Իսկ ինչպե՞ս է մեզ այսօր ներկայանում ապագա կոմունիստական հասարակական ինքնակառավարումը։ Արդյոք չի՞ կարող պատահել, որ կոմունիստական հասարակության կառուցման որևէ էտապում տնտեսության, կուլտուրայի կառավարման բոլոր ֆունկցիաները իր վրա վերցնի ներկայիս հասարակական կազմակերպություններից որևէ մեկը։ Իհարկե, ոչ։ Կոմունիզմի օրոք կձևավորվի հասարակական ինքնակառավարման մի նոր տիպ, որն իր մեջ կներծծի այն լավը, որ այսօր կա պարտիական, սովետական, արհմիութենական աշխատանքում։ «Սոցիալիստական պետականության զարգացումը,— ասվում է պարտիայի նոր Ծրագրում,— աստիճանաբար կհանգեցնի այն բանին, որ նա կվերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության, որի մեջ կմիավորվեն Սովետները, արհեստակցական միությունները, կոոպերատիվ և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները»։

Եթե կոմունիզմի ժամանակ պետությունը մահանում է, ապա բնականաբար պետք է մահանա նաև իրավունքը։ Սա չի՞ նշանակում արդյոք, որ կոմունիզմի օրոք կանհետանան աշխատանքի, հանգստի, կրթության և մարդու մյուս այն բոլոր իրավունքները, որոնցից օգտվում է մարդը սոցիալիզմի պայմաններում։ Իհարկե, ոչ։ Երբ խոսք է լինում իրավունքի մահացման մասին, նկատի է առնվում իրավական նորմերի պետական հարկադրական բնույթը, և ոչ թե այն հնարավորությունները, որ մարդուն կբերեն դեմոկրատական տրադիցիաները, սովորույթներն ու համակեցության կանոնները։ «Կոմունիզմը,— հռչակում է ՍՄԿՊ Ծրագիրը,— աշխատավորներին կբերի նոր մեծ իրավունքներ ու հնարավորություններ»։

Կոմունիզմը, որն անհամար բարիքներ է բերում մարդուն, իրենից կներկայացնի աշխատանքի մարդկանց բարձր կազմակերպված համագործակցություն։ Ահա այն նվիրական նպատակը, որն այսօր իրականություն է դառնում ազատ ժողովուրդների ստեղծագործական ճիգերով ու աշխատանքով։

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՊԱՏՎԱՐԸ

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի կրակի ու բոցերի մեջ ծնունդ առած Սովետական Զինված Ուժերը անցել են հերոսական ուղի և փառքով օծել իրենց մարտական դրոշները։ Իր կազմակերպման առաջին իսկ օրերին Թվով քիչ, վատ սպառազինված Կարմիր Բանակը Պսկովի ու Նարվայի տակ 1918 թվականի փետրվարին ջախջախիչ հարված հասցրեց իմպերիալիստական Գերմանիայի բանակների գերազանց ուժերին, կանխեց երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի սպառնացող վտանգը։

Թե՛ օտարերկրյա զավթիչների, թե՛ երկրի կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ մղված կռիվներում Սովետական Զինված Ուժերը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, պատվով են կատարել իրենց դերը, պահպանել են մեր երկրի անկախությունը, սովետական ժողովրդի ազատությունը։ Նրանք միշտ եղել են խաղաղության և դեմոկրատիայի հուսալի պատվարը։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան տապալեց բուրժուա-կալվածատիրական կարգերը Ռուսաստանում և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա։ Աշխարհի մեկ վեցերորդ մասում ստեղծվեց նոր, սովետական սոցիալիստական հասարակարգ. կապիտալիզմը դադարեց միակ, համաշխարհային հասարակական սիստեմ լինելուց։ Սկսվեց մարդկության պատմության նոր դարաշրջանը։

Երիտասարդ սովետական ռեսպուբլիկան իր ստեղծման առաջին իսկ օրվանից ցանկանում էր «...խաղաղ ապրել բոլոր ժողովուրդների հետ և իր բոլոր ուժերն ուղղել ներքին շինարարության» (Վ. Ի. Լենին), իմպերիալիստական պատերազմի հետևանքով ծայր աստիճանի քայքայված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու նպատակին։

Սովետական պետության առաջին դեկրետներից մեկը Հաշտության մասին հրապարակած դեկրետն էր, որը երկրագնդի բոլոր ծայրերում խաղաղության, աշխատանքի ու հացի ձգտող միլիոնավոր մարդիկ ընդունեցին խանդավառությամբ։ Սոցիալիստական ռևոլյուցիայի բարձր ծածանվող ալ դրոշը, խաղաղության ու դեմոկրատիայի դրոշը, իր շուրջն էր համախմբում բոլոր երկրների բանվորներին ու կեղեքվածներին։ Իսկ այդ հանգիստ չէր «...տալիս միջազգային գիշատիչներին՝ իմպերիալիստներին...» (Վ. Ի. Լենին)։

Բոլշևիկների պարտիայի ու Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականությանն ու ձգտումներին հակառակ, երկրի ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերը դաշինք կնքած ամերիկյան, անգլիական, ֆրանսիական, ճապոնական ու գերմանական իմպերիալիստների հետ, կովի դուրս եկան աշխարհի առաջին բանվորա-գյուղացիական պետության դեմ։ Նրանց նպատակն էր օրորոցում խեղդել Սովետական իշխանությունը, վերականգնել կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը, իմպերիալիստական պետությունների միջև բաժանել Ռուսաստանը։



Իմպերիալիստական ագրեսիայի և երկրի կոնտրռևոլյուցիոն հրոսակախմբերի հարձակումներից Հայրենիքի պաշտպանությունը դարձավ Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության կարևորագույն հոգսը։ Լենինի գլխավորած Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն վճռում էր երկրի Զինված Ուժերի կազմակերպման, ուսուցման, դաստիարակության և ռեզերվների ստեղծման հարցերը։ «Մենք պաշտպանողականներ ենք այժմ,— գրում է Լենինը,— 1917 թվականի հոկտեմբերի 25-ից, մենք Հայրենիքի պաշտպանության կողմնակիցներ ենք այդ օրվանից... Բայց հենց այն պատճառով, որ մենք կողմնակից ենք Հայրենիքի պաշտպանությանը, մենք պահանջում ենք լուրջ վերաբերվել երկրի պաշտպանունակությանն ու մարտական պատրաստությանը» (Երկեր, հ. 27, էջ 56—57)։

Վ. Ի. Լենինը, պարտիան իրենց բոլոր ջանքերն ուղղեցին Հայրենիքի պաշտպանության համար ամուր և հուսալի զինված ուժեր ստեղծելուն, երկրի բոլոր միջոցները կենտրոնացնելու՝ թշնամուն հակահարված տալու, ռևոլյուցիայի նվաճումները, աշխարհի ամենադեմոկրատական հասարակարգը պաշտպանելու համար։

Ներքին և արտաքին դասակարգային թշնամիներին անմիջական,— ասված է ՌԿ(բ)Պ VIII համագումարի որոշման մեջ,— անհապաղ հակահարված տալու անհրաժեշտությունը ստիպեց մեզ ստեղծելու մշտական Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակ։ Այն իր կազմակերպման առաջին օրվանից հանդիսացավ խաղաղության ու դեմոկրատիայի պաշտպանության պատվարը։

Մեր երկրի Զինված Ուժերի կազմակերպիչն ու նրանց հաղթանակի ոգեշնչողը Վ. Ի. Լենինն էր։ «Սովետական Ռուսաստանը պաշարված է թշնամու կողմից,— ասում էր Լենինը,— նա պետք է միասնական ռազմական ճամբար լինի ոչ թե խոսքով, այլ գործով» (Երկեր, հ. 29, էջ 536)։ Ամեն անգամ, երբ դժվարին դրություն էր ստեղծվում Սովետական ռեսպուբլիկայի համար, Կոմունիստական պարտիան, Վ. Ի. Լենինը դիմում էին բանվորներին, աշխատավորությանը, կոմունիստներին ու կոմերիտականներին՝ կանխելու Հայրենիքին սպառնացող վտանգը։ Կարմիր Բանակում էր կենտրոնացնում պարտիան իր լավագույն ուժերը։ Նրանք ուղարկվում էին ռազմաճակատի ամենաթեժ տեղամասերը, ուր վճռվում էր Սովետական պետության մահու և կենաց հարցը։ Ճակատամարտերի ամենածանր հատվածներում էին գտնվում Լենինի հավատարիմ զինակիցները, բոլշևիկյան պարտիայի ականավոր գործիչները, որոնք մոբիլիզացնում էին բոլոր ուժերը թշնամուն ջախջախիչ հարված հասցնելու համար։ 1918 թվականին, երբ Հարավային ռազմաճակատում ծանր վիճակ էր ստեղծված, պարտիայի կոչով այդ ռազմաճակատը մեկնեցին 2500 կոմունիստներ։ 1919 թվականին Սվերդլովի անվան համալսարանի ունկնդիրների մոտ կեսը որոշեց մեկնել ռազմաճակատ։

*Կոմունիստները գտնվում էին կռվի ամենաառաջավոր դիրքերում, ղեկավարում էին պարտիական-քաղաքական աշխատանքը բանակում, հանդիսանում էին Կոմունիստական պարտիայի ոգու, նրա նպատակների իրականացման համար մղվող պայքարի առաջավոր մարտիկներ։ Զորամասերում կազմակերպվեցին կոմունիստական բջիջներ, որոնք մեծ օգնություն էին ցույց տալիս հրամանատարությանը՝ մարտական առաջադրանքներն անթերի կատարելու համար։*

*Պարտիայի կոչով Սովետական Զինված Ուժերի շարքերն էին համալրում հարյուր հազարավոր բանվորներ ու չքավոր գյուղացիներ։ Նրանք*

Հավաքվեցին բյուրավոր ու բանակ կազմեցին,
Որ մարտնչեն մինչև վերջը, մինչև ոսոխ չմնա:
Ելան ճամփա, ոչ թե սար ու սարի՛ պես անսասան,
Կուրծք տվեցին բյուրավոր անեղազարկ ճարվածի,
Հազար կռիվ արեցին, բայց պարտություն չտեսան,
Հազար կռի՛վ արեցին ու բոլորին ճաղթեցին:

(Ե. Չարենց)

*Այո՛, ավելի քան չորս տարի տևող քաղաքացիական պատերազմում հաղթանակող դուրս եկան կարմիր զորագնդերը։ Այդ Լենինի գաղափարներն էին գոտեմարտի կոչում և հաղթանակի հավատով լցնում մարտիկների ազատատենչ սրտերը։*

*Հայրենիքին սպառնացող ամենաահեղ վտանգի պահին Լենինը հանդես էր գալիս ո՛չ միայն որպես Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության ղեկավար, այլև մեծատաղանդ զորավար ու հմուտ ռազմագետ։ Սովետական ռեսպուբլիկայի բախտը որոշող բոլոր մարտերի ստրատեգիական պլանները մշակվում և իրականացվում էին Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ ու մասնակցությամբ։ Վ. Ի. Լենինը զբաղվում էր Հայրենիքի պաշտպանության բոլոր հարցերով՝ զորագնդերի ու միավորումների կազմավորման և մարտական պատրաստության, ռեզերվների ստեղծման, ռազմական մասնագետների օգտագործման, ռեսպուբլիկայի Զինված Ուժերի օպերատիվ գործերի վարման, զորքերի սպառազինման ու պարենավորման հարցերով։*

*Սպիտակգվարդիականների և ինտերվենտների դեմ սովետական ժողովրդի հաղթական պայքարը ակնառու կերպով հաստատեցին մեծ Լենինի այն մարգարեական խոսքերը, որ «...Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիները իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, Սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը...» (Երկեր, հ. 29, էջ 386)։*



*Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտից հետո, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ աշխատանքի, սոցիալիզմի կառուցումը հաջողությամբ առաջ մղելու գործին։ Սովետական մարդկանց հերոսական ջանքերի շնորհիվ պատմական կարճ ժամանակամիջոցում մեր Հայրենիքը դարձավ հզոր սոցիալիստական տերություն՝ բարձր զարգացած արդյունաբերությամբ, մեքենայացված հանրային գյուղատնտեսությամբ, առաջավոր կուլտուրայով ու գիտությամբ։ Միաժամանակ, Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը երբեք չէին մոռանում, որ մենք շրջապատված ենք կապիտալիստական աշխարհով, որ իմպերիալիստները հետագայում ոտնձգությունների փորձեր կկատարեն մեր Հայրենիքի դեմ, հետևաբար հոգ էին տանում Սովետական Զինված Ուժերի հզորությունն ամրապնդելու, նրանց առաջնակարգ մարտական տեխնիկայով հագեցնելու, նոր, կատարյալ զինվորական կադրեր աճեցնելու համար։*

*Սովետական Միության ինդուստրացման վերաբերյալ պարտիայի քաղաքականության հաղթանակն է՛լ ավելի ուժեղացրեց մեր Հայրենիքի ռազմական հզորությունը, ամրապնդեց նրա պաշտպանունակությունը։ Մեր երկրի Զինված Ուժերը ստացան ժամանակակից նորագույն ռազմական տեխնիկա, ստեղծվեցին առաջնակարգ հրետանի, հզոր զրահատանկային և մեքենայացված զորքեր, ժամանակակից ռազմա-օդային նավատորմ, հակաօդային պաշտպանության միջոցներ։ Սկսվեց ռազմա-ծովային մեծ նավատորմի կառուցումը։*

*Սոցիալիզմի կառուցման գործում Սովետական Միության ձեռք բերած հաջողությունները ուրախացնելով բոլոր երկրների աշխատավորներին, միաժամանակ կատաղի ատելություն էին առաջացնում միջազգային ռեակցիոն ուժերի շրջանում։ Սրվում էին նաև հակասությունները կապիտալիստական մեծ երկրների՝ մի կողմից հիտլերյան Գերմանիայի, Իտալիայի ու Ճապոնիայի, մյուս կողմից՝ Անգլիայի, ԱՄՆ-ի և Ֆրանսիայի խմբավորումների միջև։ Կնքվել էր Բեռլին—Տոկիո—Հռոմ առանցքի տերությունների «հակակոմինտերնական» դաշինք, որն ուղղված էր Սովետական Միության դեմ։ Իմպերիալիզմի պարագլուխները ՍՍՌՄ-ը ոչնչացնելու պլաններ կազմելով՝ ամեն կերպ ձգտում էին այդ նպատակի համար օգտագործել հիտլերյան Գերմանիային։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի կապիտալիստները հուսով էին, որ ավերիչ պատերազմում կթուլանա իրենց մրցակից գերմանական իմպերիալիզմը, իսկ Սովետական Միությունը կոչնչացվի, կամ արյունաքամ կլինի, որի հետ հետագայում հաշիվ մաքրելը շատ հեշտ կլինի։*

*Արևմտյան երկրների մոնոպոլիստների թողտվությամբ ու քաջալերանքով հիտլերյան զավթիչներն առանց պատերազմ հայտարարելու 1941 թվականի հունիսի 22-ին ուխտադրժորեն հարձակվեցին մեր երկրի վրա։*

*Թշնամին Սովետական Միության դեմ դուրս բերեց 190 դիվիզիա։ Պատերազմի սկզբնական շրջանում հիտլերյան բանակը մեր երկրի Զինված Ուժերի համեմատ ուներ մի շարք առավելություններ։ Այդ նրա լիովին մոբիլիզացված լինելն էր, ռազմական տեխնիկայի առանձին տեսակների գերազանցությունը, Եվրոպայում մղած պատերազմի երկու տարվա փորձը և այլն։ Միաժամանակ ՍՍՌՄ-ի վրա հարձակվելու պահին հիտլերյան Գերմանիայի տրամադրության տակ էին գտնվում Արևմտյան Եվրոպայի երկրների մեծ մասի նյութական միջոցներն ու մարդկային ռեզերվները։*

*Օգտվելով այս, ինչպես և հանկարծակի հարձակման առավելություններից, գերմանական հրամանատարությունը ձգտում էր կենտրոնացված հարվածով ոչնչացնել սովետական սահմանամերձ գոտու զորամասերը և «կայծակնային» արագությամբ ներխուժել մեր Հայրենիքի խորքը։ Կարմիր Բանակի սահմանամերձ զորագնդերը ծանր ու արյունահեղ մարտեր մղելով՝ թշնամու գերազանց*

ուժերի ճնշման տակ ստիպված էին իրենց դիրքերից նահանջել դեպի Արևելք։ Հիտլերյան հորդաներին հաջողվեց մարտերի առաջին 15 օրում Արևմտյան ռազմաճակատի ուղղությամբ առաջ շարժվել ավելի քան 400 կիլոմետր։

Պատերազմի սկզբնական շրջանում մեր զորքերի անհաջողությունը հետևանք էր նաև այն բանի, որ ՍՍՌՄ Զինված Ուժերի Գլխավոր շտաբը, Ի. Վ. Ստալինը տեղեկություն ստանալով սովետական սահմանների մոտ գերմանական զորքերի կենտրոնացման մասին, վճռական քայլերի չդիմեցին Կարմիր Բանակի սահմանամերձ օկրուգների միավորումները մշտական մարտական վիճակում պահելու համար։ Հիտլերյան չորրորդ բանակի շտաբի պետ Գ. Բլյումենտրիտը այս առթիվ գրում է. «...Ինչպես մենք ենթադրում էինք, 21-ի (հունիսի։—Ս. Ն.) երեկոյան մոտ ռուսները պետք է իմանային, թե ինչ է կատարվում, բայց Բուգի մյուս ափում՝ 4-րդ բանակի և տանկային 2-րդ խմբավորման ճակատում, այսինքն՝ Բրեստի ու Լոմժայի միջև ամեն ինչ խաղաղ էր։ Ժամը 3 անց 30 րոպեին այդ «Զ» ժամն էր... Մեր ամբողջ հրետանին սկսեց կրակել... ռուսական հրետանին չպատասխանեց։ Մյուս ափից (խոսքը Բուգ գետի Արևելյան ափի մասին է։— Ս. Ն.) հազվադեպ կրակում էր մի թնդանոթ... ռուսները հանկարծակիի էին եկել»։

Պատերազմի հենց առաջին օրվանից թշնամու գերազանց ուժերի դեմ մղած կռիվներում սովետական զորագնդերը, նրանց քաջարի ռազմիկները ցուցադրեցին տոկունության, արիության ու խիզախության չգերազանցված օրինակներ։ Կատաղորեն առաջ սողացող հիտլերականները ավերում ու հրկիզում էին իրենց ճանապարհին ընկած գյուղերն ու քաղաքները, խոշտանգում սովետական անմեղ մարդկանց՝ ծերերին ու մանուկներին. կանանց ու երեխաների արցունքով ու արյունով էր ողողվում հայրենի հողը։

Մռայլ ամպ էր կուտակված մեր Հայրենիքի վրա։ Վճռվում էր Սովետական Միության մահու և կենաց հարցը։ Սոցիալիստական Հայրենիքի համար ստեղծված այդ ծանր ժամանակաշրջանի հենց առաջին օրերին Կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն սովետական ժողովրդին հայրենական սրբազան պատերազմի կոչեց՝ ընդդեմ ֆաշիստական զավթիչների։

Պարտիայի կոչով միլիոնավոր մարդիկ վայր դրին մուրճն ու մանգաղը, համալրեցին սովետական Զինված Ուժերի շարքերը՝ ֆաշիստական հորդաների առաջխաղացումը կասեցնելու համար։ Զորս-հինգ օրում Մոսկվայում կազմակերպվեց ժողովրդական աշխարհազորի 11 դիվիզիա, Լենինգրադում՝ աշխարհազորի շարքերում ընդգրկվեցին 160 հազար մարդ։ Ռազմաճակատ մեկնեցին հարյուր հազարավոր կոմունիստներ ու կոմերիտականներ։

Գրեթե չորս տարի տևեց Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմը։ Սկզբնական շրջանում մղելով գերազանցապես պաշտպանական մարտեր, Սովետական Զինված Ուժերը նահանջելով հանդերձ, մեծ կորուստներ էին պատճառում հակառակորդին, հյուծում, արյունաքամ անում հիտլերյան բանակները։ Սովետական ժողովուրդը մոբիլիզացնում էր իր բոլոր ուժերը թշնամու առաջխաղացումը ո՛չ միայն կասեցնելու, այլև հակահարձակման անցնելու, օտարերկրյա զավթիչներին դուրս մղելու մեր երկրի սահմաններից, նրանց գլխովին ջախջախելու համար։

Մոսկվայի տակ մղած կռիվները, հատկապես Ստալինգրադի երկարատև ճակատամարտերը շրջադարձային կետ հանդիսացան երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության մեջ։ Սովետական Զինված Ուժերը մարտական գործողությունների նախաձեռնությունն իրենց ձեռքը վերցնելով, մեկը մյուսի հետևից ջախջախիչ հարվածներ հասցրին ֆաշիստական բանակներին, նրանց դուրս վռնդեցին մեր հողից ու գլխովին ոչնչացրին իրենց որջում։ Հանդիսանալով խաղաղության ու դեմոկրատիայի պաշտպանության պատվարը, մեր երկրի Զինված Ուժերը օգնության ձեռք մեկնեցին Եվրոպայի ու Ասիայի բազմաթիվ ժողովուրդներին՝ իրենց ուսերից թոթափելու ֆաշիզմի ստրկացուցիչ լուծը։

Հիտլերյան Գերմանիայի պարագլուխները սպասում էին, որ պատերազմի հետևանքով կպառակտվի ՍՍՌՄ ժողովուրդների միասնությունը, որը հնարավորություն կտա ֆաշիստներին հեշտությամբ հաղթել և ստրկացնել սովետական մարդկանց։ Սակայն հիտլերականները սխալվեցին իրենց հաշիվներում։ Հայրենական Մեծ պատերազմի ժամանակաշրջանում ավելի ամրապնդվեց ինչպես մեր երկրի բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղացիության դաշինքը, այնպես էլ բազմազգ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների զավակները, հայրենասիրությամբ տոգորված, համալրում էին Կարմիր Բանակի շարքերը։ Կազմակերպվեցին նաև ազգային զորային միավորումներ, որոնք ռուս մեծ ժողովրդի զավակների հետ կողք-կողքի մարտնչում էին ֆաշիստական զավթիչների դեմ և պատվով կատարում մարտական առաջադրանքները։ 89-րդ հրաձգային հայկական Թամանյան դիվիզիան գեներալ-մայոր Ն. Սաֆարյանի հրամանատարությամբ Կովկասյան նախալեռներից համառ մարտերով Բեռլինի վրայով հասավ Էլբայի ափերը։ Սովետական հզոր բանակի շարքերում հիսունից ավելի հայ հրամանատարներ իրենց ղեկավարած զորամասերի ու միավորումների մարտական գործողությունները հմտորեն վարելու համար արժանացան գեներալի կոչման։ Գեներալներ Իվան Բաղրամյանը (ներկայումս Սովետական Միության Մարշալ), Սարգիս Մարտիրոսյանը, Հայկ Մարտիրոսյանը, Ասքանազ Կարապետյանը, Անդրանիկ Ղազարյանը և ուրիշներ իրենց ղեկավարած միավորումների սխրագործություններով, իսկ նավատորմի հմուտ ծովակալ Իվան Իսակովը իր զորավարական տաղանդով Հայրենական պատերազմի տարիներին հերոսական էջեր գրեցին ՍՍՌՄ Զինված Ուժերի պատմության մեջ։ Ավելի քան հարյուր հայ ռազմիկներ արժանացան Սովետական Միության Հերոսի կոչման։

Հայրենական Մեծ պատերազմն ավարտվեց սովետական ժողովրդի ու նրա հզոր բանակի տարած համաշխարհային պատմական մեծ հաղթանակով։ ՍՍՌՄ-ի թշնամիների կամքին հակառակ, պատերազմի ընթացքում Սովետական Միությունը, նրա Զինված Ուժերի հզորությունը ո՛չ թե թուլացան, այլ գնալով աճեցին, ամրացան ու դարձան անպարտելի։ Հայրենական Մեծ պատերազմում ֆաշիստական զավթիչների ու ճապոնական սամուրայների դեմ մղած կռիվներում հաղթանակ տարան սոցիալիստական հասարակարգը, Սովետական պետական կարգը, մեր Զինված Ուժերը։



Երկրորդ համաշխարհային պատերազմի կարևորագույն արդյունքը եղավ այն, որ խարխլվեց համաշխարհային կապիտալիստական սիստեմը, հանդես

եկավ համաշխարհային սոցիալիստական սիստեմը՝ ՍՍՌՄ-ի գլխավորությամբ։ Այժմ Մարքսի—Լենինի մեծ դրոշը ծածանվում է երկրագնդի մեկ երրորդի վրա։ Սոցիալիզմի լագերում ապրում է մարդկության մեկ երրորդը։

Երբ ավարտվեց երկրորդ համաշխարհային պատերազմը, խաղաղասեր մարդիկ այն համոզման էին, որ ֆաշիստական ագրեսորներին ջախջախելուց հետո կհաստատվի երկարատև խաղաղություն, և մարդկությունը հեռու կմնա նոր պատերազմի արհավիրքներից։

Սակայն վառոդի սև ծուխը, ռումբերի ու արկերի հուժկու պայթյուններից առաջացած փոշին նստած էին ավերված քաղաքների ու գյուղերի վրա, ամերիկյան ոճրագործների գցած ատոմային ռումբերի հետևանքով խեղանդամ դարձած հազարավոր հիրոսիմացիների, նագասակցիների աղերսական ճիչերը դեռ լսվում էին, երբ մարդկությանը սկսեց սպառնալ նոր պատերազմի վտանգը, որը եթե չկանխվի, ավելի կործանարար և աղետալի է լինելու։

Իմպերիալիստական պետությունների արտաքին քաղաքականությունը որոշվում է մոնոպոլիստական կապիտալի դասակարգային շահերով, պետություններ, որոնց օրգանապես հատուկ են ագրեսիաները։ Հանուն այդ բանի էլ, ասում է Ն. Ս. Խրուշչովը, իմպերիալիստները ձգտում են ուժեղացնել լարվածությունը միջազգային հարաբերություններում, խոչընդոտում են միջազգային հասունացած պրոբլեմների խաղաղ կարգավորմանը։ Իմպերիալիստական տերությունների քաղաքականությունը որոշվում է ո՛չ թե խաղաղության և մարդկանց հանգստության շահերով, այլ մոնոպոլիստների հարստացման, իմպերիալիստների տիրապետության պահպանման շահերով։

Հատկապես վերջին տարիներս ռեակցիայի ուժերը բազմիցս սպառնացել են ընդհանուր խաղաղությանը և չեն դադարեցնում միջազգային իրադրությունը սրելու, մարդկությանը պատերազմի եզրին կանգնեցնելու փորձերը։

Նոր պատերազմի հրձիգների առաջին շարքերումն են Ամերիկայի Միացյալ Նահանգների միլիտարիստներն ու Արևմտյան Գերմանիայի ռևանշիստները։ Նրանք իրենց այդ հրեշավոր արարքը ճգնում են արդարացնել «կոմունիստական վտանգից» պաշտպանվելու աղմուկով։

Այստեղից էլ «սառը պատերազմի» հրահրումը, սպառազինության մրցավազքը, ռազմական բլոկների կազմակերպումը, բլոկներ, որոնք ուղղված են խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի, առաջին հերթին՝ ՍՍՌՄ-ի դեմ։ ԱՄՆ-ում տարեցտարի ավելանում են ռազմական ծախսերը. այս տարվա բյուջեով այդ նպատակին հատկացվել է ավելի քան 55 միլիարդ դոլար։ Միայն 1961 թվականի երկրորդ կեսին ԱՄՆ-ի զինված ուժերի անձնակազմը ընդհանուր առմամբ ավելացել է 300 հազար մարդով։ Այդ ժամանակաշրջանում հակապարտիզանական ուժերի անձնակազմն ավելացել է 150 տոկոսով, կրկնապատկվել է պահեստի ստրատեգիական դիվիզիաների թիվը, 70 միավորով ավելացել է ռազմա-ծովային նավատորմը, զինված ուժերն էլ ավելի են հագեցվել միջուկային զենքով։

Անընդհատ աճում է Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի ռազմական բյուջեն։ Գնալով ավելանում է բունդեսվերի (բանակի) անձնակազմը, այն սպառազինվում է նորագույն ռազմական տեխնիկայով և միջուկային զենքով։ Ո՛չ թե տարեցտարի, այլ ամեն ամիս աճում է Արևմտյան Գերմանիայի ռազ-



մական ուժերի գերիշխող դերը ՆԱՏՕ-ում, որի հրամանատարական պոստերը գրավում են գերմանական ավելի քան 200 սպաներ և 18 գեներալներ։ Հիտլերյան բանակի գեներալ-լեյտենանտ, ցամաքային զորքերի գլխավոր շտաբի օպերատիվ վարչության պետ, պատերազմի հանցագործ Ադոլֆ Հոյզինգերը ՆԱՏՕ-ի ռազմական մշտական կոմիտեի նախագահն է։ Ֆրանսիայի օկուպացիայի տարիներին իր դաժանությամբ աչքի ընկած գեներալ Հանս Շպեյդելը ՆԱՏՕ-ի ցամաքային զորքերի Եվրոպական մասի հրամանատարն է։ Արևմտյան Գերմանիան ՆԱՏՕ-ում այնքան դիվիզիաներ ունի, որքան Անգլիան, ԱՄՆ-ը և Ֆրանսիան միասին վերցրած։ Այժմ բունդեսվերի կրնկի տակ տրորվում է անգլիական հողը։ Այն, ինչ չկարողացավ Հիտլերը կատարել զենքի միջոցով, Ադենաուերն ու Շտրաուսը կատարում են խորամանկությամբ ու «բարեկամությամբ», «կոմունիզմի դեմ պայքարելու» ծխաքողի տակ։ Կապը կտրած ռևանշիստներն այնքան են լկտիացել, որ ԳՖՌ-ի պաշտպանության մինիստր Շտրաուսը բացեիբաց հայտարարում է. «Մենք ապրում ենք տեխնիկայի դարում, երբ դաշնակիցների միացյալ ուժերը բավական են, որպեսզի աշխարհագրական քարտեզից ջնջվի Սովետական Միությունը»։ Իսկ վերջերս, ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Մակնամարը սանձարձակորեն հայտարարեց, որ Ամերիկայի զինված ուժերը, լիովին ընդունակ են «ոչնչացնելու» իրենց կողմից նշված «սովետական օբյեկտները»։ Իհարկե, այդ բոլորի նպատակն է՝ բորբոքել ռազմական հիստերիան, ուժեղացնել ռազմական մրցավազքը։

Մարդկության պատմության մեջ, ասում է Ն. Ս. Խրուշչովը, ժողովուրդները դեռևս իրենց աշխատանքի արդյունքից այնպիսի վիթխարի բաժին չեն հատկացրել ավերածության միջոցների համար, ինչպես այժմ։ Մեր դարի առաջին կեսում, ամբողջ աշխարհում պատերազմներ նախապատրաստելու և պատերազմների համար ծախսվել է չորս տրիլիոն դոլար։ «Այդ մի հսկայական գումար է, որով կարելի էր կես դար ձրի հացով կերակրել երկրագնդի բնակչությանը, բարեկարգ բնակարաններ կառուցել 500 միլիոն ընտանիքի համար»։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում մեկ ավիակիր նավ կառուցելու համար ծախսվում է ավելի քան երկու հարյուր միլիոն դոլար։ Այդ գումարով երկրի դպրոցական հասակ ունեցող բոլոր երեխաներին մեկ տարի կարելի է ապահովել նախաճաշով։

Այսպիսով, սպառազինության մրցավազքը, «սառը պատերազմը» մարդկությանը ներքաշում են նոր պատերազմի ջրապտույտի մեջ։

«Պարտիան ելնում է այն բանից,—ասված է ՍՄԿՊ Ծրագրում,—որ քանի պահպանվում է իմպերիալիզմը, կմնա ագրեսիվ պատերազմների վտանգը։ ՍՄԿՊ-ն սոցիալիստական Հայրենիքի պաշտպանությունը, ՍՍՌՄ պաշտպանության, Սովետական Զինված Ուժերի հզորության ամրապնդումը դիտում է որպես պարտիայի, սովետական ողջ ժողովրդի սրբազան պարտքը, որպես սոցիալիստական պետության կարևորագույն ֆունկցիան»։

Ղեկավարվելով խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքով, Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը միշտ էլ այն կարծիքին են, որ հասարակական տարբեր սիստեմներ ունեցող պետությունները պետք է ամեն կերպ հեռու մնան պատերազմելու մտադրությունից, երկկողմանի զիջումներ անեն հօգուտ աշխարհի խաղաղության, կողք-կողքի, խաղաղ ճա-

նապարհով մրցեն տնտեսության, գիտության ու կուլտուրան զարգացնելու բնագավառում՝ ի բարօրություն համայն մարդկության։

Ամբողջ աշխարհին հայտնի է, որ մոտ անցյալում Սովետական կառավարությունը առաջ քաշելով ընդհանուր զինաթափման հարցը, միաժամանակ գործնական միջոցառումներ կիրառեց այդ ուղղությամբ՝ կրճատեց իր Զինված Ուժերի անձնակազմը, միակողմանի դադարեցրեց ատոմային ռումբի փորձարկումը։ Սովետական կառավարությունը հանդես եկավ Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելու առաջարկով, որով լիովին կվերացվեն երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքները։

«Սովետական կառավարության ամբողջ արտաքին քաղաքականությունը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,—համոզիչ կերպով վկայում է պարտիայի, ամբողջ սովետական ժողովրդի հավատարմությունը լենինյան խաղաղասեր կուրսին»։

Այժմ ազատասեր մարդկության վեհ նպատակը, այդ երկրագնդում խաղաղություն հաստատելն է։ Կոմունիստները գնում են խաղաղության համար մարտնչողների առաջավոր շարքերում։ Նրանց միակ ձգտումն է՝ ժողովուրդների ջանքերը կենտրոնացնել իմպերիալիստներին ժամանակին սանձելու, մահաբեր զենք գործադրելու հնարավորությունից նրանց զրկելու վրա։ «Գլխավորն այն է,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— որ կանխվի ջերմամիջուկային պատերազմը, թույլ չտրվի, որ այն բռնկվի»։

Ո՛չ միայն ՍՄԿՊ-ն, սոցիալիստական լագերը, այլև բոլոր խաղաղասեր ուժերը պայքարում են ագրեսիայի ու պատերազմների նախապատրաստման դեմ։ Սակայն իմպերիալիստները չեն կամենում բարելավել միջազգային հարաբերությունները, ապահովել բոլոր ժողովուրդների խաղաղ կյանքը։

Եթե Սովետական Միությունը, սոցիալիստական ուղիով ընթացող երկրները խաղաղություն են ցանկանում, այդ ոչ թե նրանց թուլության, այլ հզորության նշան է։ Վարշավայի պայմանագրի (1955 թ. մայիս) համաձայն Եվրոպայի սոցիալիստական երկրները անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկել՝ ապահովելու խաղաղասեր ժողովուրդների անվտանգությունն ու պահպանելու խաղաղությունը Եվրոպայում։ Այդ նպատակով, Վարշավայի պայմանագրի մեջ մտնող պետությունների զորքերից առանձնացված միավորումների ուսուցումն ու գործողությունները կոորդինացնելու համար ստեղծվել են Միասնական զինվորական հրամանատարություն և նրա շտաբը։

Վերջին ամիսները, ասում է Ն. Ս. Խրուշչովը, իմպերիալիստները գիտակցաբար վտանգավոր իրադարձություն ստեղծեցին Եվրոպայի կենտրոնում, սպառնալով զենք վերցնել՝ ի պատասխան մեր առաջարկի, որ անհրաժեշտ է վերջ տալ երկրորդ համաշխարհային պատերազմի մնացորդներին. կնքել Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր և նորմալացնել դրությունը Արևմտյան Բեռլինում։ Ամերիկյան ռազմամոլները Արևմտյան Եվրոպայում, հատկապես Արևմտյան Բեռլինում սիստեմատիկաբար ավելացնում են իրենց զորքերի քանակը։ 1961 թվականի երկրորդ կեսին ԱՄՆ-ն Եվրոպայի իրենց միավորումները համալրել են ավելի քան 45 հազար զինվորով, որոնց մեծ մասը տաբատեղված է ԳՖՌ-ում։ Միայն անցյալ տարվա նոյեմբերին Արևմտյան Եվրոպա փոխադրվեց ամերիկյան ռազմա-օդային 11 լրացուցիչ զորամաս, որից 6-ը՝ Արևմտյան Գերմանիա։ Այժմ ԱՄՆ-ը Եվրոպայում ունեն ավելի քան երեք



հարյուր հազար զինվոր։ Ամերիկյան իմպերիալիստները իրենց այդ արարքը բացատրում են այսպես՝ իբր թե դրանով նրանք ապահովում են ԱՄՆ-ի սահմանների անվտանգությունը «կոմունիստական սպառնալիքից»։ Բայց չէ՞ որ Ամերիկան Եվրոպայից բաժանվում է ծովերով և օվկիանոսներով, նրանից հազարավոր կիլոմետր հեռավորության վրա է գտնվում։

Ահա թե ինչու, երբ Սովետական Միությունը վերջին տարիներս գործնական քայլեր արեց՝ կրճատելու ռազմական ծախսերը և իր Զինված Ուժերի անձնակազմի քանակը, ապա վերջին շրջանում, միջազգային դրության սրման պայմաններում ստիպված եղավ անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել՝ մեր երկիրը ագրեսորների ոտնձգություններից վտանգազերծելու և մարդկությանը նոր համաշխարհային պատերազմի վտանգից փրկելու համար։

Անցյալում պատերազմով չշահագրգռված և նրա դեմ հանդես եկող ուժերը թույլ էին կազմակերպված, միջոցներ չունեին պատերազմի հրձիգների դիտավորություններին իրենց կամքը հակադրելու համար։ Ներկայումս սոցիալիզմի լագերի առկայության շնորհիվ դրությունն արմատապես փոխվել է։ «Երևան է եկել և հզոր ուժ է դարձել սոցիալիզմի համաշխարհային լագերը։ Ի դեմս այդ լագերի խաղաղասեր ուժերը ոչ միայն բարոյական, այլև նյութական միջոցներ ունեն ագրեսիան կանխելու համար» (Ն. Ս. Խրուշչով)։ Այժմ սոցիալիստական երկրները հզոր են, նրանց բանակներն անպարտելի։ Նրանք սահմանափակում են իմպերիալիստների գայլային ախորժակը։

ՍՍՌՄ Պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ ընկ. Ռ. Մալինովսկին վերջերս, ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Մակնամարի խելացնոր ելույթի կապակցությամբ պատասխանելով «Պրավդա»-ի թղթակցի հարցերին, նշեց. ես կարող եմ հայտարարել, որ մենք ընդունակ ենք մեկ միջուկա-հրթիռային հարվածով երկրի երեսից վերացնել ԱՄՆ-ի յուրաքանչյուր օբյեկտ, արդյունաբերական, վարչա-քաղաքական կենտրոն, ոչնչացնել Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրները շրջապատող այն երկրները, որոնք ԱՄՆ-ին թույլ են տվել իրենց տերիտորիաներում ստեղծելու ռազմական բազաներ։

***

Բարձր գնահատելով Սովետական Զինված Ուժերի դերը սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության գործում, պարտիան միշտ էլ անդուլ հոգացել է և հոգում է նրա հզորության բազմապատկման, նրա մարտիկների ու հրամանատարների գաղափարական կոփվածքի մասին։ Մեր հասարակական կյանքում վերականգնելով լենինյան նորմերը, պարտիան թոթափեց անձի պաշտամունքի փոշին նաև Սովետական Ռազմական Ուժերի փառավոր պատմության էջերից։ Նա բացահայտեց այն ճշմարտությունը, որ սովետական կարգերի համար մղվող քաղաքացիական պատերազմները ընթացել են մեծ Լենինի ղեկավարությամբ և ոչ թե Ստալինի՝ ինչպես նշված է մի շարք աշխատություններում։ Հետևաբար և միանգամայն սխալ է Ստալինի այն պնդումը, թե իբր Լենինը գիտակ չէր ռազմական գործին և հեռու էր կանգնած դրանից։

Պարտիան ասաց հստակ և համոզիչ կերպով, թե անհիմն է ինչպես քաղաքացիական կռիվների, այնպես և Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում ձեռք բերած պատմական հաղթանակները վերագրել Ստալինի «զորավարական

հմտությանն ու տաղանդին»։ Դրանք ձեռք են բերվել սովետական ժողովրդի անմոռանալի սխրանքներով։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և Լենինի ստրատեգիայի շնորհիվ։ Այս բնագավառում ևս պարտիան վերականգնեց պատմական ճշմարտությունը ու ճանապարհ հարթեց պատմագիտության զարգացման համար։

Ստալինի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում կամայականության և ռեպրեսիաների անմեղ զոհ դարձան այնպիսի ականավոր զորավարներ ու քաղաքացիական պատերազմների հերոսներ, ինչպիսիք էին՝ Տուխաչևսկին, Յակիրը, Ուբորևիչը, Կորկը, Եգորովը, Էյդեմանը, Բլյուխերը և ուրիշներ։ Նրանց կորուստը, իհարկե, չէր կարող բացասական հետևանքներ չթողնել մեր երկրի ռազմական շինարարության վրա, որն առավելապես ցայտուն դրսևորվեց Հայրենական պատերազմի առաջին ամիսներին։

Կանգնելով հակապարտիական ուղու վրա, պաշտպանության նախկին մինիստր Ժուկովը իր բոնապարտիստական ձգտումներով փորձ էր արել՝ թերագնահատել պարտիայի ղեկավար դերը բանակում և հաստատել միահեծան իշխանություն։ Պարտիան ժամանակին հակահարված տվեց Ժուկովի այդ քայլին, նրան ազատեց Պաշտպանության մինիստրի պարտականությունից։ Պարտիայի Կենտկոմի գործադրած ջանքերի շնորհիվ այժմ ՍՍՌՄ Զինված Ուժերում վերականգնվել են ղեկավարման լենինյան նորմերը։



Դեռևս սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի առաջին տարիներին Լենինը նշեց, որ եթե բանվոր դասակարգը կամենում է մշտապես պահպանել իր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, նա «պետք է ապացուցի այդ նաև իր ռազմական կազմակերպությամբ»։ Ելնելով Վ. Ի. Լենինի ցուցումից՝ ՍՄԿՊ-ն իր Ծրագրում նշում է. «Ներքին պայմանների տեսակետից Սովետական Միությունը բանակի կարիք չունի։ Բայց, քանի դեռ մնում է իմպերիալիստական լագերից բխող պատերազմական վտանգը, քանի դեռ չի իրագործվել լրիվ ու ընդհանուր զինաթափում, ՍՄԿՊ-ն անհրաժեշտ է համարում Սովետական պետության պաշտպանական հզորությունը, նրա Զինված Ուժերի մարտական պատրաստությունը պահպանել այնպիսի մակարդակի վրա, որն ապահովի վճռական և լրիվ ջախջախումը ամեն մի թշնամու, որ կհամարձակվի ձեռք բարձրացնել Սովետական Հայրենիքի վրա»։

Կոմունիստական պարտիան իր Ծրագրում մեծ կարևորություն տալով Հայրենիքի պաշտպանության ամրապնդման հարցերին, միաժամանակ գործնականորեն ամրապնդում է մեր երկրի Զինված Ուժերը։ Այժմ ՍՍՌՄ Զինված Ուժերը սպառազինված են ժամանակակից պատերազմ վարելու պահանջներին համապատասխան։ Մենք ներկայումս ունենք միջմայրցամաքային բալիստիկ հրթիռներ, ասում է Ն. Ս. Խրուշչովը, գլոբալ հրթիռային զենք, հրթիռներ ցամաքային զորքերի, ավիացիայի ու Ռազմա-Ծովային ուժերի համար։ Մենք ունենք ատոմային էներգիայով գործող սուզանավեր։ Անցյալ տարի փորձարկվեցին հրթիռներ, որոնք անցան 12 հազար կիլոմետր և ընկան նախօրոք նախատեսված շրջաններում։ Մեր երկրի Զինված Ուժերը հագեցած են ատոմային ու ջրածնային ռումբերով։



Սովետական Միությունը աշխարհում առաջինը արձակեց երկրի արհեստական արբանյակը, մարդկության պատմության մեջ առաջինը սովետական քաղաքացիներ, կոմունիստներ Յուրի Գագարինն ու Գերման Տիտովն էին, որ հաղթական թռիչք կատարեցին դեպի անհուն տիեզերքը և պտույտ կատարեցին երկրագնդի շուրջը։ Սրանք ո՛չ միայն մեր գիտության, տեխնիկայի մեծագույն նվաճումներն են, այլև մեր երկրի պաշտպանունակության հզորության վկայությունը։

Ամրապնդելով Սովետական Միության պաշտպանունակությունը, ասում է ընկ. Խրուշչովը, մենք գործում ենք ոչ միայն հանուն մեր շահերի, այլև հանուն բոլոր խաղաղասեր ժողովուրդների, բովանդակ մարդկության շահերի։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը այսուհետև էլ հոգ կտանեն, որպեսզի մեր երկրի Զինված Ուժերը լինեն հզոր, ունենան Հայրենիքի պաշտպանության ամենաժամանակակից միջոցներ։ Պարտիան ամեն ինչ անում է, որպեսզի մեր երկրի Զինված Ուժերը լինեն կուռ, մշտապես մարտական վիճակում՝ ուզած պահին խորտակիչ հակահարված տալու իմպերիալիստական ագրեսորներին։

«Պարտիան կոմունիստներին,—ասված է ՍՄԿՊ Ծրագրում,—սովետական բոլոր մարդկանց դաստիարակում է սոցիալիստական Հայրենիքի պաշտպանությանը մշտապես պատրաստ լինելու ոգով... Սովետական Զինված Ուժերում ծառայելը սովետական քաղաքացու բարձր և պատվավոր պարտականությունն է»։ Մեր Հայրենիքի հզոր պաշտպանունակության ամենակարևոր գործոնն այն է, որ երկրի Զինված Ուժերն ունեն հիանալի անձնակազմ, որոնք անհունորեն նվիրված են Հայրենիքին և պատրաստ են սրբությամբ կատարելու պարտիայի ու կառավարության ամեն մի առաջադրանք, միշտ հանդիսանալու մարդկության վեհ ձգտումների արտահայտիչը, խաղաղության ու դեմոկրատիայի պատվարը։

Քանի դեռ գոյություն ունեն իմպերիալիստական ագրեսորները, ասված է ՍՄԿՊ XXII համագումարի բանաձևում, պետք է զգաստ լինել, վառոդը չոր պահել, կատարելագործել սոցիալիստական երկրների պաշտպանունակությունը, նրանց զինված ուժերը։

---

# ԶԱՐԳԱՑՆԵԼ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

*Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ*

ՀԿՊ Կենտկոմի պարտօրգանների բաժնի վարիչ

ՍՄԿՊ XXII համագումարը նոր, մեծ խնդիրներ առաջադրեց պարտիական օրգանների, սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեությունը բարելավելու, պարտիական-կազմակերպական աշխատանքն ավելի բարձրացնելու, նրա ձևերն ու մեթոդները կատարելագործելու ուղղությամբ։

Մեր պարտիան կյանքի պահանջներին համապատասխան մշտապես ստեղծագործաբար կատարելագործել է իր աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Այժմ, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի աճող պահանջներին համապատասխան, պարտիան անընդհատ կատարելագործում է իր գործունեությունը, բարձրացնում իր ղեկավարության մակարդակը։

«Որպես կոմունիստական հասարակարգ կառուցող ժողովրդի առաջավոր ջոկատ,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— պարտիան պետք է առջևից ընթանա նաև իր ներպարտիական կյանքը կազմակերպելու գործում, ցույց տալով կոմունիստական հասարակական ինքնավարության առավել կատարյալ ձևեր մշակելու օրինակ»։ Այդ նպատակով ՍՄԿՊ XXII համագումարը պահանջեց անշեղորեն կրճատել վճարովի պարտիական ապարատը, որպես արտահաստիքային աշխատողներ ավելի լայնորեն ներգրավել կոմունիստներին՝ հասարակական գործունեության կարգով։ Ինչ խոսք, որ հասարակական աշխատանքը կբազմապատկի պարտիական ապարատի ուժերը, կընդլայնի նրա գործունեության ոլորտը, թույլ կտա բազմազան դարձնել պարտիական կազմակերպչական և քաղաքական աշխատանքի ձևերը։

Վերջին ժամանակներս մեր ռեսպուբլիկայում բավական աշխատանք է կատարվել հասարակական հիմունքներով կոմունիստներին պարտիական աշխատանքում ներգրավելու ուղղությամբ։ Այդ գործում մեծ դեր են խաղում պարտիական կոմիտեներում ստեղծված արտահաստիքային աշխատողների՝ բաժինների, հրահանգիչների, պարտիայի քաղկոմներին ու շրջկոմներին կից հանձնաժողովների ինստիտուտը, հասարակական խորհուրդները, դասախոսական խմբերը, որոնց շնորհիվ պարտիական կոմիտեների աշխատանքում ավելի ու ավելի մեծ թվով կոմունիստներ են ներգրավվում։

Ներկայումս Հայաստանի Կոմպարտիայի քաղաքային և շրջանային բոլոր կոմիտեներում ստեղծվել է արտահաստիքային հրահանգիչների ինստիտուտ, իսկ մի շարք խոշոր արդյունաբերական և գյուղատնտեսական կենտրոնների պարտիական կոմիտեներին, ինչպես, օրինակ, Երևանի, Կիրովականի քաղկոմների, Ղափանի, Իջևանի, Շահումյանի և մյուս շրջկոմներին կից կազմակերպված են արտահաստիքային բաժիններ, հանձնաժողովներ, խորհուրդներ։ Քաղաքային և շրջանային պարտիական կոմիտեներում հասարակական հիմունքներով աշխատում են մոտ երկուս ու կես հազար կոմունիստներ։ Այս կոլեկտիվն իր թվով գրեթե չորս անգամ ավելի է ռեսպուբլիկայի բոլոր պարտիական կոմիտեների վճարովի աշխատողների թվից։ Արտահաստիքային պարտիական այդ աշխատողների 87,7 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, գրեթե 30 տոկոսը ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի մասնագետներ են։ Պարտիայի քաղկոմների և շրջկոմների արտահաստիքային աշխատողների թվում կա ավելի քան 400 կին։

Հասարակական հիմունքներով կատարվող աշխատանքում ներգրավված են ինչպես առավել փորձված, այնպես էլ պատրաստված երիտասարդ կոմունիստներ՝ արդյունաբերության, տրանսպորտի, շինարարության, գյուղատնտեսության մասնագետներ, գիտության և կուլտուրայի աշխատողներ։ Հասարական-պարտիական աշխատանքում կոմունիստների ակտիվ մասնակցության շնորհիվ պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեներն ընդլայնել են իրենց ազդեցության ոլորտը կյանքի բոլոր բնագավառներում, ամրապնդել են կապերը սկզբնական կազմակերպությունների հետ, սկսել են ավելի խոր և բազմակողմանիորեն զբաղվել ձեռնարկությունների, հիմնարկների, կոլտնտեսությունների և սովխոզների գործունեությամբ։

Մեզ մոտ հասարակական հիմունքներով պարտիական աշխատանքում կոմունիստներին ներգրավելու առավել մասսայական ձևը արտահաստիքային հրահանգիչների ինստիտուտն է։ Տարբեր են արտահաստիքային հրահանգիչների ուժերի օգտագործման ձևերը։ Այսպես, օրինակ, արտահաստիքային հրահանգիչներն ամրացվում են սկզբնական պարտիական կազմակերպություններին, կամ նրանց հանձնարարվում է աշխատանքի որևէ կոնկրետ բնագավառ։ Դա նրանց հնարավորություն է տալիս ավելի խոր թափանցել արտադրության մեջ, լավ ճանաչել մարդկանց, ժամանակին և օպերատիվ կերպով արձագանքել և լուծել հրատապ հարցերը։ Միաժամանակ դա մեծապես նպաստում է հենց իրենց՝ արտահաստիքային հրահանգիչների աճին, պարտիական-կազմակերպական աշխատանքի փորձ և ունակություններ ձեռք բերելուն։

Այս տեսակետից ուշադրության է արժանի պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեի փորձը։ Այստեղ արդեն երրորդ տարին է, ինչ հասարակական հիմունքներով ավելի քան 50 կոմունիստներ աշխատում են որպես հրահանգիչներ ու հանձնաժողովների անդամներ։ Նրանք սիստեմատիկաբար մասնակցում են բյուրոների և պլենումների հարցերի նախապատրաստմանը, օգնում պարտիայի քաղկոմին՝ իրականացնելու ղեկավարությունն ու վերահսկողությունը պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունների գործունեության նկատմամբ, ընթացք են տալիս աշխատավորների նամակներին ու դիմումներին։

Քաղկոմին շոշափելի օգնություն է ցույց տալիս հասարակական պարտիական հանձնաժողովը, որն զբաղվում է կոմունիստների անձնական գործերի քննարկմամբ։ Հանձնաժողովի անդամները հանգամանորեն ուսումնասիրում են

փաստաթղթերը, անհրաժեշտության դեպքում լինում են սկզբնական պարտիական կազմակերպություններում և պարտիայի շրջկոմներում, կոմունիստի մասնակցությամբ մանրազնին ուսումնասիրում են հարցը և, միայն դրանից հետո հանձնաժողովի անդամներից մեկը արդյունքների մասին զեկուցում է պարտիայի քաղկոմի բյուրոյում։ Պարտիական աշխատանքի այդ նոր ձևի արմատավորման շնորհիվ մեծ չափով կրճատվել են պարտիայի քաղկոմի ապարատում անձնական գործերի քննարկման ժամկետները, և, որ ամենակարևորն է, զգալիորեն բեռնաթափվել է քաղկոմի պարտիական բաժնի աշխատանքը, հնարավորություն տալով այդ բաժնի հաստիքային աշխատողներին քաղաքի պարտիական կազմակերպություններում ավելի արդյունավետ զբաղվելու կազմակերպական աշխատանքով։ Պարտիական բաժնի աշխատողներն այժմ հնարավորություն ունեն ավելի հաճախ լինելու պարտիայի շրջանային կոմիտեներում և սկզբնական պարտիական կազմակերպություններում, ավելի օպերատիվ ու գործնական օգնություն ցույց տալու նրանց։

Օգտակար գործ է անում նաև քաղկոմի վերջերս ստեղծված առևտրի արտահաստիքային բաժինը։ Պարտիայի քաղկոմում ահազանգներ ստացվեցին Երևանի կենտրոնական ունիվերմագում կատարված մի շարք չարաշահումների մասին։ Առևտրի արտահաստիքային բաժնի աշխատողներին հանձնարարվեց ստուգել այդ ահազանգները։ Երեք շաբաթվա ընթացքում բաժինը մանրազնին ուսումնասիրեց մայրաքաղաքի այդ խոշոր առևտրական օբյեկտի գործերի վիճակը։ Ստուգման արդյունքները քննարկվեցին քաղկոմի բյուրոյում, բյուրոն լիովին հավանություն տվեց բացահայտված թերությունների վերացման ուղղությամբ բաժնի առաջարկություններին։ Ըստ որում, աշխատանքից հեռացվեցին ունիվերմագի մի խումբ ղեկավար աշխատողներ, իսկ գործը հանձնվեց քննչական օրգաններին՝ մեղավորներին պատասխանատվության ենթարկելու համար։

ՀԿՊ Ախուրյանի շրջկոմում վերջերս ստեղծված արտահաստիքային գյուղատնտեսական բաժինն իր նախաձեռնությամբ ուսումնասիրեց շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում անասունների խնամքի վիճակը։ Ստուգման ընթացքում բացահայտվեցին խոշոր թերություններ. մի շարք տնտեսությունների ղեկավարներ, հաշվի չառնելով ընթացիկ տարվա դժվարությունները, կերի օգտագործման ուղղությամբ թույլ էին տվել անտնտեսվարություն, ֆերմաներում ցածր էր աշխատանքային կարգապահությունը։ Ստուգման արդյունքները քննարկվեցին պարտիայի շրջկոմում և մշակվեցին գործնական միջոցառումներ։ Ապա հրավիրվեց կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարների, սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների շրջանային խորհրդակցություն, որտեղ զեկուցումով հանդես եկավ շրջկոմի արտահաստիքային բաժնի վարիչ ընկ. Կարախանյանը։

Մի քանի ամիս առաջ պարտիայի Դիլիջանի քաղկոմին կից կազմակերպվեցին արդյունաբերության և շինարարության, կազմակերպական, պրոպագանդայի ու ագիտացիայի արտահաստիքային բաժիններ։ Ի դեպ, դա ռեսպուբլիկայում միակ պարտիական կոմիտեն է, որն աշխատում է առանց հաստիքային բաժինների։ Աշխատանքները լավ կազմակերպելու նպատակով պարտիայի քաղկոմը օգտագործում է կոմունիստներին պարտիական-հասարակական աշխատանքներում ներգրավելու նաև այլ ձևեր։ Արտահաստիքային բա-



ժիններին կից ստեղծվել են հասարակական խորհուրդներ։ Այսպես, օրինակ, կազմակերպական բաժնին կից ստեղծվել և հաջողությամբ գործում են պարտիայի մեջ ընդունելության ու բողոքարկման գործերի, պարտիական կազմակերպությունների աշխատանքի դրական փորձն ուսումնասիրող և տարածող խորհուրդներ, ինչպես նաև ընդունված որոշումների կատարումը կազմակերպող և ստուգող խորհուրդ։ Բնորոշ է, որ այս կամ այն միջոցառումը նախապատրաստելու և անցկացնելու ժամանակ պարտիայի քաղկոմը չի սահմանափակվում միայն արտահաստիքային բաժիններով կամ հասարակական խորհուրդներով։ Որպես կանոն այդ գործում լայնորեն ներգրավվում են նաև ձեռնարկությունների, հիմնարկների, ուսումնական հաստատությունների շարքային կոմունիստները, անպարտիական տասնյակ ակտիվիստներ՝ բանվորներ, բժիշկներ, ինժեներներ, ագրոնոմներ, թոշակառուներ և այլն։

Պարտիական առաջադրանքների բարեխիղճ կատարման հիանալի օրինակներ են ցույց տալիս նաև պարտիայի մյուս քաղկոմների ու շրջկոմների արտահաստիքային շատ աշխատողներ։ Նրանցից շատերը դարձել են պարտիական կոմիտեների իսկական օգնականներ։ Գրեթե մեկ տարի է, ինչ Ց. Իսրայելյանը աշխատում է որպես պարտիայի Արտաշատի շրջկոմի արտահաստիքային հրահանգիչ։ Այդ ժամանակամիջոցում նա արժեքավոր, օգտակար շատ բան է արել։ Նրա գործունեությունը չի սահմանափակվում բյուրոյի համար հարցերի նախապատրաստմամբ միայն։ Ընկ. Իսրայելյանը միշտ ուշադրություն է հատկացնում կազմակերպչական աշխատանքին, հաճախ է լինում բրիգադներում, ֆերմաներում, զրուցում աշխատավորների հետ, օգնում գյուղի կոմունիստներին՝ հաջողությամբ լուծելու կոլտնտեսային արտադրության զարգացման հրատապ հարցերը։ Այսպես, օրինակ՝ Ցամանչալու, Բզովան և Կանաչուտ գյուղերի կոլտնտեսություններին անցյալ տարի նա օգնեց բարելավելու բամբակենու և եգիպտացորենի մշակման գործը։

Վերջին ժամանակներս ռեսպուբլիկայի պարտիական կոմիտեներում հասարակական հիմունքներով աշխատում են նաև պարտիայի քաղկոմների ու շրջկոմների արտահաստիքային քարտուղարներ։ Արտահաստիքային քարտուղարներն ընտրվում են, առաջին հերթին, այն շրջաններում, որտեղ կան պարտիայի շրջկոմի երկու հաստիքային քարտուղարներ։ Որպես կանոն քարտուղարներ են ընտրվում պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեների անդամները։ Այսպես, օրինակ, Լենինականի քաղկոմի արտահաստիքային քարտուղար է ընտրվել քաղկոմի անդամ, հասարակական ակտիվ աշխատող, մեքենավար-հրահանգիչ ընկ. Մանուկյանը։

ՀԿՊ Կենտկոմի որոշմամբ պարտիայի քաղկոմների և շրջկոմների արտահաստիքային քարտուղարները մտցվել են ռեսպուբլիկայի Կոմպարտիայի Կենտկոմի նոմենկլատուրայի մեջ։

Բերված օրինակները ցույց են տալիս, որ պարտիական աշխատանքի այդ նոր ձևը ավելի ու ավելի հաստատուն տեղ է գրավում մեր պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ և պարտիական հասարակական ակտիվ աշխատանքի են ներգրավվում ավելի ու ավելի մեծ թվով կոմունիստներ։ Արտահաստիքային պարտիական աշխատողները բազմապատկում են պարտիական կոմիտեների ուժը, նրանց դարձնում ավելի ճկուն ու օպերատիվ, միաժամանակ օգնելով պարտիական կոմիտեներին՝ բարելավելու և կատարելագոր-

ծելու մասսաների կազմակերպման գործը։ Դա հնարավորություն է տալիս ավելի լավ ղեկավարել տնտեսությունը, ժամանակին բացահայտել և վերացնել թերությունները, հաջողությամբ լուծել հասունացած հարցերը։

Դրանով չի սահմանափակվում պարտիական կոմիտեներում հասարակական հիմունքներով կատարվող աշխատանքների հսկայական նշանակությունը։ Ամենից առաջ, արտահաստիքային աշխատանքը կադրերի պատրաստման, փորձված կազմակերպիչների ռեզերվ ստեղծելու, պարտիական, սովետական և տնտեսական աշխատողներ պատրաստելու հիանալի դպրոց է։ Դա առանձնապես կարևոր է այժմ, երբ ՍՄԿՊ նոր Կանոնադրությունը նախատեսում է պարբերաբար և նշանակալի չափով նորացնել պարտիական կոմիտեների, այդ թվում սկզբնական պարտիական կազմակերպությունների կոմիտեների, բյուրոների և քարտուղարների կազմը։

Պարտիայի քաղկոմ-շրջկոմները վերջին ժամանակներս նկատելիորեն բարելավել են ղեկավարությունն արտահաստիքային պարտիական աշխատողների նկատմամբ, ավելի գործնական ու կոնկրետ է դարձել նրանց ցույց տրվող ամենօրյա պրակտիկ օգնությունը, սկսել են ավելի մեծ ուշադրություն հատկացնել նրանց ուսուցմանը։ Բացի նրանց համար անցկացվող հատուկ միջոցառումներից, արտահաստիքային աշխատողները հաճախ մասնակցում են պարտիայի քաղկոմների և շրջկոմների կողմից հրավիրվող խորհրդակցություններին, աշխատանքային պլանների կազմմանը և այլ միջոցառումների։ Սակայն արտահաստիքային աշխատողներին չպետք է շատ ծանրաբեռնել, որպեսզի հասարակական գործունեությունը երբևէ, որևէ չափով չազդի նրանց մշտական աշխատանքի վրա։

Վերջերս ՀԿՊ Կենտկոմի բյուրոն հատուկ քննության առավ պարտիական կոմիտեների կողմից արտահաստիքային աշխատողներին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունն ուժեղացնելու հարցը։ Կենտկոմի բյուրոն նշեց, որ այդ կարևոր գործում եղած էական թերություններից մեկը հասարակական հիմունքներով պարտիական աշխատանքի և այդ ուղղությամբ եղած փորձի անբավարար ուսումնասիրությունը, ընդհանրացումն ու տարածումն է. բյուրոն միաժամանակ կոնկրետ միջոցառումներ մշակեց արագորեն վերացնելու եղած թերությունները։

ՀԿՊ Կենտկոմի որոշմամբ հունվարին գումարվեց արտահաստիքային պարտիական աշխատողների եռօրյա սեմինար-խորհրդակցություն։ Հաշվի առնելով, որ մեր ռեսպուբլիկայում մեծ տարածում են գտել արտահաստիքային բաժինների և, հատկապես, արտահաստիքային հրահանգիչների ինստիտուտը, առաջին սեմինար խորհրդակցությանը հրավիրվեցին ռեսպուբլիկայի բոլոր շրջանային և քաղաքային կոմիտեների արտահաստիքային հիմունքներով աշխատող հենց այդ ընկերները։ Բացի ղեկավար աշխատողների զեկուցումներից երկու հիմնական խմբերում արտահաստիքային բաժինների վարիչները և հրահանգիչները գործարար մթնոլորտում մանրամասն և բազմակողմանի քննարկեցին ու ընդհանրացրին կուտակված փորձը, նշեցին իրենց աշխատանքը բարելավելու կոնկրետ ուղիները։ Ելույթ ունեցողները մի շարք կարևոր առաջարկություններ, քննադատական դիտողություններ արեցին, նպատակ ունենալով բարելավել ու կատարելագործել արտահաստիքային պարտիական աշխատանքը։ Կարծիքների լայն, ստեղծագործական փոխանակումը հնարավորություն տվեց ընդհանրացնելու կուտակված փորձը և բացահայտելու այդ աշխատանքում պարտիական շատ կազմակերպությունների համար բնորոշ թերությունները։

Որո՞նք են այդ թերությունները։ Պարտիական որոշ կոմիտեներ արտահաստիքային աշխատողների գործունեությունը սահմանափակում են միայն առանձին հանձնարարություններով, չեն նպաստում, որպեսզի հարցերը լուծելիս նրանք ցուցաբերեն նախաձեռնություն, ստեղծագործական մոտեցում։ Նպատակահարմար է, որ պարտիայի քաղկոմների ու շրջկոմների հաստիքային բաժինների պլանները կազմելիս միաժամանակ պլանավորվեն նաև արտահաստիքային բաժինների և հրահանգիչների աշխատանքը։

Անհրաժեշտ է պարբերաբար քաղաքներում ու շրջաններում անցկացնել արտահաստիքային պարտիական աշխատողների սեմինարներ, խորհրդակցություններ, ժամանակին հրահանգավորել նրանց։ Դա խիստ կարևոր է, քանի որ այդ ընկերների մի մասը դեռ չունի պարտիական աշխատանքի բավարար փորձ և ունակություններ, կարոտ է լուրջ օգնության։

Վերջին ժամանակներս մամուլը հասարակական հիմունքներով կատարվող պարտիական աշխատանքի հարցերին վերաբերող բազմաթիվ նյութեր է հրապարակում։ Բայց դա անբավարար է։ Մեր հրատարակչությունները դեռևս քիչ են հրատարակում պարտիական աշխատանքի փորձի, առանձնապես, հասարակական հիմունքներով կատարվող աշխատանքների զարգացման հարցերին նվիրված գրականություն։

Կատարված աշխատանքները թույլ են տալիս ասելու, որ հասարակական հիմունքներով պարտիական աշխատանքը արդեն տվել է դրական արդյունքներ և բարերար ազդեցություն է գործել ամբողջ պարտիական կազմակերպական աշխատանքի բարելավման վրա։

Անհրաժեշտ է, որպեսզի արտահաստիքային աշխատողների շարքերը մշտապես աճեն, պարտիական ապարատի ավելի ու ավելի շատ ֆունկցիաներ կատարվեն ակտիվի ուժերով՝ ինքնագործունեության կարգով։ Պարտիական օրգաններում, ընդգծում է Ն. Ս. Խրուշչովը, պետք է լինեն հասարակական հիմունքներով աշխատող ավելի ու ավելի մեծ թվով հանձնաժողովներ, բաժիններ, հրահանգիչներ, քարտուղարներ։

---

# ԳԼԽԱՎՈՐԸ ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆ Է


## Ֆ. ՆԱՅԲՈՅՉԵՆԿՈ

ՀԿՊ Կալինինոյի շրջկոմի քարտուղար


*Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին՝ անցած տարվա երաշտին, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում մեր շրջանի աշխատավորները 1961 թվականին որոշակի հաջողությունների հասան։ Ռեսպուբլիկայի անասնաբույծների միջև ծավալված սոցիալիստական մրցության մեջ ինչպես 1961 թ. առաջին կեսին, այնպես էլ երրորդ եռամսյակում Կալինինոյի շրջանը գրավեց երրորդ տեղը։*

*Շրջանի շատ կոլտնտեսություններ (Մեղովկա, Նովոսելցևո, Սարատովկա) դեռ մինչև Հայաստանի Կոմպարտիայի XXII համագումարը կատարեցին պետությանը միս, կաթ և ձու վաճառելու տարեկան պարտավորությունները։ Շրջանը ժամկետից շուտ կատարեց նաև պետությանը բուրդ վաճառելու պարտավորությունը։ 1961 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, շրջանը պետությանն ավելի վաճառեց միս՝ 2611 ցենտներ, կաթ՝ 6464, բուրդ՝ 42, կարտոֆիլ՝ 3918, բանջարեղեն՝ 112 ցենտներ, ձու՝ 116 հազար հատ։*

*Հարյուր հեկտար հողատարածության հաշվով զգալիորեն ավելացավ անասունների ու թռչունների գլխաքանակը և գյուղատնտեսական մթերքների արտադրանքը։ Յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց շրջանում այժմ պահվում է 35 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից կով՝ 13,1 գլուխ, արտադրվում է կաթ՝ 274 ցենտներ, միս՝ 34 ցենտներ։ Կովերի տարեկան միջին կաթնատվությունը շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմում է 2117 կիլոգրամ։*

*Առանձին կոլտնտեսությունների (Նովոսելցևո, Մեղովկա, Ղարաքիլիսա, Ղզըլղաշ) և Ղզըլշաֆաղի սովխոզի աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ պարտիական կազմակերպչական լավագույն աշխատանքի դեպքում հնարավոր է նույնիսկ անբարենպաստ տարիներին զգալիորեն բարձրացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Իսկ որքա՞ն իսկական անասնապահ փարոսներ ունենք, որոնք զգալիորեն գերակատարում են ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Այդպիսիք են կթվորուհիներ Ա. Հովհաննիսյանն ու Մ. Միխայլովան (Լոռվա ցեղաբուծական սովխոզից), Ռ. Սուլիխանովան ու Վ. Վասիլևան (Սարատովկա գյուղի կոլտնտեսությունից), Տ. Միխայլովան (Մեղովկա գյուղի կոլտնտեսությունից), Կ. Պողոսյանն ու Ս. Ավդալյանը (Սարչապետ գյուղի կոլտնտեսությունից) և շատ ուրիշներ։ Մենք ունենք նաև շատ առաջավոր անասնապահներ, ոչխարապահներ, թռչնապահներ։ Եվ այս փարոսներից ամենապայծառ դեմքն է Ն. Ս. Խրուշչովի անվան կոլտնտեսության հորթապահուհի, ՍՄԿՊ XXII պատմական համագումարի պատգամավոր Տատյանա Իվանովնա Ցակուշևան, որն ահա արդեն 28 տարի աշխատում է անասնաբուծության ասպարեզում՝ տարեցտարի բարձրացնելով իր վարպետությունը։*

*Անձնվիրաբար աշխատեցին նաև դաշտավարները։ Նրանք ոչ մի ջանք չեն խնայել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք աճեցնելու համար։ Շատ կոլտնտեսություններ 1960 թվականի համեմատությամբ զգալիորեն բարձրացրել են կարտոֆիլի բերքատվությունը։ Անցյալ տարի առաջին անգամ շատ տեղերում շաքարի ճակնդեղ ցանեցին անասնակեր ստանալու նպատակով. ընդարձակվեցին կերային լոբազգի կուլտուրաների ցանքերը։*

*Չնայած անցյալ տարվա դժվարություններին՝ շրջանի գյուղատնտեսության աշխատավորները անասնաբուծության ու հողագործության զարգացման գործում որոշակի հաջողությունների հասան շնորհիվ այն բանի, որ հենց տարվա սկզբից գործնական միջոցառումներ էին մշակվել ամեն մի առանձին կոլտնտեսությունում ու սովխոզում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար, ըստ որում այդ միջոցառումների նպատակն է եղել առավելագույն չափով օգտագործել տնտեսությունների ընդերքում եղած ռեզերվներն ու հնարավորությունները։ Այսպես, օրինակ՝ պարտիայի շրջկոմն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները վճռական միջոցների դիմեցին կովերի ստերջության դեմ պայքարելու ուղղությամբ։ Բոլոր ստերջ կովերն առանձնացվեցին առանձին խմբերում, կազմակերպվեց նրանց հատուկ խնամքըն ու բուժումը։ Լուրջ ուշադրություն դարձվեց արհեստական սերմնավորման գործում եղած թերությունները վերացնելու վրա։ Սրա շնորհիվ տարվա վերջում ստերջությունը կազմում էր միայն 18 տոկոս, 1960 թվականի 22 տոկոսի դիմաց։ Չնայած կերի հարցում եղած դժվարություններին՝ ինչպես ամառային արոտի, այնպես էլ մսուրային ժամանակաշրջանում մեծ չափով բարելավվեցին անասունների խնամքն ու պահպանումը, որի հետևանքով անկումը նվազեց և մինչ 1960 թ. համեմատությամբ ավելի ստացանք խոշոր եղջերավոր անասուն՝ 313 գլուխ, մատղաշներ՝ 224, խոզ՝ 292, մանր եղջերավոր անասուն՝ 1420 գլուխ։*

*Իրականացնելով նախանշված միջոցառումները՝ կոլտնտեսություններն ու սովխոզները ավելի մեծ հաջողությամբ կազմակերպեցին անասունների արոտն ու գիրացումը։ Սրա շնորհիվ պետությանն ավելի գեր անասուններ վաճառվեցին, քան 1960 թվականին, և դա տնտեսական լավ արդյունք տվեց. հենց միայն անասունների գիրության բարձրացման հաշվին կոլտնտեսություններն ու սովխոզները պետությանը վաճառած անասունների դիմաց մոտ 100 հազար ռուբլի լրացուցիչ եկամուտ ստացան։*

*Պարտիայի շրջկոմն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները շատ բան արին կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու ուղղությամբ։ Կալինինո, Ղարաքիլիսա, Շահնազար, Նորաշեն, Սարատովկա, Միխայլովկա, Նովոսելցևո գյուղերի կոլտնտեսություններում արմատավորվել է աշխատանքի կազմակերպման այնպիսի պրոգրեսիվ եղանակ, ինչպիսին են կոմպլեքսային բրիգադները, որոնց մեջ միավորված են դաշտավարության և անասնաբուծության մեջ աշխատող կոլ-*

տնտեսականները։ Աշխատանքի կազմակերպման այս պրոգրեսիվ մեթոդը լիովին արդարացրեց իրեն և նպաստեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը։

ՍՄԿՊ Ծրագրում մասնավորապես ասված է, որ անհրաժեշտ է աշխատանքի նորմավորումը, կազմակերպումն ու վարձատրությունը մոտեցնել պետական ձեռնարկություններում ստեղծված մակարդակին և ձևերին, անցնել աշխատանքի ամենամսյա երաշխավորված դրամական վարձատրության, կիրառել նաև լրացուցիչ վարձատրության և նյութական խրախուսանքի այլ ձևեր։

Մեր շրջանում կա նաև այդպիսի դրական փորձ։ Սարատովկա գյուղի կոլտնտեսությունը դեռ 1960 թվականին կիրառեց ամենամսյա դրամական ավանսավորում և լրացուցիչ դրամական վարձատրություն։ Այս միջոցառումները նպաստեցին կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Արտելում ստեղծվեց այնպիսի վիճակ, որ նրա բոլոր անդամներն սկսեցին գերակատարել արտադրական նորմաները, ամրապնդվեց աշխատանքային կարգապահությունը, չեղավ ոչ մի կոլտնտեսական, որը չկատարեր աշխօրերի սահմանված մինիմումը։ 1961 թվականի սկզբից սարատովկացիներն ավելի կատարելագործեցին աշխատանքի վարձատրության ձևը. նրանք անցան աշխատանքի ուղղակի դրամական վարձատրության՝ ըստ դրամով արտահայտված նորմաների ու գնահատումների և դրանով իսկ մոտեցան պետական ձեռնարկություններում եղած վարձատրության մակարդակին ու ձևերին։ Ըստ գոյություն ունեցող գնահատումների անցյալ տարի յուրաքանչյուր կոլտնտեսական միջին հաշվով ամսական ստացավ 70-ից մինչև 90 ռուբլի։

Սարատովկա գյուղի կոլտնտեսության փորձը քննության առնվեց պարտիայի շրջկոմի բյուրոյում և գիտական կոնֆերանսում։ Այդ հարցն ուսումնասիրել են նաև շատ կոլտնտեսություններ, որպեսզի իրենք էլ այս տարի անցնեն աշխատանքի դրամական վարձատրության։

ՍՄԿՊ Ծրագրում խոսվում է նաև կոլտնտեսություններում հողագործության ու անասնաբուծության գիտականորեն հիմնավորված սիստեմ արմատավորելու մասին։ Մեր շրջանում սկսված է նաև այդ աշխատանքը։ Ռեսպուբլիկայի գիտնականների օգնությամբ ՍՄԿՊ XXII համագումարի անվան կոլտնտեսությունում մշակվել է գյուղատնտեսությունը վարելու գիտականորեն հիմնավորված սիստեմ՝ 20 տարվա համար, որ նախատեսում է արտադրության մասնագիտացում և կենտրոնացում։ Այդ սիստեմի արմատավորումն արդեն սկսվել է։ Ներկայումս, ելնելով Հայաստանի ԿՊ XXII համագումարի որոշումներից, սկսվել է շրջանի բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների մասնագիտացման աշխատանքը։ Այս խնդրին ամենալուրջ ուշադրություն է հատկացվում։ Նախատեսվում է ամեն մի տնտեսությունում զարգացնել անասնաբուծության և գյուղատնտեսական կուլտուրաների այնպիսի ճյուղեր, որոնք առավել մեծ տնտեսական արդյունք են տալիս։

Ընթացիկ գյուղատնտեսական տարում, հաշվի առնելով Ն. Ս. Խրուշչովի խորհուրդները և նրա քննադատական դիտողությունները հողագործության խոտադաշտային սիստեմի մասին, մենք շարունակելու ենք լոբազգի կուլտուրաների՝ վիկայի և սիսեռի արմատավորումը գյուղատնտեսական արտադրության մեջ, մի բան, որ մենք սկսել ենք դեռ անցյալ տարի։ Նախատեսվում է այս տարի այդ կուլտուրաների ցանքատարածություններն ավելացնել մի քանի անգամ։



Ներկայումս շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները եղբայրական Վրաստանից ձեռք են բերել 130 տոննա վիկայի ու սիսեռի սերմացու։ Մեծ չափով ավելացվելու են նաև շարահերկ կուլտուրաների՝ կարտոֆիլի, շաքարի ու կերի ճակնդեղի ցանքատարածությունները։

Խնդիր է դրվում՝ դաշտավարությունը լիովին ի սպաս դնել անասնաբուծությանը, դաշտավարության զարգացումը տանել այն ուղղությամբ, որ հանրային անասնաբուծության համար կերի կայուն բազա ստեղծվի։

Պարտիայի շրջկոմի նախաձեռնությամբ շրջանում հրավիրվել են տնտեսական կոնֆերանսներ, ուր զեկուցումներով հանդես են եկել Գյուղատնտեսության էկոնոմիկայի ու կազմակերպման ինստիտուտի գիտական աշխատողներ, ինչպես նաև պրակտիկ մասնագետներ։ Այդ կոնֆերանսների նպատակն է՝ գիտությունն էլ ավելի մոտեցնել արտադրությանը, առաջավոր փորձը տարածել բոլոր տնտեսություններում։

Մեր կոլտնտեսությունների կյանքում օր առ օր երևում են նորի՝ կոմունիստականի բողբոջները։ ՍՄԿՊ XXII համագումարից անմիջապես հետո նոր նախաձեռնությամբ հանդես եկան Նովոսելցևո գյուղի աշխատավորները։ Զգալի հաջողությունների հասնելով գյուղատնտեսական մթերքների արտադրման ու վաճառքի վերաբերյալ ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորությունների կատարման գործում, ինչպես նաև մեծ չափերով գերակատարելով արտադրական-ֆինանսական պլանը և դրանով իսկ զգալիորեն բարձրացնելով կոլտնտեսության եկամուտները՝ կոլտնտեսականներն իրենց ընդհանուր ժողովում որոշեցին՝ բոլոր ուժերով պայքարել կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման արժանանալու համար։ Միաժամանակ նրանք որոշեցին ընդլայնել հանրային սպասարկումը, այսինքն՝ կոլտնտեսության հաշվին էլեկտրական լուսավորություն անցկացնել կոլտնտեսականների տները, անվճար դարձնել կինոսպասարկումը, ռադիոսպասարկումը, ինչպես նաև թերթերի բաժանորդագրությունը և ավտոտրանսպորտի օգտագործումը կոլտնտեսականների կարիքների համար։ Բոլոր կոլտնտեսականներին ամեն տարի արձակուրդ է տրվելու 12 աշխատանքային օր՝ պահպանելով ամսական միջին վարձատրության 50 տոկոսը, իսկ բուժման կարիք ունեցողներին տրվելու են սանատորիական ուղեգրեր։ Կոլտնտեսությունում լայնորեն կիրառվում է նաև աշխատանքի լրացուցիչ վարձատրությունը, ինչպես նաև կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության ու խրախուսանքի այլ ձևեր։

Նովոսելցևո գյուղի կոլտնտեսականների այդ նախաձեռնությունը, որն արժանի է ամենալայն խրախուսանքի, աջակցության ու տարածման, բխում է ՍՄԿՊ Ծրագրի այն դրույթից, որ կոլտնտեսությունները չեն կարող զարգանալ առանց շարունակ ընդարձակելու արտադրական, ապահովագրական կուլտուր-կենցաղային, հանրային ֆոնդերը, ինչպես նաև հանրային սպասարկումը։

Հայաստանի ԿՊ Կալինինոյի շրջկոմի բյուրոն քննության է առել Նովոսելցևո գյուղի կոլտնտեսականների այդ հիանալի նախաձեռնությունը և շրջանի բոլոր կոլտնտեսություններին խորհուրդ է տվել ուսումնասիրել ու իրենց մոտ արմատավորել այն։

Շրջանի կոմերիտական կազմակերպությունների նախաձեռնությամբ 20 անասնապահական ֆերմաներում աշխատող կոմերիտականներն ու երիտասարդները պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման ար-

ժանանալու համար։ Մեղովկայի ֆերմայում աշխատող երիտասարդական կոլեկտիվն արդեն արժանացել է այդ բարձր կոչման։ Պարտիական կազմակերպություններն ամեն կերպ խրախուսում ու պաշտպանում են երիտասարդության այդ հրաշալի նախաձեռնությունը։

Հարկավոր է նշել սակայն, որ ձեռք բերած այս հաջողությունների հետ մեր աշխատանքում նկատվում են որոշ թերություններ։ Կան կոլտնտեսություններ, որոնք ամռանն ու աշնանն այնքան էլ լավ չեն կազմակերպել կոլտնտեսականների աշխատանքը։ Ամռան ընթացքում տեղ-տեղ խախտվել է արոտների օգտագործման սահմանված կարգը, անբավարար է կազմակերպվել գիշերային արոտը։ Առանձին տնտեսություններում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության գործը որոշ տեսակի աշխատանքներում թույլ է դրված։ Թերություններ կային նաև անասնապահների աշխատանքի կազմակերպման գործում։ Մի շարք ֆերմաներ առանց բավարար հիմք ունենալու անցել էին երկու կիթի, որը և իջեցրել էր օրական կիթը։ Որոշ կոլտնտեսություններ տարվելով կերի խնայողությամբ, լավ չէին կազմակերպել ուշ ամռան և աշնան ժամանակաշրջանում բարձրակիթ կովերին լրացուցիչ կեր տալու գործը։ Սրա հետևանքով կովերը որոշ չափով նիհարել էին և կաթը պակասել։

Մեր շրջանի պարտկազմակերպության գործունեության ոճը բնորոշվում է կոնկրետ կազմակերպչական աշխատանքով, որի նպատակն է մոբիլիզացնել աշխատավորների ջանքերը՝ նրանց առջև դրված խնդիրների հաջող լուծման համար։ Այդ աշխատանքի ձևերն ու մեթոդները շատ բազմազան են։ Պարտիայի շրջկոմին կից ստեղծված է արտահաստիքային գյուղատնտեսական բաժին։ Այդ բաժինը ղեկավարում է Անասնաբուծության և անասնաբուժության ինստիտուտի Լոռվա փորձակայանի վարիչ, գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Մ. Գալստյանը։ Բաժինն աշխատում է ըստ մշակված ամսական պլանի։ Այսպես, օրինակ, պարտիայի շրջկոմի արտահաստիքային հրահանգիչներ՝ ՍՄԿԿ XXII համագումարի անվան կոլտնտեսության փորձա-ցուցադրական տնտեսության զոոտեխնիկ Վ. Մովսիսյանը և նույն տնտեսության գլխավոր գյուղատնտես Վ. Բալայանը նախապատրաստեցին անասունների ձմեռումը կազմակերպված անցկացնելու միջոցառումների հարցը։ Պարտիայի շրջկոմի արտահաստիքային հրահանգիչ՝ Գ. Երոպկինը նախապատրաստել է շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների գյուղատնտեսական մեքենաների խնամքի և վերանորոգման հարցը։

Պարտիայի շրջկոմի ապարատի ու արտահաստիքային հրահանգիչների և շրջանի ակտիվի ուժերով տեղերում սիստեմատիկաբար օգնություն է ցույց տրվում կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական պարտկազմակերպություններին։ Նրանք գյուղական պարտիական ակտիվի հետ կոնկրետ կազմակերպում են յուրաքանչյուր տնտեսության առջև դրված խնդիրների իրականացումը։ Այսպես, սկզբնական պարտկազմակերպություններին օգնելու համար շրջանային պարտակտիվը և գյուղատնտեսության մասնագետները գյուղական կոմունիստների հետ միասին գործնական միջոցառումներ մշակեցին ՍՄԿԿ XXII համագումարի որոշումների իրականացման համար։ Այդ միջոցառումները մշակելիս հատուկ ուշադրություն հատկացվեց անասունների ձմեռումը կազմակերպված անցկացնելու վրա, մասնավորապես՝ կերը տնտեսաբար ծախսելու, անասունների խնամքն ու պահպանումը ճիշտ կազմակերպելու, կո-



վերի կթի ժամանակ զոոտեխնիկական կանոնները պահպանելու, անասնապահների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանք կազմակերպելու վրա։ Այդ միջոցառումները հաստատվել են պարտբյուրոների ու կոլտնտեսությունների վարչությունների միացյալ նիստերում և ապա՝ կոլտնտեսությունների և սովխոզների պարտիական կազմակերպությունների ժողովներում։ Պարտիայի շրջկոմի հաստիքային ու արտահաստիքային աշխատողներն օգնում են սկզբնական պարտկազմակերպություններին իրականացնելու այդ միջոցառումները։

Ներկայումս կոլտնտեսությունների պարտիական կազմակերպություններն ու վարչությունները մասնագետների հետ միասին, ելնելով ՍՄԿԿ XXII համագումարի որոշումներից, մշակում են գյուղատնտեսության մասնագիտացման և գյուղատնտեսական մթերքների արտադրության կազմակերպման քսան տարվա պլաններ, ինչպես նաև կոնկրետ արտադրական պլաններ՝ ըստ տարիների։ Մենք խնդիր ենք դնում շրջանը մասնագիտացնել կովկասյան գորշագույն կաթնա-մսատու խոշոր եղջերավոր անասունների զարգացման ուղղությամբ։ Ենթադրվում է քսանամյակի վերջում 100 հեկտար հողատարածության դիմաց ունենալ առնվազն 28—30 կով, միաժամանակ յուրաքանչյուր կովի կիթն ավելացնել, հասցնելով մինչև 3500—4000 կիլոգրամի։

Մենք կարծում ենք, որ Կալինինոյի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է դառնան իսկական ցեղային անասնաբուծական տնտեսություններ։ Այս նպատակով հարց է դրվում, որ մեր շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք կովկասյան գորշագույն ցեղի բարձր մթերատու անասուններ ունեն, աճեցնեն ցեղական մատղաշներ՝ ցլիկներ ու հորթեր և դրանք վաճառեն ռեսպուբլիկայի այլ շրջանների տնտեսություններին, որպեսզի ամենուրեք բարելավվի անասունների ցեղական կազմը։ Սրա համար պահանջվում է, որ ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը և Գյուղատնտեսության մինիստրությունը սահմանեն ցեղական մատղաշների աճեցման հաստատուն պետական պլան և ապահովեն նրանց վաճառքը ռեսպուբլիկայի մյուս շրջաններում։ Բացի սրանից, կարտոֆիլաբուծության գործում շրջանի գյուղատնտեսության մասնագիտացման կապակցությամբ մենք ռեսպուբլիկայի վերադաս մարմինների առջև խնդիր ենք դրել մեր շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները ներմուծել «լորխ», «մաժեստիկ», «էպրոն» կարտոֆիլի մաքուր սորտեր, նպատակ ունենալով նորացնել սորտերը, բարձրացնել կարտոֆիլի բերքատվությունը։ Պետք է նկատի ունենալ, որ մեզ մոտ եղած կարտոֆիլի սորտային հատկությունները կորել են, ուստի և համեմատաբար ցածր բերք է ստացվում։

Ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրությունը մեզ պետք է օգնի նաև ձեռք բերելու Կալինինոյի շրջանի կլիմայական պայմաններին հարմար, վեգետացիոն կարճ ժամանակաշրջան ունեցող եգիպտացորենի, մասնավորապես «ուսպեխ» և «բուքովինյան» սորտերի եգիպտացորենի սերմացու, որովհետև ուրիշ սորտեր մեզ մոտ չեն հասունանում և վաղ գարնան, ինչպես և ուշ-աշնան ցրտերին չեն դիմանում։

Կալինինոյի շրջանի աշխատավորները ձեռնամուխ են եղել յոթնամյակի չորրորդ տարվա առաջադրանքների իրականացմանը։ Նրանց աշխատանքային ուղին պայծառ աստղի պես լուսավորում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի ամենահաղթ ու վեհ գաղափարները։

---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

*Մեր երկրի զարգացման ժամանակակից էտապում արտադրանքի որակի
համար մղվող պայքարը կարևոր դեր է խաղում կոմունիստական հասարակու-
թյան նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում:*

*ՍՄԿԿ XXII համագումարում պարտիայի Ծրագրի մասին տված զեկուց-
ման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշել է, որ կոմունիզմի կառուցման ընթացքում ար-
տադրանքի որակի անընդհատ բարձրացումը առաջնահերթ տնտեսական-քա-
ղաքական խնդիր է դառնում: Նախահամագումարյան օրերին առաջ քաշված՝
«Սովետականը՝ նշանակում է լավագույնը» լոզունգը պետք է դառնա յուրա-
քանչյուր ձեռնարկության սկզբունքը:*

*Այս գործում իրենց ակտիվ մասնակցությամբ առանձնապես աչքի էին
ընկնում կոմունիստական աշխատանքի ու հարվածայնի կոչման համար պայ-
քարող սովետական միլիոնավոր մարդիկ:*

*Այժմ կոմունիստաբար են աշխատում ոչ թե անհատներ, այլ արդյունաբե-
րական ձեռնարկությունների, սովխոզների, կոլտնտեսությունների ամբողջ կո-
լեկտիվներ, որոնք իսկական փարոսներ են: Սովետական Հայաստանի արդյու-
նաբերական ձեռնարկություններում օրեցօր ծավալվում է կոմունիստական
աշխատանքի ու հարվածայնի կոչման համար մրցությունը: Այդ հիանալի շարժ-
ման մեջ ընդգրկված են բրիգադաների, տեղամասերի, հերթափոխություննե-
րի և ցեխերի 1857 կոլեկտիվներ՝ մոտ 40 հազար աշխատողներով: Դրանցից
կոմունիստական աշխատանքի հարվածայնի կոչում է շնորհվել 1618 մարդու.
կոմունիստական աշխատանքի կոչում է շնորհվել 487 կոլեկտիվի՝ 7951 աշխա-
տողներով:*

*Ոչ միայն այդ հիանալի շարժման մասնակիցները, այլև նրանց հետևորդ-
ները՝ ռեսպուբլիկայի տասնյակ հազարավոր աշխատողներ ներգրավված են
արտադրությունն անընդհատ կատարելագործելու, արտադրանքի որակն ան-
ընդհատ բարձրացնելու ազնիվ գործում: Կոմունիստական աշխատանքի շարժ-
ման մասնակիցների օրինակով նրանք ապահովում են արտադրանքի ավելաց-
ման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և տարեցտարի աճող
սոցիալիստական կուտակման աննախընթաց տեմպերը: Այդ նրանք են կռում
ժողովրդի երջանկությունը: Սակայն աշխատավորների առջև ծառացած խնդիր-
ներն այսուհետև ավելի պատասխանատու են լինելու: Այդ կարևոր խնդիրներից
մեկը թողարկվող արտադրանքի որակի բարձրացումն է:*



*Անշուշտ, մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ զգալի չափով բա-
րելավվել է արտադրանքի որակը, ընդարձակվել արտադրանքի ասորտիմեն-
տը: Արտադրության աճի բարձր տեմպերի հետ միասին ամեն տարի յուրաց-
վում և թողարկվում են տասնյակ նոր տեսակի ապրանքներ:*

*Մեր մեքենաշինության, քիմիական, էլեկտրատեխնիկական արդյունաբե-
րության, գունավոր մետալուրգիայի և սննդի արդյունաբերության արտադրան-
քը իր որակով ետ չի մնում Սովետական Միության առաջավոր ձեռնարկություն-
ների արտադրանքից և միջազգային շուկաներում հաջողությամբ մրցակցում է
առաջավոր կապիտալիստական երկրների արտադրանքի հետ: Սակայն մեր
որոշ արտադրական ձեռնարկություններում արտադրանքի որակը դեռևս ցածր
է: Բավական է նշել, որ 1960 թվականին ամբողջ ժողտնտխորհի գծով բա-
ցարձակ խոտանից առաջացած վնասները, 1959 թվականի համեմատությամբ,
համարյա կրկնապատկվել են: Եթե բացարձակ խոտանից առաջացած կորուստ-
ները 1959 թվականին կազմում էին 597,5 հազար ռուբլի (գների նոր մասշ-
տաբով), ապա 1960 թվականին դրանք հասան 1166,4 հազարի, իսկ 1961 թվա-
կանին շարունակում էին մնալ նույն մակարդակի վրա: Այդ գումարների մեջ
չեն մտնում սորտայնության և սահմանված կոնդիցիաների պակասեցումից ա-
ռաջացած վնասները:*

*Ժողտնտխորհի արդյունաբերական արտադրանքի ամբողջ ծավալի նկատ-
մամբ բացարձակ խոտանից առաջացած կորուստները, ըստ ինքնարժեքի՝ 1959
թվականին կազմել են 0,1, իսկ 1960 թվականին՝ 0,14 տոկոս: Բացարձակ խո-
տանից առաջացած կորուստների մեծ մասը տալիս են Մեքենաշինության վար-
չության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության վարչության ձեռնարկու-
թյունները: Այդ վարչությունների ձեռնարկությունների կորուստները 1959
թվականին կազմել են ժողտնտխորհի ընդհանուր կորուստների 64, իսկ 1960
թվականին՝ 69 տոկոսը:*

*Սակայն բացարձակ խոտանը դեռևս չի արտացոլում լրիվ պատկերը: Ար-
տադրանքի գինը մեծ չափով իջնում է նաև կոնդիցիաների և սորտայնության
իջեցման հետևանքով: Այդ կարգի կորուստները մասամբ արտացոլվում են իբրև
տուգանքներ որակի և ասորտիմենտի համար և կազմում են արտադրողական
ծախսերի էական մասը, որոնք տարեցտարի ավելանում են:*

*Ըստ պետական առևտրական տեսչության տվյալների, 1960 թվականին
կոնդիցիաներին անհամապատասխան արտադրանքը կազմել է. խաղողի գինի-
ներինը՝ 11,5, գարեջրինը՝ 14,1, անալկոհոլ խմիչքներինը՝ 27 տոկոս: Երկար
ժամանակ անալկոհոլ խմիչքների գործարանի աշխատողները արտադրանքի
որակը կապում էին ջրի որակի հետ, մինչդեռ հաստատված է, որ անալկոհոլ
խմիչքների խոտանը բացատրվում է ածխաթթու գազի պակաս պարունակու-
թյամբ, օշարակի ցողավորմամբ և ապակե տարայի անբավարար մշակմամբ:*

*Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկան 1960 թվականին շարունա-
կում էր թողարկել ոչ ստանդարտ հրուշակեղեն և մակարոնի ապրանքներ: 1960
թվականին հրուշակեղենի ոչ կոնդիցիոն արտադրանքն ու խոտանը կազմել են
14,2, իսկ մակարոնի ապրանքներինը՝ 15 տոկոս: 1960 թվականին արտառես-
պուբլիկական սպառողների կողմից ֆաբրիկային վերադարձվել են 154 տոննա
ոչ ստանդարտ ապրանքներ և արտադրանքի ցածր որակի պատճառով վճարվել
են մեծ տուգանքներ:*

1959 թվականի համեմատությամբ ընկել է պտղաբանջարային պահածոների որակը։ Եթե 1959 թվականին վերահսկված քանակից ոչ կոնդիցիոն արտադրանքը կազմել է 11,7 տոկոս, ապա 1960 թվականին այն արդեն հասել է 32,5-ի։

Առավել անմխիթար է թեթև արդյունաբերության արտադրանքի գործը։ Լենինականի մսի կոմբինատում տարեցտարի վատանում է կաշվի հումքի որակը. այդ բացասաբար է անդրադառնում պատրաստի կաշիների որակի, հետևապես և՝ կոշիկի որակի վրա։

Ցածր սորտայնություն ունի նաև մանածագործական արտադրանքի զգալի մասը։ Այսպես՝ 1960 թվականին ցածր սորտայնության պատճառով ֆաբրիկաներին է վերադարձվել բամբակեղեն գործվածքների 16,2, իսկ բրդե գործվածքների՝ 6,4 տոկոսը։ Լենինի անվան մետաքսի կոմբինատի կողմից թողարկվող շապկացու գործվածքների ցածր որակի պատճառով իջնում է նաև կարի ֆաբրիկաների արտադրանքի որակը։

Դրությունը չի բարելավվել նաև 1961 թվականին։ 1961 թվականի 9 ամսվա ընթացքում պետական տեսչությունը խոտանել և ցածր սորտային է համարել Լենինականի տեքստիլ կոմբինատի արտադրանքի 8, կոշիկի № 3 ֆաբրիկայի արտադրանքի 35 տոկոսը։ Իջեցված է նաև սննդի արդյունաբերության արտադրանքի սորտայնությունը. մսինը՝ 7—30, պտղաբանջարային պահածոներինը՝ մինչև 34, հրուշակեղենինը՝ մինչև 11 տոկոսով և այլն։

Հաճախ արտադրանքի ցածր որակը երևան է գալիս ինչպես արտադրական, այնպես էլ սպառման պրոցեսում։ Օրինակ, Երևանի ավտոդողերի գործարանի արտադրանքի որակը լրիվ բավարար չէ։ Եթե դատելու լինենք ըստ սպառողներից ստացվող բողոքների, ապա ժողովրդական տնտեսությանը հասցվող վնասն այնքան էլ մեծ չէ։ Խոտանից առաջացած կորուստները 1959 թվականին կազմել են 64000 ռուբլի (նոր դրամով) կամ արտադրանքի ծավալի 0,15 տոկոսը մեծածախ գներով հաշված։ Մինչդեռ, եթե ելնենք ավտոդողերի դիմացկունությունից, ապա վնասն, իհարկե, շատ բարձր կլինի։ Այդ վնասը ավտոդողերի գործարանի ոչ մի գրքում չի արձանագրված։ Այն չի արձանագրված նաև անմիջականորեն սպառողների հաշվապահություններում։ Այնուամենայնիվ, այն աննկատելիորեն արձանագրվում է ավտոդողեր սպառողի արտադրանքի ինքնարժեքի մեջ և վատացնում սպառող ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Երևանի ավտոդողերի գործարանը եզակի չէ։ 1961 թվականին արտադրվել են նաև վատորակ կոմպրեսորներ, ռելեներ, գեներատորներ և այլն։

Ապրանքի որակի իջեցումն արտահայտվում է նրա սպառողական հատկությունների նվազմամբ, որի հետևանքով սպառողը լրացուցիչ ծախսեր է կատարում։ Ուստի, վատորակ արտադրանք տվողները կամա թե ակամա հանդիսանում են ձեռնարկությունների և աշխատավորների ռեալ եկամուտների իջեցման մեղավորները, որովհետև վերջիններս հարկադրված լրացուցիչ ծախսեր են կատարում։ Օրինակ՝ եթե յուրաքանչյուր ընտանիքին տարեկան անհրաժեշտ է 5 լամպ, ապա Երևանի էլեկտրալամպերի գործարանի արտադրած էլեկտրալամպերից անհրաժեշտ կլինի առնվազն 10—15 հատ, քանի որ դրանք շատ շուտ են փչանում։

Երբեմն արտադրողներն իրենց հանգստացնում են նրանով, որ ցածրորակ



արտադրանքի համար պակասեցվում է գինը (արժեքի նվազեցում է տեղի ունենում)։ Բայց չէ որ դրանից տուժում է արտադրությունը. հարաբերաբար պակասում է ձեռնարկությունների շահութաբերությունը, և նվազում են եկամուտները։ Ահա թե ինչու վատորակ արտադրանք տվողների նյութական պատասխանատվության չափը պետք է հավասար լինի գնի պակասեցմամբ պետությանը հասցվող վնասին. այս գործում չպետք է լինի հանդուրժողական, լիբերալ վերաբերմունք։ Աններելի է, երբ մեր որոշ ձեռնարկություններում անորակ արտադրանք տվողներին նյութական պատասխանատվության ենթարկելու գործում անհրաժեշտ սկզբունքայնություն, հաստատակամություն և հետևողականություն չկա։

Միշտ չէ, որ մատակարարող ձեռնարկությունները լրիվ չափով նյութական պատասխանատվություն են կրում վատորակ արտադրանքի համար, դրանով իսկ խախտելով տնտհաշվարկային փոխհարաբերությունների՝ տնտեսվարության լուրջ մեթոդներից մեկը։

Պատրաստի արտադրանքի արտանորմատիվ մնացորդների մեծ մասը ստացվում է ցածրորակ ապրանքներից։ Բացահայտելով որոշ ապրանքների չճարելու պատճառները, ընկ. Խրուշչովը ՍՄԿԿ XXII համագումարում ասաց. «Հաճախ խանութներում դեռևս լայն ընտրանք չկա, մինչդեռ պահեստները լեփ-լեցուն են, այսպես կոչված՝ «ոչ գնայուն ապրանքներով»։ Այդ ի՞նչ ապրանք է։ Դա ցածրորակ արտադրանք է, որից իր երեսն է թեքում գնորդը»։

Ասում են, որ անցյալում բարձրորակ արտադրանք թողարկող որոշ ձեռնարկություններ վատացրել են իրենց արտադրանքի որակը՝ քանակի հաշվին։ Այդ, իհարկե, անթույլատրելի է։ Ձեռնարկությունների այն ղեկավարները, որոնք որակի հաշվին միայն քանակն են ավելացնում, ընթանում են հակապետական ուղիով։

Աշխատանքի արտադրողականությունը, որը չափվում է աշխատանքային ժամանակի մեկ միավորում արտադրված արտադրանքի քանակով, ենթադրում է լիարժեք արտադրանք։ Որակի լրիվ կամ մասնակի իջեցումը, արտադրանքի արժեքազրկումը, փաստորեն իջեցնում են աշխատանքի արտադրողականությունը, որը քողարկվում է ապրանքի արտաքին տեսքով։ Որակը քանակով նենգափոխելը կատարվում է որոշ օպերացիաների վերացման կամ տեխնոլոգիական ռեժիմը խախտելու միջոցով, որի հետևանքով արհեստականորեն պակաս բանվորական ուժ է ծախսվում և նվազում են ապրանքի սպառողական հատկությունները։ Այդ նշանակում է խաբել պետությանը, և ոչնչով չի տարբերվում հավելագրումներից, որոնց համար Սովետական կառավարությունը միանգամայն տեղին պատժում է խաբեբաներին։

Պլանավորելով աշխատանքի արտադրողականությունը, պետական պլանավորող օրգանները ելնում են աշխատանքի աճի հանրահայտ ֆակտորներից, որոնց թվում մեծ տեղ է գրավում արտադրության տեխնիկական և կազմակերպական կատարելագործումը։ Նոր տեխնիկայի արմատավորման ու օգտագործման հիման վրա, աշխատանքի ծախսումները կրճատելու փոխարեն, երբեմն հակառակն է կատարվում, արհեստականորեն կրճատվում են տեխնոլոգիական պրոցեսները, որոնք բացասաբար են անդրադառնում արտադրանքի որակի վրա։

Ժողտնտխորհի որոշ ձեռնարկություններում նոր տեխնիկայի արմատա-

վորման պլանն անբավարար է կատարվում։ Մինչդեռ ժամանակակից պայմաններում մեծ է տեխնոլոգիական պրոգրեսի դերը ոչ միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման, այլև բարձրորակ արտադրանք ապահովելու գործում։

Արտադրանքի որակի համար մղվող պայքարում կարևոր նշանակություն ունի ճիշտ կազմակերպված վերահսկողությունը ինչպես արտադրությունն ավարտելիս, այնպես էլ ողջ արտադրական պրոցեսում։ Ներկայումս այդպիսի վերահսկողությունը կատարում են բյուրավոր վերահսկիչները, որոնց մեջ մեծ է անբարեխիղճների թիվը։ Միայն հայէլեկտրագործարանում տեխնիկական վերահսկողության վերահսկիչները 224 հոգի են, էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանում՝ 43 հոգի և այլն։ Որակի վերահսկողությունը բարելավելու նպատակով առաջարկված է այն կազմակերպել հենց իրենց՝ կատարող-օպերատորների օգնությամբ, յուրաքանչյուր հաջորդ կատարողը պետք է վերահսկի նախորդի աշխատանքը։ Սակայն վերահսկողության այս ձևը չտարածվեց, չնայած ավելի արդյունավետ է, քան ներկայումս գոյություն ունեցողը, որը չի ապահովում գործուն վերահսկողություն՝ անբարեխիղճ, իրենց գործին չտիրապետող վերահսկիչների պատճառով։

Լավ միջոցառում է հանրային վերահսկիչների ինստիտուտի զարգացումը։ Այդ բոլոր միջոցները նպաստում են արտադրանքի որակի բարելավմանը, բայց տեխնիկայի զարգացման արդի պայմաններում դրանք անբավարար են։ Ձեռքով կատարվող վերահսկողությունը, ինչպիսին էլ այն լինի, չի համապատասխանի մեքենայացված և ավտոմատացված արտադրությանը։ Որակի որոշման հետ կապված չափումների ճշտությունը հնարավոր կլինի ապահովել հատկապես ժամանակակից օպտիկական ու լարաձայնային և էլեկտրոնային սարքերի միջոցով։ Մեր ռեսպուբլիկան ունի սարքաշինական և ավտոմատիկայի մի քանի ձեռնարկություններ և մեծ ծառայություն կարող է մատուցել ժողովրդական տնտեսությանը՝ արտադրելով այդպիսի սարքեր։

Տեխնիկական բուռն պրոգրեսի պայմաններում խոսելով արտադրանքի որակի բարձրացման անհրաժեշտության մասին, չի կարելի աչքաթող անել այնպիսի կարևոր պրոբլեմ, ինչպիսին է արդյունաբերական արտադրանքի հուսալիության և երկարակեցության պրոբլեմը։ Արդյունաբերական ձեռնարկությունները պետք է ունենան հուսալիության և երկարակեցության չափը որոշելու գիտականորեն մշակված մեթոդ։ Այդպիսի մեթոդը հիմք կծառայի արտադրանքի կարևորագույն տեսակների ծառայության ժամկետների նորմատիվները մշակելու համար։ Գիտա-հետազոտական ինստիտուտները, լաբորատորիաները, կոնստրուկտորական բյուրոները պետք է ձեռնամուխ լինեն այդպիսի մեթոդ մշակելու գործին։

Արտադրանքի որակի համար մղվող պայքարը օրեցօր պետք է ավելի լայն թափ ստանա, քանի որ սոցիալիստական արտադրության կատարելագործմանը զուգընթաց ավելի արագ են աճում սպառողների պահանջները, զարգանում է նրանց ճաշակը։

---

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

# ԻՆՉՊԵՍ ՍՏԵՂԾՎԵՑ ԿՈՒԲԱՅԻ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՈՒԺԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

ԲԼԱՍ ՌՈԿԱ

*Կուբայի միացյալ ռևոլյուցիոն կազմակերպությունների ղեկավարության անդամ*

Կուբայական ռևոլյուցիայի ամենամեծ նվաճումներից մեկը, նրա ամրության աղբյուրը և հետագա զարգացմանը նպաստող ամենամեծ ու մշտական ազդեցության գործոնը այն միասնությունն է, որ հաստատվել է բոլոր ռևոլյուցիոն կազմակերպությունների և ուժերի միջև, որոնք ամուր ու խոր կերպով ձուլվել են միասնական շարժման մեջ:

Ռևոլյուցիոն ուժերի և ամբողջ ժողովրդի միասնությունը կենաց և մահու հարց է կուբայական ռևոլյուցիայի համար: Նկատի ունենալով մեր մոտիկությունը իմպերիալիստական Միացյալ Նահանգներին՝ մեր ռևոլյուցիայի կատաղի թշնամիներին, հաշվի առնելով նաև այն ազդեցությունը, որ նրանք առաջ գործում էին երկրի վրա, և ներարկման այն աստիճանը, որին հասել էր մեր էկոնոմիկան, կարելի է ասել, որ մեր շարքերի ամեն մի պառակտում կարող էր օգտագործվել իմպերիալիստների կողմից՝ իրենց ինտերվենցիոնիստական, հակառևոլյուցիոն մանևրները անցկացնելու համար և կարող էր ամենադժվարին իրադրություն ստեղծել մեզ համար, պարտության մատնել մեզ:

Կուբայական ռևոլյուցիոն ուժերի միասնությունը կոփվել է պայքարի ընթացքում, բռնակալության դեմ ուղղված գործողությունների և ռևոլյուցիան առաջ մղելու նպատակ հետապնդող գործողությունների մեջ:

Իսկ բուրժուական պարտիաները, թեև սկզբում դիմադրեցին Բատիստայի պետական հեղաշրջմանը [1], շահագրգռված էին, որ գործարք կնքեն ռեակցիոն-պրոիմպերիալիստական կառավարության հետ: Նրանք իրար միջև մի ամբողջ շարք պակտեր ու համաձայնություններ կնքեցին միասնական ճակատի մասին, համաձայնության չգալով կոմունիստների և մյուս բոլոր իսկական ռևոլյուցիոներների հետ: Այդպիսին էր, օրինակ, «Մոնրեալի պակտը» (1953 թ.), որ կնքվեց Պրիոյի, «կուբայական ռևոլյուցիայի պարտիայի», օրթոդոքսների պարտիայի սեկտորներից մեկի և մյուս ավելի սակավ նշանակալից քաղաքական խմբերի [2] միջև:

Մենք բացահայտ կերպով, հրապարակորեն մերկացնում էինք այդ պարտիաներին ու համաձայնությունները: Մենք ցույց էինք տալիս, որ նրանց ծրագրերը սահմանափակվում էին «կոնստիտուցիոն ռեժիմին» վերադառնալու, պետական հեղաշրջումից առաջ գոյություն ունեցած պայմանները վերականգնելու պահանջով, մինչդեռ իրականում պահանջվում էր խոր կերպով լուծել կուբայական ճգնաժամը, պահանջվում էր ջախջախել բռնակալությունը և հիմնել այնպիսի կառավարություն, որն ընդունակ լինի իրականացնել ագրարային ռեֆորմ, իմպերիալիստների ձեռքին գտնվող Կուբայի հարստությունների ազգայնացում, վերացնել ռասայական խտրականությունը, վերականգնել բանվորական միասնությունն ու արհմիութենական դեմոկրատիան, վարել խաղաղության, խաղաղ գոյակցության և բոլոր երկրների հետ նորմալ հարաբերությունների անկախ արտաքին քաղաքականություն:

Մենք ցույց էինք տալիս, որ բուրժուական պարտիաների քաղաքականությունը ո՛չ թե նպատակ ունի զարգացնել ժողովրդական պայքարը, այլ հեշտացնել գործարքը, համաձայնությունը այն կամարիլյաների միջև՝ նրանց պրոբլեմները այն-

---

1 *Պրոիմպերիալիստական պետական հեղաշրջում, որ ամերիկյան իմպերիալիստների ցուցումով 1952 թվականի մարտի 10-ին կատարեց ռեակցիոն քաղաքական գործիչ Ֆ. Բատիստան։*—Խմբ.։

2 *«Կուբայական ռևոլյուցիայի (իսկական) պարտիա»—ռեակցիոն բուրժուական պարտիա, որի լիդերը Կառլոս Պրիո Սոկարրասը մինչև 1952 թվականի մարտի հեղաշրջումը պրեզիդենտ էր։*—Խմբ.։

հակակոմունիզմով վարակված աջերին հեռացնել պետական ապարատի և ռևոլյուցիոն օրգանների վճռական դիրքերից: Այդ պոստերից աջերի հեռացումը չէր նշանակում նրանց ջախջախումը, նրանց պարզապես զրկեցին այն միջոցներից, որոնց օգնությամբ նրանք կարող էին խոչընդոտել միասնությանը:

Աջերին այդ պոստերից հեռացնելուց հետո նրանք կարող էին որպես այդ միասնության բաղկացուցիչ մաս մնալ ձախերի ղեկավարությամբ: Ինչո՞ւ: Որովհետև ձախերը շահագրգռված են և լի են վճռականությամբ հանդես գալու իմպերիալիզմի դեմ և ջախջախելու նրանց. նրանք թույլ չեն տալիս ո՛չ կապիտուլյացիա և ո՛չ էլ հաշտություն իմպերիալիզմի հետ: Իմպերիալիզմը ջախջախելու համար հարկավոր է ամբողջ երկրի բոլոր ռևոլյուցիոն ուժերի ամենամեծ, ամենաուժեղ և ամենախոր միասնություն: Միայն ձախերի, ռևոլյուցիոն ուժերի ղեկավարությունն է երաշխավորում այդպիսի միասնությունը:

Աջերին վճռական դիրքերից հեռացնելուց հետո, որպիսիք նրանք առաջ զավթել էին, միասնության ուղին հարթվեց: Այդ միասնությունը կարող էր ընդունել երկու ձև՝ միասնական ճակատի կամ միաձուլման ձև:

Ուշադրության առնելով մեր պայմանները, մոտիկությունը յանկիի իմպերիալիզմին և մեր ռևոլյուցիայի արագ զարգացման պրոցեսը, լավագույն, ամենաարդյունավետ և հուսալի ձևը միաձուլումն էր: Այդ միաձուլումը կատարվում էր քայլ առ քայլ:

Սկզբում դա արհմիութենական շարժման բոլոր ռևոլյուցիոն տարրերի դաշինքն էր Կուբայի աշխատավորների Ռևոլյուցիոն կոնֆեդերացիայի շրջանակներում՝ մուխալիզմին [7] ու նրա հովանավորներին պարտության մատնելու և յուրաքանչյուր արհմիության, ամբողջությամբ վերցրած յուրաքանչյուր ֆեդերացիայի միասնական ռևոլյուցիոն ղեկավարություն տալու համար, ղեկավարություն, որ ամուր և հետևողական հենարան լիներ ռևոլյուցիայի համար:

Դրանից անմիջապես հետո ձեռք բերվեց երիտասարդ սերնդի միասնությունը: Սոցիալիստական երիտասարդության միությունը որոշում ընդունեց իր լուծարքի մասին և քայլ կատարեց դեպի ապստամբ երիտասարդության ասոցիացիայի ստեղծումը, որտեղ միասնական ծրագրի շուրջը և միասնական կազմակերպության շարքերում միավորվում են բոլոր ռևոլյուցիոն պատանիներն ու աղջիկները:

Դրանից հետո ձեռք բերվեց կանանց միասնությունը: Առաջ գոյություն ունեին կազմակերպված կանանց զանազան խմբեր, որոնք կրում էին տարբեր անուններ: Մեծ ջանքերից հետո հաջողվեց բոլոր ռևոլյուցիոն կանանց ամբողջովին միաձուլել Կուբայի կանանց ֆեդերացիայի շարքերում:

Մի քիչ ավելի ուշ ամրապնդվեց գյուղացիների միասնությունը: Սկզբում հարկավոր էր մեծ աշխատանք կատարել չքավոր և միջակ գյուղացիների բոլոր ասոցիացիաները մեկ ֆեդերացիայի մեջ միավորելու համար: Դրանից հետո հիմնվեց ԱՆԱՊ-ը (Մանր հողագործների ազգային ասոցիացիա), որը կատարում է այնպիսի ֆունկցիաներ, ինչպես՝ վարկեր ու նպաստներ տալը, պարարտանյութեր, ծխահարման նյութեր, սերմեր բաց թողնելու թույլտվությունը և այլն: Այս ամենը Ասոցիացիային տալիս է որոշ չափով երկակի բնույթ՝ գյուղացիական կազմակերպության և կիսապետական ապարատի բնույթ: Այսպես թե այնպես, գլխավորն այն է, որ այդ Ասոցիացիայի շրջանակներում իրականացվում է բոլոր չքավոր ու միջակ գյուղացիների միասնությունը՝ միասնական և ամուր ռևոլյուցիոն ղեկավարությամբ:

Ռևոլյուցիոն դաստիարակության դպրոցները շատ կարևոր գործոն հանդիսացան Հուլիսի 26-ի շարժման, Ռևոլյուցիոն դիրեկտորատի և ժողովրդա-սոցիալիստական պարտիայի ընդհանուր միաձուլումը նախապատրաստելու համար: Այդ դպրոցները (մեկը ազգային՝ Նյիկո Լոպեսի [8] անվան և մի քանի գավառային) քաղաքատնտեսություն, պատմական մատերիալիզմ և սոցիալիզմ էին ուսուցանում բոլոր կազմակերպությունների բարձր և միջին օղակի կադրերին: Սովորողներն ընտրվում են իրենց ընդունակություններին համապատասխան: Ռևոլյուցիոն դաստիարակության ստորին դպրոցն աշխատում է ֆաբրիկաներին և մյուս հիմնարկներին կից՝ շարքային անդամներին քաղաքականապես ու գաղափարապես պատրաստելու համար: Միաձուլումը կատարվում էր վերից վար: Սկզբում ստեղծվեց ազգային ղեկավարություն: Դրանից հետո ղեկավարություն՝ վեց պրովինցիաներից յուրաքանչյուրի համար: Եվ, ի վերջո, մենք սկսեցինք զբաղվել տեղական (մունիցիպալ) ղեկավարության և սկզբնական կազմակերպությունների ստեղծմամբ, որոնք մենք անվանում ենք ակտիվ ռևոլյուցիոներների բջիջներ ֆաբրիկաներում, կոոպերատիվներում, ժողովրդական կալվածքներում, հիմնարկներում և այլն, այսինքն՝ աշխատանքի բոլոր կենտրոններում:

Սկզբնական կազմակերպության մեջ մտնելը կատարվում է անհատական ընտրության սկզբունքով՝ կազմակերպության իրոք ռևոլյուցիոն կազմը երաշխավորելու համար:

Ազգային ղեկավարության, ինչպես նաև պրովինցիալ ու մունիցիպալ ղեկավար օրգանների ստեղծումը տեղի էր ունենում մատնանշված կազմակերպությունների անդամներից ամենակայուն և ամենապատրաստված խմբի միավորման հիման վրա՝ առանց նրանց միջև որևէ թվաքանական համամասնության:

Այսպիսով, այն, ինչը մենք այսօր անվանում ենք Կուբայի Միացյալ ռևոլյուցիոն կազմակերպություններ, քաղաքական մի գործիք է, որը հաստատուն կերպով հետևելով Մարքսի և Լենինի սկզբունքներին, ղեկավարում է պետությունը՝ յանկիի իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների հանդեպ հայրենիքի անկախությունը պաշտպանելու, սուվերենությունն ու անկախությունն ամրապնդելու, սոցիալիզմ կառուցելու գործում:

Կուբայի Միացյալ ռևոլյուցիոն կազմակերպությունների ստեղծումը միասնության հասնելու ճանապարհին աչքի ընկնող և վճռական քայլ հանդիսացավ թե՛ քաղաքական և թե՛ պետական զարգացման բնագավառում:

Կուբայի Միացյալ ռևոլյուցիոն կազմակերպությունները միասնական ռևոլյուցիոն ուժ են, մի ուժ, որ կազմակերպում է բոլոր տնտեսական, պետական ու հասարակական կազմակերպությունների ամբողջ պետական և հասարակական աշխատանքը, մի ուժ, որ ղեկավարվում է սոցիալիզմի կառուցման ծրագրով:

Ռևոլյուցիոն կազմակերպությունների գլուխ կանգնած են մեր գլխավոր ղեկավար Ֆիդել Կաստրոն և հին ու նոր փորձված ռևոլյուցիոներները, որոնք կազմում են ազգային ղեկավարությունը:

Մեծ նշանակություն ունի Միացյալ ռևոլյուցիոն կազմակերպությունների կողմից «Սոցիալիստական Կուբա» ամսագրի հրատարակումը, որտեղ մարքսիստական տեսության լույսի տակ քննության են առնվում կուբայական ռևոլյուցիայի պրոբլեմները:

Մենք կանգ չենք առնի Միացյալ ռևոլյուցիոն կազմակերպությունների ստեղծման էտապում: Հուլիսի 26-ի տոնակատարության ժամանակ ունեցած իր ելույթում ընկեր Ֆիդելն արդեն հայտարարել է, որ երբ ավարտվի միավորման այժմյան պրոցեսը, մենք կանցկացնենք համագումար, որպեսզի վերջնականապես հիմնենք Կուբայական Սոցիալիստական ռևոլյուցիայի միասնական պարտիա, որը կլինի Հուլիսի 26-ի շարժման, ժողովրդա-սոցիալիստական պարտիայի և մարտի 13-ի Ռևոլյուցիոն Դիրեկտորատի, այսինքն՝ կուբայական ռևոլյուցիայի բոլոր քաղաքական ուժերի միաձուլման գագաթնակետը:

Պայքարելով Կուբայի ռևոլյուցիոն ուժերի միասնության համար, մենք մեր կարևորագույն գործն ենք համարում ամրապնդել համերաշխությունն ու միասնությունը այն բոլոր ժողովուրդների հետ, որոնք պայքարում են ընդդեմ իմպերիալիզմի, հանուն խաղաղության և առաջադիմության: Կուբայի ժողովուրդը ուշադիր կերպով ուսումնասիրում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագիրը, որ ընդունել է ՍՄԿՊ XXII համագումարը: Այդ Ծրագրից նա ավյուն է ստանում և ուժեր քաղում իր պայքարի համար, վստահություն է քաղում, որ մեր այժմյան ջանքերն ու զոհաբերությունները մեզ հնարավորություն կտան կառուցելու ամենաբարձր, իսկական հումանիզմի ոգով տոգորված հասարակություն: «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար» լոզունգը բոլոր երկրների մարքսիստ-լենինյանների դրոշն է: Մարդկանց ավելի ու ավելի մեծ զանգվածներ են համախմբվում այն դրոշի ներքո՝ պայքարելու ճնշման, աղքատության ու խավարի դեմ, հանուն խաղաղության, հանուն սոցիալիզմի ու կոմունիզմի:

«Политическое самообразование», № 12, 1961.

---

[7] *Է. Մուխալ — ռեակցիոն արհմիութենական լիդեր, որը մինչև 1959 թվականի հունվարը գլխավորում էր աշխատավորների կոնֆեդերացիան.— Խմբ.:*

[8] *Նյիկո Լոպես — Կուբայի ամենանշանավոր երիտասարդ ռևոլյուցիոներներից մեկը: Մասնակցել է Մոնկադայի գրոհին: Զոհվել է Կաստրոյի ջոկատը Գրանմա շխունայով (առագաստանավով) ափ հանելիս:— Խմբ.:*

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ԱՍԻԱՅԻ ԱԳՐԵՍԻՎ ՌԱԶՄԱԿԱՆ ԲԼՈԿՆԵՐԸ

Աբովյանի շրջանի Պտղնիի սովխոզի պարտկազմակերպության քարտուղար Մ. Փայտյանը դիմել է խմբագրությանը, խնդրելով պատասխանել, թե իրենցից ինչ են ներկայացնում ՍԵՆՏՕ-ն և ՍԵԱՏՕ-ն։

Ստորև պատասխանում ենք նրա հարցին։

ՍԵԱՏՕ և ՍԵՆՏՕ ագրեսիվ բլոկները դարձել են նեոգաղութակալության ռազմա-քաղաքական հիմնական ղեկավար կազմակերպությունները Ասիայում։ Ուղղված լինելով Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների դեմ՝ այդ բլոկները, միաժամանակ, Ասիայի մայրցամաքում ազգային-ազատագրական շարժումները ճնշելու գլխավոր միջոցներից են։

### ՍԵԱՏՕ

ՍԵԱՏՕ-ն կամ «Հարավ-Արևելյան Ասիայի պայմանագրի կազմակերպությունը» (South Eastern Asia Treaty Organisation), ստեղծվել է 1954 թվականի սեպտեմբերի 8-ին Մանիլա քաղաքում (Ֆիլիպիններ) ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Նոր Զելանդիայի, Տաիլանդի, Ֆիլիպինների և Պակիստանի ներկայացուցիչների մասնակցությամբ։ ՍԵԱՏՕ-ում ղեկավար դիրք են գրավում ԱՄՆ-ը։

ՍԵԱՏՕ-ի մասնակիցների ստորագրած պայմանագիրը բաղկացած է պրեամբուլայից (ներածական մաս), 11 հոդվածներից և ԱՄՆ-ի հատուկ վերապահումից, որի մեջ ընդգծվում է ՍԵԱՏՕ-ի հակակոմունիստական ուղղությունը։ Բացի դրանից, պայմանագրի բաղկացուցիչ մասն է լրացուցիչ արձանագրության ձևով կցված հավելվածը։

Պայմանագրի պրեամբուլայում ՍԵԱՏՕ-ի մասնակիցներն արձանագրում են, թե իբր գոյություն ունի «կոմունիստական պոտենցիալ ագրեսիա» և փորձում են ՍԵԱՏՕ-ին տալ պաշտպանողական կազմակերպության տեսք։ Նույն նպատակն է հետապնդում նաև առաջին հոդվածը, որը վկայակոչում է ՄԱԿ-ի կանոնադրությունը։ Սակայն պայմանագրի տեքստը ամբողջովին մատնում է նրանց։ Երկրորդ հոդվածում խոսվում է ինչպես «դրսի հարձակման», այնպես էլ ազգային-ազատագրական շարժման, կամ, ինչպես պայմանագրում է նշված, «քայքայիչ գործունեության» դեմ ՍԵԱՏՕ-ի մասնակից պետությունների համատեղ պայքարի մասին։ Պայմանագրում կարևոր տեղ է գրավում չորրորդ հոդվածը, որի համաձայն նրա մասնակիցները պայմանավորվում են Հարավ-Արևելյան Ասիայի շրջանում «սպառնալի» իրադրություն առաջանալու դեպքում ձեռնարկել համատեղ միջոցներ։

Ութերորդ հոդվածի համաձայն ՍԵԱՏՕ-ի մասնակիցներին «իրավունք» է վերապահվում իրենց հայեցողությամբ պայմանագրի գործողությունները տարածել ցանկացած երկրի ու տերիտորիայի վրա, սրանք չեն մտնում ՍԵԱՏՕ-ի կազմի մեջ։ Պայմանագրին կցված արձանագրության մեջ հայտարարվում է, որ ՍԵԱՏՕ-ի գործողության ոլորտն անմիջականորեն տարածվում է Հարավային Վիետնամի, Լաոսի և Կամբոջայի վրա։

ՍԵԱՏՕ-ի պայմանագրի ստեղծման հետ միասին ընդունվեց նաև, այսպես կոչված՝ Խաղաղօվկիանոսյան խարտիան՝ պրոպագանդիստական մի փաստաթուղթ, որտեղ կեղծավորաբար հայտարարվում է, թե իբր այդ բլոկի մասնակիցների քաղաքականությունը կրում է հակագաղութային բնույթ։

ՍԵԱՏՕ-ի գերագույն օրգանն է մասնակից երկրների Արտաքին գործերի մինիստրների խորհուրդը։ Բլոկի մշտական ղեկավարությունը իրականացնում է Լիազորների խորհուրդը, որը կազմված է ՍԵԱՏՕ-ի անդամ երկրների դեսպաններից։ Բլոկի հավաքատեղին գտնվում է Տաիլանդի մայրաքաղաք Բանգկոկում։ Բլոկի առանցքը կազմում է Ռազմական խորհրդատուների կոմիտեն, որի մեջ մտնում են ՍԵԱՏՕ-ի մասնակից ասիական երկրների գլխավոր շտաբների պետերը և Հարավ-արևելյան ու Արևելյան Ասիայի շրջանում գտնվող արևմտյան տերությունների ռազմական ուժերի հրամանատարները։ Կոմիտեն մշակում է ագրեսիվ ռազմական պլաններ, զբաղվում ՍԵԱՏՕ-ի անդամ երկրների բանակների վերակազմավորմամբ, անց է կացնում միացյալ մանևրներ, ղեկավարում ռազմական հետախուզությունը և այլն։ ՍԵԱՏՕ-ի ղեկավար օրգաններից են նաև տնտեսական էքսպերտների կոմիտեն, անվտանգության և ինֆորմացիայի, կուլտուրայի, առողջապահության և աշխատանքի հարցերով զբաղվող կոմիտեները։

ՍԵԱՏՕ-ի գործադիր օրգաններն են՝ գլխավոր և գործադիր քարտուղարությունները և մի շարք մշտական աշխատանքային խմբեր։

ՍԵԱՏՕ-ի գլխավոր քարտուղարն է Տաիլանդի ներկայացուցիչ Պոտ Սարասինը։

### ՍԵՆՏՕ

ՍԵՆՏՕ կամ «Կենտրոնական պայմանագրի կազմակերպությունը» (Central Treaty Organisation) ստեղծվել է թուրք-իրաքյան ռազմական դաշինքի հիման վրա, որն ստորագրվել է 1955 թվականի փետրվարի 24-ին, Բաղդադում։ Սկզբում այն կոչվում էր Բաղդադի պակտ։ 1955 թվականին Բաղդադի պակտին միացան Անգլիան (ապրիլին), Պակիստանը (սեպտեմբերին) և Իրանը (նոյեմբերին)։

Այս ռազմական խմբավորումը կազմակերպորեն ձևավորվել է 1955 թվականի նոյեմբերին, այդ բոլոր երկրների ներկայացուցիչների և ԱՄՆ-ի «դիտորդների» մասնակցությամբ։ Հետագայում ԱՄՆ-ը միացավ այդ բլոկի հիմնական օրգաններին, չնայած պաշտոնապես շարունակում է ձևականորեն մնալ նրա ոչ լիիրավ անդամը։ Իրականում ԱՄՆ-ը ո՛չ միայն այդ ռազմական բլոկի մասնակիցն է, այլև նրա բոլոր ագրեսիվ գործողությունների կազմակերպիչն ու ոգեշնչողը։ Ամերիկյան «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը հաղորդում է, որ Բաղդադի պակտի հիմնադրման օրից «ԱՄՆ-ը եթե ոչ անունով, գոնե ոգով եղել է նրա անդամը»։ 1959 թվականին Իրաքը դուրս եկավ Բաղդադի պակտից, որից հետո նրա մասնակիցները այն վերանվանեցին «Կենտրոնական պայմանագրի կազմակերպություն»։

ՍԵՆՏՕ-ի մասնակիցներին միավորող պայմանագիրը կազմված է պրեամբուլայից և ութ հոդվածներից։ Նրա հիմնական բովանդակությունը շարադրված է առաջին հոդվածում, որի համաձայն մասնակից պետությունները պարտավորվում են «համագործակցել» ռազմական նպատակներով։ Օտարերկրյա մամուլի հաղորդումների համաձայն, այդ պայմանագրին կցված է նաև գաղտնի արձանագրություն, ըստ որի բլոկի մասնակից յուրաքանչյուր երկիր պարտավորվում է որոշակի պայմաններում իր տերիտորիան, օդանավակայանները և սպառազինությունները տրամադրել բլոկի մյուս մասնակիցների զորքերին։

ՍԵՆՏՕ-ի բարձրագույն օրգանը Մինիստրների մշտական խորհուրդն է, որն ամեն տարի հավաքվում է քննարկելու քաղաքական, տնտեսական և ռազմական պրոբլեմներ, որոնք կապված են այդ պայմանագրի նպատակների իրականացման հետ։ Սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում ՍԵՆՏՕ-ի բոլոր գործերը, բացառությամբ ռազմական հարցերի, տնօրինում է Մինիստրների տեղակալների խորհուրդը, որի կազմի մեջ մտնում են բլոկի մասնակից երկրների դեսպանները։ ՍԵՆՏՕ-ի շտաբը և մյուս ղեկավար օրգանները տեղավորված են Թուրքիայի մայրաքաղաք Անկարայում։

ՍԵՆՏՕ-ի ղեկավար օրգաններից են՝ ռազմական, տնտեսական, «քայքայիչ գործողությունների դեմ պայքարելու» և կապի հարցերով զբաղվող հանձնաժողովները։ Ռազմական հանձնաժողովը կազմված է ՍԵՆՏՕ-ի մասնակից երկրների գլխավոր շտաբների պետերից։

Տնտեսական հանձնաժողովը նախապատրաստում է միատեղ նախագծեր, որոնց նպատակն է ասիական երկրներում պաշտպանել իմպերիալիստական մոնոպոլիաների շահերը, կառուցել ստրատեգիական ճանապարհներ, ռազմական այլ օբյեկտներ։

«Քայքայիչ գործողությունների դեմ պայքարելու» հարցերով զբաղվող հանձնաժողովը ստեղծված է պայքարելու բլոկի մասնակից երկրների ազգային-ազատագրական շարժումների դեմ, մշակելու և իրականացնելու քայքայիչ գործողություններ Արևմտյան Ասիայի անկախ պետություններում։

ՍԵՆՏՕ-ի գլխավոր քարտուղարն է Պակիստանի ներկայացուցիչ Միրզա Օսման Ալի Բեյգը։

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑԸ

Պարտիայի XXII համագումարը մեծ ու պատասխանատու խնդիրներ դրեց սովետական արվեստի գործիչների առջև։ Պարտիան սովետական նկարիչներին կոչ է անում ճշմարտացի ու բարձր գեղարվեստականությամբ արտացոլել մեր հարուստ ու բազմազան իրականությունը, ոգեշունչ ու վառ կերպով վերարտադրել նորը, առաջավորը, իսկական կոմունիստականը, համարձակ կերպով մերկացնել այն ամենը, ինչ խանգարում է հասարակության առաջընթացին։

Սովետական նկարիչներն իրենց ստեղծագործական աշխատանքի իմաստը տեսնում են կոմունիզմի կառուցման գործին ակտիվ մասնակցելու և նրա նվաճումները պաշտպանելու մեջ։ Իրենց ունակությունններն այդ գործում են ներդնում նաև մեր պլակատիստները։

Սովետական քաղաքական պլակատն ունի պարտիայի առաջավոր գաղափարների իրականացման համար մղած ակտիվ պայքարի հարուստ տրադիցիաներ։ Պլակատը կերպարվեստի ամենամասսայական տեսակն է, որը գաղափարական բովանդակության խորությունը զուգակցում է գեղարվեստական ձևերի արտահայտչականության հետ։ Այն լակոնիկ ու գեղարվեստական ձևով դիտողին է մատուցում գաղափարական մտահղացումը։

Եթե պլակատը կատարված է բարձր վարպետությամբ, ինչպես Դ-Մոորի «Օգնիր» անմոռաց պլակատը, Մայակովսկու «Գյուղացի, այսպես դիմավորիր Վրանգելին» կամ Դենիի «Կամ մահ կապիտալին կամ մահ կապիտալի կրնկի տակ» պլակատները, ինչպես և ուրիշ, ոչ պակաս հայտնի ու տաղանդավոր վարպետների պլակատները, ապա այն չի զիջում հաստոցային նկարին, քանի որ օգտվում է կերպարվեստի այն նույն տարրերից, ինչ որ նկարը։ Պլակատային ձևը, ի հակադրություն հաստոցայինի, ավելի սուր է։ Պլակատիստ նկարիչները գիտեն, թե որքան դժվար է գտնել խնդրի սրամիտ լուծում և որքան երկար են որոնում արտահայտիչ կոմպոզիցիա։

Ցավոք սրտի, չնայած պլակատի գեղարվեստական ներգործուն հսկայական նշանակությանը, միշտ չէ, որ նրան նվիրում են պահանջվող ուշադրություն։ Դեռ 1932 թվականին մեծագույն պլակատիստ Դ-Մոորը գանգատվում էր, որ «Պլակատը ոչ մի կերպ հավասարապես չի գնահատվել գեղանկարչության կամ գրքային գրաֆիկայի հետ, նրա անհրաժեշտությունն ու օգտակարությունը ճանաչվել է, բայց երբեմն այն համարվել է ինչ-որ երկրորդական տեսակի արվեստ»։

Պլակատի նկատմամբ այդպիսի վերաբերմունք է եղել նաև մեզ մոտ՝ Հայաստանում։ Թույլ են եղել արտադրական, գյուղատնտեսական ու կենցաղային պլակատները։ Այժմ դրությունը արմատապես փոխվել է։ Հայաստանի նկարիչները զգալի հաջողությունների են հասել կերպարվեստի այդ մասսայական ձևի զարգացման գործում։ Իրականացվել են մի շարք միջոցառումներ, որոնք նպաստավոր պայմաններ են ստեղծում պլակատիստի արդյունավետ աշխատանքի համար։

Հայաստանի Նկարիչների միության որոշմամբ գրաֆիկական սեկցիայից անջատվեց պլակատիստների խումբը և կազմակերպվեց պլակատային սեկտոր, որը նոր էտապ հանդիսացավ Հայաստանում պլակատային արվեստի զարգացման ճանապարհին։

Վերջին տարիներին ստեղծվել են մեր ժողովրդի կյանքն ու աշխատանքը արտացոլող, խաղաղության համար մղվող պայքարի, ինչպես նաև քաղաքական ու պատմա-ռևոլյուցիոն թեմաներով բազմաթիվ պլակատներ, որոնց մի մասը արժանացել է դրական գնահատականի։ Այսպես, օրինակ, 1959 թվականին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում կազմակերպվեց պլակատների ցուցահանդես՝ «Խաղաղություն աշխարհին» թեմայով, որտեղ նկարիչ Ռ. Նանուշյանը «Կորչի՛ պատերազմը» պլակատի համար և նկարիչ Ա. Ասլանյանը «Ո՛չ» անունով պլակատի համար ստացան խրախուսական դիպլոմներ։



Հայաստանում կա ընդամենը 19 պլակատիստ, որոնց գործունեության մեջ վերջին տարիներին նկատվում են որոշակի հաջողություններ։ Ռ. Նանուշյանը ԳԴՌ-ում ունեցած հաջող դեբյուտից հետո մեզ ցույց տվեց «Արգելել», «Սոցիալիզմը հաղթանակների դրոշն է» և այլ պլակատներ, որոնք վկայում են նկարչի տեմպերամենտի մասին։ Ցավոք սրտի, վերջին ժամանակներս նա քիչ է աշխատում։

Սերգեյ Արուտչյանը Հայաստանի ավագագույն պլակատիստներից մեկն է, սրամիտ, վառ երևակայությամբ օժտված մի նկարիչ։ Նրա հակումը դեպի ծաղրանկարը, շարժը իր արտացոլումն է գտել Մայակովսկու «Եկեք խոսենք մանրուքների մասին» և այլ տեքստերով նկարած սատիրական պլակատների մեջ։ Իրենց ձևով «Ագիտպատուհան» հիշեցնող այդ աշխատանքներից բացի Արուտչյանն ունի շատ պլակատներ ամենակենսաթրթիռ քաղաքական թեմաների շուրջը, ինչպես օրինակ, «ՄԱԿ-ը ամերիկյան ագրեսորների տեսանկյունից», «Ամերիկյան կթան կովը» և այլն։

Երբ նկարիչը խորապես գիտակցել ու ապրել է նյութը, նրան հաջողվում է ստեղծել հիշողության մեջ մնացող ուժեղ գործ։ Ես նկատի ունեմ Ալբերտ Ասլանյանի «Հիշիր» պլակատը։ Ասլանյանը ինքը եղել է պատերազմի մասնակից և, զարմանալի չէ, որ պատերազմի դեմ բողոքի ձայն բարձրացնող նրա «Ո՛չ» պլակատը և հակապատերազմական թեմայով ստեղծած այլ պլակատներ ունեցան այդպիսի հաջողություն։ Ահա թե ինչու պարտիան շարունակ նկարիչներին կոչ է անում՝ ավելի մոտ լինել կյանքին, լինել նրա հործանուտում, քանի որ նկարչի զգացած ու ապրած կոնկրետ իրականությանը չի փոխարինի երևակայության ոչ մի ուժ։

Խ. Գյուլամիրյանն ունի բավականին վստահ, ազատ տեխնիկա։ Նկարիչը արձագանքում է Հայաստանի պատմա-ռևոլյուցիոն շարժումների ակտուալ թեմաներին. նա պլակատներ ունի պատերազմի ու խաղաղության թեմաներով։ Ուշադրություն է գրավում նրա «Մենք վերցրինք քարը, երբ վերջացավ կապարը» պլակատը և ուրիշներ։

Ա. Զախարյանի պլակատները գլխավորապես նվիրված են ազգային տոներին, նշանավոր տարեթվերին։ Այդ թեմաների համապատասխան էլ նա ընտրում է պլակատի ձևը՝ տրիպտիխը. նրա գծերը վստահ են, ժեստերը՝ լակոնիկ։

Այս փոքրածավալ հոդվածում հնարավոր չէ տալ բոլորի աշխատանքի գնահատականը. վերոհիշյալ նկարիչների կողքին ուրիշ շատերն էլ հաջողությամբ աշխատում են այդ ճակատում։ Հետաքրքրական է Պողպատոգովի «Խաղաղություն», Գ. Առաքելյանի «Նրանց խաղաղություն է պետք», Վ. Մանդակունու «Ձեզ ենք սպասում, երիտասարդներ», Լ. Մանասերյանի «Հանքաշխարհի հերոսը», Վ. Խաչիկյանի «Բերքը հավաքենք ժամանակին ու առանց կորստի», Գ. Արամյանի «Դա չպետք է լինի», Դ. Սարգսյանի «Մենք կհասնենք կոմունիստական աշխատանքի հաղթանակին», Գ. Ցարալովի «Եղիր զգոն», Ա. Խուդավերդյանի «Խաղաղության պայքարի դիրքերում» և այլ պլակատներ։

Բոլորովին վերջերս հայտարարվեց լավագույն պլակատի կոնկուրս, որ կազմակերպել էր Հայպետհրատը. այդ կոնկուրսում առաջին մրցանակ ստացավ Լ. Մանասերյանը, իսկ երկրորդը՝ Խ. Գյուլամիրյանը։

Պլակատի զարգացման համար մեծ նշանակություն ունեցավ պլակատիստների Համամիութենական կոնֆերանսը Կիևում՝ 1959 թվականին։ Այդ խորհրդակցությունում նշվեց, որ պլակատային արվեստի բնագավառում ձեռք են բերվել զգալի նվաճումներ, բարձրացել է պլակատի գաղափարական-գեղարվեստական մակարդակը, սուր կերպով դրվեց պլակատների պոլիգրաֆիական կատարման որակը բարձրացնելու հարցը։ Խորհրդակցությունը գտավ, որ չնայած ակնհայտ նվաճումներին, այնուամենայնիվ դեռևս պատահում են գորշ, շաբլոն, ոչ խոր բովանդակությամբ և պրոֆեսիոնալ տեսակետից թույլ պլակատներ։

Խորհրդակցությունը նշեց, որ հրատարակչություններում աշխատում է ոչ բավականաչափ բարձրորակ խմբագրական կազմ, որն ի վիճակի չէ ուղղություն տալու նկարիչներին, թույլ է գեղարվեստական խորհուրդների կազմը, որ հրատարակչությունների խմբագրական ապարատներում պլակատների էսքիզների ու օրիգինալների հաստատման երկարատև ժամկետներն ու դրանց տպագրության ձգձգումները նվազեցնում են պլակատի օպերատիվությունն ու նրա ակտուալությունը։ Պլակատիստ նկարիչները բավարար չափով չեն աշխատում իրենց գաղափարական մակարդակն ու պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնելու վրա։ Նրանք հազվադեպ են մեկնում արդյունաբերական ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու երկրի կառույցները։

Կիևի խորհրդակցության որոշումները կենսագործելու համար Հայաստանի Նկարիչների միությունը Հայպետհրատին կից կազմակերպեց պլակատի բաժին, ստեղծեց բազա պլակատի հրատարակման համար, միջնորդեց ավելացնելու պլակատների պատվերների վարձատրությունը, Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչությանը կից կազմակերպվեց Գեղարվեստական խորհուրդ, որի կազմի մեջ մտնում են փորձված նկարիչներ։ Այս ամենը լավ է, բայց դեռ շատ հարցեր սպասում են իրենց լուծմանը։ Անհրաժեշտ է ձեռնարկություններում և կոլտնտեսություններում կազմակերպել

պլակատիստների ստեղծագործական խմբեր։ Հարկավոր է խնդիր դնել՝ սիստեմատիկ կերպով դրախոսելու նոր պլակատները և մամուլում լուսաբանել պլակատի զարգացման ստեղծագործական պրոբլեմները։

Պլակատի զարգացման ու տարածման գործին մեզ մոտ շատ է խանգարում պոլիգրաֆիական վատ բազան։ Որպեսզի ապացուցենք մեր ասածը, համեմատենք երկու գիրք. երկուսն էլ մենագրություններ են նկարիչ Մ. Սարյանի մասին, մեկը տպագրվել է Մոսկվայում («Սովետսկի խուդոժնիկ» հրատարակությամբ), մյուսը՝ Երևանում։ Վերցնենք Մ. Սարյանի պորտրեն. ամեն մի ոչ կանխակալ դիտող պարզ կտեսնի, թե որքան շատ են տարբերվում դրանք միմյանցից։ Բերված օրինակը անմիջական առնչություն ունի պլակատի տպագրության հետ և ցույց է տալիս Հայաստանի պոլիգրաֆիայի ցածր մակարդակը։ Ահա թե ինչու պատասխանատու շատ գործեր, հատկապես գունավոր տպագրություն պահանջող գրքերը, ալբոմները և այլն, տպագրվում են Մոսկվայում, Լենինգրադում, Լատվիայում կամ ԳԴՌ-ում։

Հայաստանի նկարիչները նշանակալի հաջողությունների են հասել, բայց այդ ամենը չի կարող բավարարել պլակատի նկատմամբ աճած պահանջը։ Ժողովուրդը սպասում է և վստահ է, ՍՄԿԿ XXII համագումարում ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը, որ գրողներն ու արվեստի գործիչները կստեղծեն նոր երկեր, որոնց մեջ արժանի կերպով կմարմնավորեն հասարակության վերափոխման մեր հերոսական դարաշրջանը։ Պարտիան կոչ է անում՝ մարդկանց դաստիարակել կոմունիզմի ոգով, դաստիարակել ամենից առաջ դրական օրինակներով, ճշմարտացի կերպով ցույց տալով նոր մարդուն, կոմունիզմի համար պայքարող մարտիկին, իր դարն ապրած հնի դեմ նրա մղած պայքարը։

Մենք՝ բոլոր պլակատիստ նկարիչներս, դեռ շատ բան ունենք անելու պլակատային նկարչության կուլտուրայի բարձրացման բնագավառում, քանի որ պլակատիստը պետք է ամենից առաջ ունենա նկարելու վստահ ձև, բազմազան, հարուստ գեղարվեստական արտահայտչականության եղանակներ ու միջոցներ։ Մենք պետք է պարզեցնենք պլակատը՝ օգտվելով ռեալիստական սիմվոլիկայից, բայց չստեղծենք սխեմա կամ ռեբուս։ Պլակատը պետք է ստեղծել արվեստի այդ տեսակին հատուկ սպեցիֆիկ ձևերով միայն։ Հարկավոր է հիշել, որ պլակատիստի արժեքավոր հատկություններից մեկն էլ սրամտությունն է, այն չպետք է «անատամ» լինի։ Պլակատի մահացու թշնամին են շտամպը, շաբլոնը, սխեմատիզմը, տափակությունը։

Որոշ արվեստագետներ գտնում են, որ չի կարելի պլակատ ստեղծել առարկաներից, առանց մարդկային դեմքի։ Հարց է ծագում, թե ինչու լեհական այն հայտնի պլակատը, որի վրա աղյուսների փոխարեն պատկերված է ՎԱՐՇԱՎԱ բառը կազմող յոթ ծավալուն տառեր բարձրացնող ամբարձիչ, նույնիսկ առանց մակագրության դիտողին պարզ է դառնում, որ խոսքը Վարշավայի վերականգնման մասին է։ Պլակատն ունի այնպիսի ուժ, որ ամենաժլատ միջոցներով անգամ կարելի է մեծ գաղափարներ արտահայտել։ Իսկ դրա համար անհրաժեշտ է համառորեն աշխատել, բարձրացնելով տեխնիկական վարպետությունը, պրոֆեսիոնալ կուլտուրան և գաղափարական մակարդակը։

Հայաստանի պլակատիստ նկարիչները պետք է ավելի համարձակ բարձրացնեն արդյունաբերության, գյուղատնտեսության թեմաներ, գյուղերի վերակառուցման, խաղաղության համար պայքարի, պատերազմի հրձիգների մերկացման, առողջ և կուլտուրական կենցաղի թեմաներ։ Նրանք իրենց պլակատներում պետք է արտացոլեն աշխատանքի ռոմանտիկան, սովետական ժողովուրդների եղբայրական համախմբվածությունը, նրանց ինտերնացիոնալիզմը։ Նրանք պետք է օգնեն մեր պարտիային՝ նոր հասարակարգ կառուցողին կոմունիզմի ոգով դաստիարակելու գործում։

ՀՈՎՍԵՓ ԿԱՐԱՅԱՆ
(Նկարիչ)



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱՌՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.,
ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ.,
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան,
ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՑ 09210 Պատվեր 408 Տիրաժ 9700

Տպ. 7 մամուլ, մամուլում 68 340 նիշ։ Ստորագրված է տպագրության 17/II 1962 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## «ԱՐԲԱՆՅԱԿ» ԴԵՊԻ ԵՐԿՐԻ ԸՆԴԵՐՔԸ

Երկրի ընդերքի ուսումնասիրությունը գեոֆիզիկական հետազոտությունների լայնածավալ կոմպլեքսի մի մասն է։ Կազմված է այդ ուղղությամբ տարվող աշխատանքների նախագիծ, որն ընդունված է համաշխարհային գեոֆիզիկական և գեոդեզիական Միության գլխավոր ասամբլեայի կողմից Հելսինկիում, 1960 թվականին։ Առայժմ այդպիսի արտակարգ բարդ խնդրի լուծման հնարավորություններ ունեն միայն Սովետական Միությունը և ԱՄՆ-ը։ ՍՍՌՄ-ում այդ աշխատանքներին արդեն ձեռնամուխ են եղել հինգ գիտահետազոտական ինստիտուտներ։ Հետազոտությունների առաջին էտապում հորատման սարքավորումները հագեցված են լինելու բազմաթիվ գիտական սարքավորումներով, որոնք կարող են դիմանալ մինչև 600 աստիճան ջերմության և 5 հազար ատմոսֆեր ճնշման։ Սակայն այս դեռ բոլորը չէ։ Լաբորատորիաներում արդեն ուսումնասիրվում են խոր հորատման հաջորդ էտապը՝ 30 հազար ատմոսֆեր ճնշման և 1000 աստիճան ջերմության պայմաններում։ Գտնում են, որ խոր հորատման համար կարելի է օգտագործել ատոմային ռեակտորը, որի մեծ, մինչև 1000 աստիճան շիկացած մասսան կհալեցնի և կսեղմի երկրի կեղևը, ընկղմվելով նրա մեջ։ Երկրի ձգողական ուժի շնորհիվ այդպիսի արկը, հրաբխային հոսքերով ու շաղկապված կիջնի դեպի երկրագնդի կենտրոնը՝ դեպի կորիզը, իր հետևից թողնելով կարծր, հալված պատերով հորատանցք։ Դա կլինի մի աչքի լուսամուտ դեպի ստորերկրյա աշխարհը։ «Ստորերկրյա կոսմոսի» այդպիսի ատոմային «հրթիռի» կառուցումը դրված է օրակարգում։

Մի խումբ գիտնականների, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, ակադեմիկ Մ. Ա. Լավրենտևի ղեկավարությամբ, հանձնարարված է քննության առնել այս նախագծի կենսագործման հարցը։

## ԱԿՎԱՐԻՈՒՄ ՆԱՎԵՐ

Գորկու Հոկտեմբերի 40-ամյակի անվան նավաշինական գործարանում կառուցվում է երկու ջերմանավ՝ կենդանի ձկներ տեղափոխելու համար։ Այդպիսի նավի ներքնահարկը բաժանված է 10 մասի, որոնցում սառեցնող մարտկոցների օգնությամբ պահպանվում է անհրաժեշտ ջերմություն, իսկ նրանցում եղած ջուրը օդամղիչների միջոցով սիստեմատիկաբար հարստացվում է թթվածնով։ Նավը կարող է տեղափոխել մինչև 30 տոննա կենդանի ձուկ։

## ՊՂԻՆՁ, ԱՌԱՆՑ ՁՈՒԼՄԱՆ ՊՐՈՑԵՍԻ

Ֆիլիպիններում կառուցվում է գործարան, որը, չնայած տարեկան արտադրելու է 14 հազար տոննա պղինձ, 5 հազար տոննա ցինկ և 100 հազար տոննա պարարտանյութ, այնուամենայնիվ չի կարելի անվանել պղնձաձուլական, քանի որ նախագծով այդտեղ ձուլման պրոցեսը բացառվում է. պղինձը ցինկի հետ միասին անջատվում է անմիջապես հանքային կոնցենտրատից, հիմնային միջավայրում, ամիակի առկայությամբ։ Այնուհետև տեխնոլոգիական պրոցեսի վերջում ստացվում է պղնձի փոշի, որից գլանման և այլ հարմարանքների միջոցով ստացվում է պղնձի ձուլվածք։

Գինը՝ 25 կ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
# «ՊԱՏՄԱ-ԲԱՆԱՍԻՐԱԿԱՆ ՀԱՆԴԵՍ»-Ի
## 1962 Թ. ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ՀԱՆԴԵՍԻ էջերում լուսաբանվում են հայ ժողովրդի պատմության, լեզվի, գրականության, փիլիսոփայության, արվեստի և կուլտուրայի այլ բնագավառների հարցերը, հնագիտության ու կովկասագիտության, ինչպես նաև ընդհանուր պատմագրության և ֆիլոլոգիայի տեսական կարևոր խնդիրները, հայ ժողովրդի քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կապերը մյուս ժողովուրդների հետ, Սովետական Հայաստանի գիտական և կուլտուրական նվաճումները: Արտասահմանյան ընթերցողին ՀԱՆԴԵՍԸ լայնորեն ծանոթացնում է Սովետական Հայաստանի գիտա-հետազոտական հիմնարկների աշխատանքներին, գիտության, գրականության, արվեստի ու կուլտուրայի նվաճումներին, հասարակական գիտությունների և արվեստի սովետահայ ներկայացուցիչների գործերին: Միաժամանակ սովետական ընթերցողներին տեղեկություններ են տրվում արտասահմանյան հայագետների՝ պատմաբանների, լեզվաբանների, գրականագետների, արվեստագետների աշխատությունների մասին:

Բացի գիտա-հետազոտական հոդվածների և հաղորդումների բաժնից ՀԱՆԴԵՍՆ ունի քննարկման ու բանավեճի, բնագրերի հրապարակման, գրախոսությունների, գիտական ինֆորմացիայի, սփյուռքահայ կյանքի, գիտական լուրերի բաժիններ: ՀԱՆԴԵՍՈՒՄ տպագրվում են նյութեր ինչպես հայերեն, այնպես էլ ռուսերեն:

ՀԱՆԴԵՍԻՆ աշխատակցում են Սովետական Միության և արտասահմանի նշանավոր հայագետները:

*ՀԱՆԴԵՍԸ լույս է տեսնում 3 ամիսը մեկ անգամ, 20 հեղինակային մամուլ ծավալով: Նրա տարեկան բաժանորդագինն է 3 ռ. 20 կ., առանձին համարի գինը՝ 80 կոպ.:*

*Բաժանորդագրությունը ընդունվում է կապի գրասենյակներում, բաժանմունքներում և Սոյուզպեչատի բաժիններում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկներում, գործարաններում, ուսումնական հաստատություններում և կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով: Արտասահմանյան ընթերցողները բաժանորդագրվելու համար պետք է դիմեն հետևյալ հասցեով.* Москва, Г—200, Всесоюзное объединение «Международная книга».